### ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնը. տեսական բնույթի հոդվածները 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն ու հեռախոսի համարը։

Չտպագրվող հոդվածի մեկ օրինակը վերադարձվում է հեղինակին։

Սույն կանոնը խախտողների հոդվածները կմնան անհետևանք։


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

9 | ՍԵՊՏԵՄԲԵՐ 1969

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

# Содержание

# ՀԱՎԵՐԺՈՂ ԹՈՒՄԱՆՅԱՆԸ

Սնծում ու հրճվում է աշխարհը հայոց, քանզի այսօր իր ոգու խորքից սերած մեծագույն որդու՝ Հովհաննես Թումանյանի ծննդյան դարն է բոլորել: Մոտ հիսուն տարի է, ինչ նրա ոսկե երազների օրրանը՝ երբեմնի «ողբի» ու «որբի» Հայաստանը, կեցել է անսասան, որպես հզոր ու նորոգ, սոցիալիստական հայրենիք: Հայ ժողովրդի սովետական հայրենիքն այսօր ազգովին է մեծարում իր արարչագործ հանճարի՝ ժողովրդի կողմից այնքան սիրված գրողի լույս աշխարհ գալու նվիրական օրը: Համաժողովրդական, իրոք համազգային այս հոբելյանը կոչված է մի անգամ ևս նշանավորելու «ամենայն հայոց բանաստեղծի» անգնահատելի դերն ու նշանակությունը ո՛չ միայն մեր, այլև համամարդկային մշակույթի անդաստանում:

Հիրավի, Թումանյանը հայ ժողովրդի անսպառ կորովի, նրա շուրջ երեսունդարյա ստեղծագործական մաքառումների, արդար ընդվզումների և աշխարհաշեն տենչերի գեղարվեստական անզուգական մարմնավորողն է: Նրա ծննդյան հարյուրամյա այս տոնը նշվում է պատմական այնպիսի պայմաններում, երբ վերածնված հայությունն իր հինավուրց կուլտուրայի կերոնը բարձր պահած, հպարտությամբ և լի սրտով ասում է՝ Թումանյանի մարդասիրական երազներն արդեն իրականացել են, անցյալի «դարկված» ու «զրկված» Հայաստանը վաղո՜ւց դարձել է «լույսի» ու «հույսի» հայրենիք: Ահա թե ինչու այս հոբելյանը միաժամանակ «լենինյան արևով ճառագած» հայ ազգի հոգևոր սխրանքների փառքի տոնն է:

Ինչո՞վ է մեծ Թումանյանը:

Նրա անունով է նշանավորված հայ գրականության այն նոր փուլը, երբ պոեզիայում մեկընդմիշտ հաղթանակեց քննադատական ռեալիզմը: Հանդիսանալով մեր ամենահումանիստ գրողներից մեկը, նա մինչև կյանքի վերջն իր բազմաժանր և հմայող արվեստով մնաց իրոք ազգային և կատարյալ ժողովրդական գրող, մի գրող, որի ստեղծագործության ողջ էությունը մարդու մարդկայնացման դժվարին ընթացքն է: Ուստի, երիցս իրավացի էր մեծ գրողը, երբ ասում էր, թե գրականությունն իր լույսն ու ջերմությունը տալիս է կյանքին, ձգտում է մարդու վսեմ ու անաղարտ կերպարը հաստատել կյանքում:

Թումանյանն անցյալի մեր այն արվեստագետն է, որը ո՛չ միայն բազում

մարդկանց սրտերն է հուզել արդարատենչության վսեմ իդեալներով. այլև առաջավոր մտքեր է սերմանել իր ժողովրդի հոգում, մտքեր, որոնք մեծապես նպաստել են հայ ազգի առաջընթացին: Հայտնի է, որ իր փայփայած ժողովրդական-համամարդկային կենսահաստատ գաղափարներով նա հանդիսացել է բովանդակ հայության զգայուն սիրտը, որը սեփական ձիրքն ու ջանքերն անմնացորդ ի սպաս է դրել մեր գրականության ծաղկման, նրա ազգային-ազատագրական տանջալի մաքառումների արդարացի գործին:

Ո՛չ միայն իր գեղարվեստական ստեղծագործություններում, այլև գրական-քննադատական-հրապարակախոսական երկերում նա հետամտում էր մի ազնիվ նպատակ, որ իր ժողովրդի մարդկային գոյատևման տարրական իրավունքները չոտնահարվեն, որ նա ազատ և անկախ լինի:

Երբ Արևմտահայաստանում հայ ժողովրդի գլխին սև ամպեր էին կուտակվել, մեծատաղանդ պոետը, ցնցված հայրենակիցների կոտորածից, իր քնարով սատար կանգնեց բռնադատվող հայության մարդկային իրավունքին: Պարզվեց, որ մեր ժողովրդի ողբերգությունը փաստորեն կատարվում էր իմպերիալիստական գայլերի հովանավորությամբ: Վերահաս համազգային աղետը նրա հոգին լցնում էր սրտակեղեք զգացումներով, և նա գրում է.

Եվ մենք խորտակված մեր կյանքի ծեգից,
Անհույս ու դալուկ, ճակատներս ցած,
Ընկնում է քնար մեր մատաղ ձեռքից,
Ընկնում են սրտից և՛ երգ, և՛ աստված:

Գնում ենք փախած աշխարհից աշխարհ,
Ու չենք իմանում՝ էլ ո՞ւր գնանք մենք...
Լալիս ենք մեր ցավն ամենքի առջև,
Ու չենք իմանում՝ էլ ո՞ւմ գանգատվենք:

Եվ այդ ողբերգական ու դառնաղի օրերին «հոշոտված ժողովրդի» կարեկից գրողը ճշտորեն հասկացավ բուրժուական անողոք «արդարադատությունը», այն տմարդությունը, որ աշխարհի հզորներն իրենց «մեռելի ոսկորն անգամ չեն փոխի ամբողջ հայության հետ»: Ահա թե ինչու իր մի շարք ստեղծագործություններում Թումանյանը բացառիկ ջերմությամբ է արտահայտել հայ ժողովրդի ցասման, ընդվզումի «համադեմոկրատական բովանդակությունը», որը մեծ գրողի ու քաղաքացու պատմական երախտիքն է:

Այսուհանդերձ, անզուգական գեղագետը նույնիսկ իր վշտալի երգերում համակված է կենսախինդ լավատեսությամբ, որը և նրա ստեղծագործության ողն ու ծուծն է: Այդ լավատեսական ոգին, որով տոգորված է Թումանյանի բովանդակ ստեղծագործությունը, դժվարին ժամանակներում մշտապես զորավիգ է եղել իր ժողովրդին:

Մի առիթով նա գրել է, թե իր երգերը կենդանի են, որովհետև համակված են հայրենիքի վշտով: Այո՛, Թումանյանի մեծ սիրտը միշտ տոգորված է եղել հարազատ ժողովրդի թե՛ ազգային և թե սոցիալական խոր ցավով: Գործնական կյանքում ևս նա մեծ ճիգեր է թափել բուժելու կամ մեղմելու այդ: Իր կարճատև, բայց այնքան արգասալի գործունեության ընթացքում մեծ արվեստագետը իր ժողովրդին թողեց զարկված հայության արդար իրավունքը պաշտպանող բազում երկեր, որոնք մնում են որպես համամարդկային ոգու սխրանքների անթառամ նմուշներ: «Հայոց լեռներում» դարակազմիկ բանաստեղծությամբ միշտ «խնդացող տխուր, սրտաբեկ ուրախ» Թումանյանը եկավ սփոփելու լքված հայրենակիցներին, ոգեշնչելու նրանց՝ թշնամուն դիմադրելու խրախույսով:



Բայց և այնպես այդ ծանր պահերին նա կոչ արեց իր ժողովրդին.

Ու մեր աչքերը նայում են կարոտ՝
Հեռու աստղերին,
Երկնքի ծերին,
Թե երբ կբացվի պայծառ առավոտ՝
Հայոց լեռներում,
Կանաչ լեռներում:

Ժողովրդական պայծառ գալիքի այս խոր հավատով է ներհյուսված նրա ստեղծագործությունը, որն, անշուշտ, մնում է հայ գրականության փառքի հավերժող զարդը:

Լինելով քննադատական ռեալիզմի խոշորագույն ներկայացուցիչը, Թումանյանը երբեք չի իդեալականացրել մեր պատմության անցյալն ու ներկան, բնավ չի անտեսել հարազատ ժողովրդի ծոցում խլրտացող սոցիալական բախումներն ու կեղեքումը: Ընդհակառակը, բազմիցս և տարբեր առիթներով նա մերկացրել ու դատապարտել է բուրժուական և նահապետական բարքերի այն արատները, որոնք վայրենացնում էին մարդուն, կասեցնում նրա հույզերի ու ձգտումների բյուրեղացման ընթացքը և մարդկային զանգվածներին դատապարտում քաղցի, անիրավության ու զրկանքների: Այդ բարքերի զոհերն են Մարոն ու Գիքորը, Սարոն ու Անուշը, Սաքոն և Նեսոն:

Այո՛, այն վեհացնող մարդասիրությունը, որը միշտ ձուլված է եղել նրա բոցավառ հայրենասիրության հետ՝ շա՜տ է անաղարտ, շա՜տ է սրտամոտ հայ գեղջուկի հորովելին ու կալի երգերին: Ուստի, խիստ օրինաչափ է, երբ իր դավանած համամարդկային հումանիստական իդեալները նա մատուցել է այնպիսի նուրբ և պայծառ ոճով, որ իրենց բուռն հուզականության շնորհիվ վաղուց դարձել են հայ ժողովրդի խաղաղատենչ ու շինարար հոգու հավերժական գանձեր:

Իրականում իմաստուն պոետի ողջ կյանքը հանդիսացել է հասարակական հսկա մի գործչի բոլորանվեր և տառապալի սխրանք, որը երազել է տեսնել իր ժողովրդին ազատ և ապահով վիճակում, արտաքին ու ներքին կեղեքումից ձերբազատված: Բնորոշ է, որ նա մշտապես փայփայել է իր մշակած հեքիաթների ու լեգենդների հերոսների արդար վաստակի թագավորության իդեալը, մի թագավորություն, որի գալստյանը նա, անշուշտ, հավատում էր: Այս առնչությամբ նշենք, որ նա թերևս հստակ չէր պատկերացնում այն իրական ուղիները, որոնք հնարավորություն էին տալու հերոս Արեգին Հազարան բլբուլը բերելու այս աշխարհը և հաստատելու աշխատանքի, ազատության ու երջանկության դրախտը: Բայց նա իր մեծ կենսափորձով հասել էր համապարփակ, պատմական անհերքելի մի եզրակացության.

...Ու միշտ, քանի որ կա
Շահ ու գերի, ստրուկ ու տեր,
Չի լինելու երկրի վրա
Ո՛չ շիտակ խոսք, ո՛չ կյանք, ո՛չ սեր:

Արտահայտելով մարդկության ընթացքի ճշմարտությունը, պոետը միշտ ձգտել է իր ստեղծագործության կախարդական ուժով մարդկանց մղել դեպի

հոգու կատարները, որոնք հայրենի լեռներից էլ բարձր են և Լոռվա ձորերի պես դժվարհասանելի: Նա երազում էր հայ ժողովրդին տեսնել ժամանակի առաջադեմ և կուլտուրական ազգերի երթում: Զերծ լինելով ազգային սահմանափակության և բացառիկության սին պատրանքներից, Թումանյանը տենչում էր իր հայրենակիցներին տեսնել մարդկանց եղբայրացած մի հանրության մեջ, ուր իշխում են սերն ու բարեկամությունը: Նա խորապես հավատում էր, որ «պիտի գա հանուր կյանքի արշալույսը վառ հագած», երբ կիրականանա պոետի նվիրական երազը.

Դրախտ պիտեր քաղաքն ու գեղ.
Երգը հոսեր հառաչքի տեղ...

Թումանյանի կամեցողությամբ սերն ու բարին պիտի իշխեն մարդկային կյանքում և մարդիկ պետք է մրցեն միմյանց հետ լոկ ուժգին սիրելու համար: Ժողովուրդների եղբայրության և ինտերնացիոնալիստական կապերի սերտացման մեջ տեսնելով ամբողջ մարդկության վերածնության առհավատչյան, Թումանյանն իր ժողովրդի անմիջական գոյության հուսալի երաշխիքը ռուս ժողովրդի անսասան բարեկամությունն էր համարում: Պատմության մեջ խաղացած ռուս ժողովրդի պրոգրեսիվ դերը, նրա կարծիքով, համաշխարհային նշանակություն ունի մարդկության զարգացման համար: Այդպես մտորելով, մեր գրականության այդ հսկան ընթանում էր մեծ Աբովյանի ու Նալբանդյանի հարթած ուղիով: Ի դեպ, նրա համար հայ ժողովրդի «անկախությունը» մի բացարձակ նպատակակետ չէր, հանուն որի նա արդարացներ քաղաքական ամեն կարգի արկածախնդրություն, այլ մի գրավական, որը կոչված էր նպաստելու հարազատ ժողովրդի կենսաբարգավաճմանը: Իսկ եթե անկախությունը թոկ է դառնալու հայությունը խեղդելու համար,— ասում էր պատմական դառը փորձով առավել իմաստնացած իմաստուն գրողը,— դա չենք ուզում:

Դիմադարձ լինելով արկածախնդիր ու կարճատես «ազգային» պարագլուխներին, նա այն հաստատ համոզմանն էր մնում, որ հայ ազգի ապագան իր բոլոր կողմերով կապված է առաջադեմ ու ազատաբաղձ Ռուսաստանի հետ: Ռուսաստանը, ասում էր նա, ինչքան ազատ, էնքան լավ թե՛ մեզ համար, թե՛ աշխարհքի: Թումանյանի այս խորաթափանցությունը ելնում էր հայ և մանավանդ հեղափոխության մրրիկներում վերածնվող ռուս ժողովրդի պրոգրեսիվ նկրտումների ճիշտ ըմբռնումից, մի ճշմարտություն, որին այնպես էլ չհասկացան հրապարակ ելած հայ «ազգային ջոջերը»:

Հակառակ դաշնակ պարագլուխների, որոնք մեր ժողովրդի մղձավանջային տարիներին դաշինք կնքեցին թուրք նվաճողների հետ՝ բոլշևիկյան հեղաշրջումից խույս տալու համար, մեծ գրողն այլ կերպ վարվեց: Հենց այդ տարիներին նա հստակորեն ազդարարեց, թե շատ լավ է, որ հայ և ռուս ժողովուրդների շահերը ներդաշնակ են:

Նա քանիցս ընդգծել է, որ նեղ ազգայնականությունը մեծ վնասներ է պատճառում ժողովրդին: Եվ պատահական չեն նրա թափած վիթխարի ջանքերը Անդրկովկասի ժողովուրդներին եղբայրացնելու նպատակով: «Եվ այսօր ես այնքան գոհ չեմ,— ասել է Թումանյանը,— որ գրականության մեջ մի որևէ բան եմ արել, որքան գոհ եմ, որ ակներև կարողացա իրար դեմ կանգնած ժողովուրդների սրերը պատյան դնել տալ և շատ ու շատ անմեղներին ազատել այս գազանական կոտորածից: Հիրավի, այսքան տգեղ, այս-



քան լիրբ, այսքան անիրավ, հրեշական կռիվ, ինչ-որ թուրք-հայկականն է— դժվար թե եղած լինի»: Լինելով հակառակորդ ազգային անհավասարության և օտարատյացության, նա իր ամբողջ կյանքի ընթացքում հաշտ ու խաղաղ մարդկության և եղբայրացած ազգությունների համոզված մունետիկն էր:

Բնորոշ է, որ Թումանյանի ըմբռնումով յուրաքանչյուր համամարդկային գրող իր ստեղծագործական դեմքով շեշտված ազգային է, որովհետև տարբեր ազգերի մեծ գրողների կերտած կերպարների դիմորոշ գծերն ըստ էության համընկնում են, երբ այդ ազգերի զարգացման մակարդակները միևնույնն են: Եվ պատահական չէ, որ նրա ստեղծագործության մեջ գրեթե անհնար է զատզատել ազգայինն ու համամարդկայինը:

Ուստի, օրինաչափ էր ու տրամաբանական, երբ նա ազգային էգոիզմի հակառակորդը լինելով, իր ազգի երջանկության նախապայմաններից մեկը դրացի ազգերի երջանկությունն էր համարում: Հիշենք Մարքսի տեսակետը, որ այլ ազգերին ճնշող ազգը դժբախտ է: Այդպես էր դատում նաև հրապարակախոս ու քննադատ Թումանյանը: Ի դեպ, այս ճշմարտությունը նա բազմաթիվ օրինակներով ապացուցել է փոխադրելով օտար ժողովուրդների շատ զրույցներ, որոնք նրա ստեղծագործության օրգանական մասն են կազմում:

Մեծ մտածող և անզուգական բանաստեղծ Թումանյանն անչափ կենսասեր էր ու գործունյա: Մշտապես մտորելով մարդկության գոյության և կնճռոտ հարցերի շուրջ, նա ասում էր. «Կյանքն՝ իր ամբողջության մեջ՝ մեծ է, շատ է մեծ: Կյանքը տիեզերական կյանք է, և մարդու կյանքի ամբողջ վեհությունն ու քաղցրությունն էլ հենց էն է, որ իր շրջապատի միջոցով ապրի էն մեծ կյանքով»: Իր ապրածի, ստեղծագործական ընթացքի ու կենսափիլիսոփայության այս բնորոշ ըմբռնումը մեզ տալիս է նրա մի ամբողջ աշխարհ ներկայացնող սիրալի կյանքը հասկանալու բանալին: Վարար ջրերի պես հոսող նրա իմաստություններից են կերտված մեր գրականության ազգային փառքի շատ ու շատ երկեր, որոնք կան ու կմնան աշխարհի վրա, քանի դեռ ապրում է հայ ժողովուրդը:

Խորապես թափանցելով մեր ժողովրդի հոգևոր կյանքի ծալքերը, Թումանյանն ստեղծարար մեծագույն տենչանքով կարողանում էր վարպետորեն բացահայտել այն վիթխարի գեղարվեստական պոտենցիալ հարստությունը, որը դարերով կուտակված էր ժողովրդական զանգվածների կենսաոլորտներում: Ահա թե որտեղ պետք է որոնել նրա ստեղծագործության պարզության և մատչելիության կախարդող ուժի աղբյուրը: Ի դեպ, նա գրողներից պահանջում էր երբեք չաղավաղել գրական նյութի էթնիկական ինքնատիպությունը:

Իր ապրած ժամանակի և հարազատ ժողովրդի լավի ու վատի, խինդ ու ցավի, անցածի ու գալիքի՝ միայն իրեն հատուկ լիաբուռն զգացողությամբ, միայն թումանյանական պայծառությամբ հագեցած նրա կենսաբույր երկերը եղել ու միշտ կմնան հայոց մշակույթի լեռնապարի վսեմախոյս կատարները: Չկա նրա գրչին պատկանող մի երկ, որում կենդանացած չլինի հայրենի չքնաղ բնությունը, որում չարտացոլի հայ շինականի և գեղջուկի ազնիվ սիրտը: Թարգման կանգնելով փոքրիկ Մարոյի, դժբախտ Գիքորի, սիրակարոտ Անուշի ու Սարոյի և առհասարակ տառապյալ հայի սրտակեղեք վշտին, Թումանյանն իր ստեղծագործությամբ մնաց այն մեծ գրողը, որն իր բազմաժանր իմաստուն երկերով սովորեցնում էր հային լինել մարդամոտ և անսահման բարի: Շա՜տ է ընդարձակ նրա ստեղծագործական ընդգրկումների շրջանակը: Շա՜տ է վեհացնող նրա հուզականությունը, որով մարմնացած նրա

գործերն իրենց արժանի տեղն ունեն համաշխարհային գանձերի կողքին:

Շարունակելով ու զարգացնելով Խաչատուր Աբովյանի սոցիալ-գրական կենսահաստատ պահանջներին արձագանքող մեծ արվեստի ավանդույթները, Թումանյանն իր տաղանդի անօրինակ ուժով կարողացավ գրական բոլոր ժանրերը հետևողականորեն ծառայեցնել ժողովրդի ազատագրական ոգորումներին, նրա հոգևոր աշխարհի կատարելագործման բարդ խնդիրների լուծմանը: Սա է նրա խաղացած պատմական դերի մեծագույն նշանակությունը: Անվիճելի է, որ նա փայլուն կերպով կենսագործեց կյանքի կողմից իր առջև հարուցված խնդիրը. նրա իսկ խոսքերով ասած՝ ամեն մեկի բույրն ու հրապույրը պահպանելով հանդերձ՝ ամենքն ի մի բերել և բազմազանությունից առեղծել ներդաշնակ ամբողջություն— սրա մեջ է բանաստեղծության ու առհասարակ գեղարվեստի կախարդական ուժը: Այս ոլորտում Թումանյանի հաջողությունները անգնահատելի են, անփոխարինելի:

Հարազատ ժողովրդի կյանքից առնված բազում կերպարների կենդանությամբ և հուզաթաթավությամբ Թումանյանի գործերը մեր օրերում էլ շարունակում են իրենց խոր ազդեցությունը նոր սերնդի ստեղծագործության վրա: Ազգային ցայտուն նկարագիրների իր հարուստ պատկերասրահով, նա մեր քերթության և արվեստի Արարատն է մնում, որի համար նրան հավետ երախտապարտ է հարազատ ժողովուրդը:

Թումանյանական հուժկու արվեստի անմահության գաղտնիքներից մեկը՝ մեզ ժառանգած նրա արվեստի գեղագիտական ավանդույթներն են, որոնք լինելով այնքան կենսունակ, մնում են որպես սոցիալիստական ռեալիզմի ջինջ ակունքներ:

Հասարակական մեծ ալեկոծությունների ճողփյունին ունկնդիր, օժտված կյանքի ժխորում առաջավորը տեսնելու կարողությամբ, Թումանյանը Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության օրերին խորապես ըմբռնեց, որ այն հիմնովին ցնցեց համայն աշխարհը և որի հաղթությամբ սկսվում է մարդկության զարգացման նոր դարաշրջան՝ իր ուրույն հոգեբանությամբ: Նա պարզորոշ տեսավ, որ համաշխարհային պատմության մեջ նորն իրեն ճանապարհ է հարթում բոլշևիզմի միջոցով, իսկ այն, ինչ կործանվեց բոլշևիզմի հարվածներից, դա ամենքին զզվանք պատճառած կապիտալիզմի վայրագություններն են: Ահա թե ինչու այսպես խորհող Թումանյանը սրտաբաց ընդունեց սոցիալիստական հեղափոխության արևածագը. մի արևածագ, որը թելադրում էր տակավին չազատագրված մարդկանց խորհել ու ճշմարտությանը հասնելու ուղիներ գտնել:

Նա ինքը, մեր ժողովրդի հանճարեղ զավակ Թումանյանը, ջերմորեն ողջունեց սովետական կարգերի հաղթանակը հայրենի հողի և Ռուսաստանի անծայրածիր երկրի վրա: Բնորոշն այն է, որ համակված կառուցման վառ պաթոսով, մեր անզուգական գրողը, ինչպես վայել է մեծ քաղաքացուն, անմիջապես լծվեց ավերված հայրենիքի վերականգնման շնորհակալ գործին:

Հոբելյանական այս օրերին, պատշաճը հատուցելով Թումանյանի ստեղծագործական սխրանքներին ու քաղաքացիական մեծագործություններին, վերածնված հայ ժողովուրդն ի տես մարդկության մի անգամ ևս ցուցադրում է նրա արվեստի այն անթառամ ծաղկեփնջերը, որոնք ցողված են մեծ Լոռեցու հորդաբուխ հույզերով, նրա արցունքների ջերմ շիթերով:



Տակավին կես դար չի լրացել Հայաստանում սոցիալիստական հանրակարգի հաստատման օրից: Բայց որքա՜ն շատ բան է արված առհասարակ անցյալի և հատկապես Թումանյանի մեզ թողած գրական ժառանգության յուրացման գործում: Եվ այդ գործի կազմակերպիչն ու ոգեշնչողը կոմունիստական կուսակցությունն է, որի անմիջական ղեկավարությամբ վիթխարի գործ է արված անցյալի մեծագույն արժեքների ստեղծագործական յուրացման բնագավառում:

Մեր կյանքի բոլոր ասպարեզներում Թումանյանի երկերը շնչում են ու ապրում մի նոր կյանքով: Նրա ստեղծագործությունները սովետական բովանդակ երկրում հրատարակվել են 193 անգամ, 18 լեզուներով և ավելի քան 4 միլիոն տպաքանակով: Ռուսերեն, ուկրաիներեն, վրացերեն, ադրբեջաներեն, բելոռուսերեն, ուզբեկերեն և բազմաթիվ այլ ժողովուրդների լեզուներով լույս են տեսել նրա շատ երկեր ու վաղուց դարձել սովետական ժողովուրդներին որքան մատչելի, նույնքան և հարազատ:

Մեր երաժշտական ու նկարչական հարուստ մշակույթը հագեցած է թումանյանական վեհ արվեստի շնչով: Չկա արվեստի մի բնագավառ, որի շնորհալի ներկայացուցիչները ռոմանների, օպերաների, պիեսների, սիմֆոնիաների, նկարչական մեծ կտավների միջոցով չարտահայտեն մեծ գրողի հումանիստական ոգեշունչ իդեալները:

Հովհաննես Թումանյանի մասին մեկ տասնամյակ առաջ Ե. Չարենցը նրան գնահատելով որպես «Անհաս Արարատը մեր նոր քերթության», խորապես բացահայտեց հանճարեղ գրողի երկերի հավերժականության գաղտնիքը.

Նա մեծ էր հողո՜վ, արյունո՜վ:— Արմատնե՜ր ուներ նա հողում:
Իր երգերը— գեղջուկ նաիրցու քրտինքո՜վ էր նա ողողում:
Հանճարեղ երգերում նրա— իր երկրի արև՜ն էր շողում:
Նա մեծ էր հողո՜վ, արյունո՜վ:— Արմատնե՜ր ուներ նա հողում:



Էդ. Մ. ՋՐԲԱՇՅԱՆ

# ՀԱՅ ՊՈԵԶԻԱՅԻ ՀԱՆՃԱՐԸ

*(ՀՈՎՀԱՆՆԵՍ ԹՈՒՄԱՆՅԱՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)*

Հայ գրականության և ողջ մշակույթի կարգացման մեջ բացառիկ կարևոր և արդյունավետ մի շրջան հանդիսացան XIX դարի վերջն ու XX դարի սկիզբը: Մեր ժողովրդի պատմության այդ ամենամռայլ, ողբերգական ժամանակամիջոցը միաժամանակ դարձավ գրականության, արվեստի և հոգևոր կյանքի մյուս ձևերի դասական նվաճումների շրջան: Այդ երևույթը, այդ կարծեցյալ հակասությունը ոչ թե պատահական էր, այլ օրինաչափ: Այն տարիներին, երբ թուրքական բռնապետության հայահալած քաղաքականությունը հասել էր իր գագաթնակետին, երբ պատմության օրակարգում դրված էր հայության բուն ֆիզիկական գոյության խնդիրը, ժողովուրդը հանձինս իր լավագույն զավակների լարում էր իր հոգևոր ուժերը՝ ասես աշխարհի առջև ապացուցելու իր ստեղծագործական մեծ հնարավորությունները, մաքառելու, ապրելու և հաղթելու կամքը:

Ակնարկելով այդ նշանակալից երևույթը, Հովհ. Թումանյանը 1914 թ. գարնանը, համաշխարհային պատերազմի բռնկումից մի քանի ամիս առաջ, գրում էր. «Այո՛, գուցե վերջը չի հայկական հարցի, բայց վերջի սկիզբն է: Դրա համար էլ խորհրդավոր է և էն համատարած խլրտումը, որ նկատվում է մեր կուլտուրական կյանքում— դպրոցի, գրականության, գիտության— ուսումնասիրության ու բանասիրության ասպարեզներում: Սա էլ սկիզբն է մի նոր վերածնության, որի համար մենք բավականաչափ ուժեր ու տրամադրություն ունենք արդեն»: Երաժշտության մեջ Կոմիտաս և Սպենդիարյան, նկարչության մեջ՝ Բաշինջաղյան և Սուրենյան, թատրոնում՝ Աբելյան և Սիրանույշ, բանասիրության մեջ՝ Աբեղյան և Աճառյան,— այս և շատ ուրիշ պայծառ անուններով է բնորոշվում նշված ժամանակաշրջանի հայ ժողովրդի հոգևոր մշակույթը:

Սակայն, ինչպես ամբողջ XIX դարի ընթացքում, այնպես էլ երկու դարերի սահմանագլխին ժողովրդի հոգևոր որոնումների, նրա սոցիալական և ազգային իդեալների արտահայտման գլխավոր ոլորտը գեղարվեստական գրականությունն էր: Այստեղ հատկապես ցայտուն արտահայտվեց գեղարվեստական զարգացման այն նոր, շատ ավելի բարձր մակարդակը, որ նվաճվեց այս շրջանում: Շարունակում էին ստեղծագործել նախորդ փուլերում իրենց տաղանդի էական գծերը դրսևորած մի շարք գրողներ (Սունդուկյան, Պռոշյան, Աղայան), բայց գեղարվեստական զարգացման հիմնական ծանրությունն ընկած էր գրական նոր սերնդի ուսերին՝ Շիրվանզադե, Մուրացան, Նար-Դոս, Զոհրապ, Օտյան, Շանթ և ուրիշներ: Այս գրողների առկայությունն էր, որ հիմք տվեց Թումանյանին 1910 թ. ասելու, թե մեր գրականությունն էլ ունի այնպիսի դեմքեր, «որոնք իրենց տաղանդով մրցում են ու հավասար են եվրոպական ժողովուրդների սիրված, հանրահռչակ հեղինակներին, տարբերությունը միայն սրանց ու նրանց բախտի մեջն է»:

XX դարի սկզբին հայ գրականության մեջ, անտարակույս, առավել մեծ զարգացման հասավ պոեզիան: Հայ բազմադարյան բանաստեղծության պատմության մեջ, թերևս, չի եղել մի ուրիշ շրջան, երբ միաժամանակ գործած լինեին այդքան շատ առաջնակարգ բանաստեղծներ, որոնք կարող էին պատիվ բերել ուժեղ գրականությանը: Չէ՞ որ դարասկզբին էին ստեղծագործում Թումանյանն ու Իսահակյանը, Սիամանթոն և Վարուժանը, Տերյանն ու Մեծարենցը: Այդ շրջանում էր, որ իր մեծ տաղանդի առաջին փայլատակումով երևաց Եղիշե Չարենցը: Կարելի է առանց վարանելու ասել, որ հենց շնորհիվ այդ բանաստեղծների (ինչքան էլ նրանք տարբեր են իրենց աշխարհըմբռնումով, ոճով ու ձևերով), միջնադարյան մեր աշխարհիկ քնարերգությունից հետո, հայ պոեզիան նորից բարձրացավ համաշխարհային արվեստի լավագույն նվաճումների աստիճանին:

Ահա, հայ մշակույթի և մասնավորապես պոեզիայի այդ բուռն զարգացման ժամանակաշրջանում ստեղծագործեց Հովհաննես Թումանյանը՝ հայ ազգային մեծագույն բանաստեղծը, դարերի պատմություն ունեցող մեր բանարվեստի հավերժական գագաթներից մեկը: Թումանյանն այդ տարիների հայ գրականության և ամբողջ հասարակական-գրական կյանքի ամենահեղինակավոր, կենտրոնական դեմքն էր, մեր ժողովրդի հոգևոր մեծ ուժերի լավագույն կրողն ու արտահայտիչը: «Բայց— Թումանյանն է անհաս Արարատը մեր նոր քերթության»,— Եղիշե Չարենցի այս խոսքերը պատկերավոր ու դիպուկ բացահայտում են հանճարեղ բանաստեղծի եզակիորեն մեծ, անկրկնելի դերը հայ պոեզիայի պատմության մեջ:

2

Մեծ արվեստագետն իր ստեղծագործությամբ դարաշրջանի արձագանքն է, նրա սոցիալական ու ազգային կյանքի հայելին: Բայց միաժամանակ նա իր տաղանդի ուժով այնպիսի մեծ ընդհանրացումներ է կատարում, մարմնավորում է մարդկային հոգու և սրտի, ազգային բնավորության այնպիսի գծեր, որոնք ընդունակ են հուզելու նորանոր սերունդների: Թումանյանի ստեղծագործությունն այդ իրողության ցայտուն ապացույցն է:

Թումանյանը գրական ասպարեզ իջավ անդրկովկասյան կյանքի բուռն, շրջադարձային մի փուլում: Քայքայվում էին դարերից եկող նահապետական տնտեսաձևն ու բարքերը հայ գյուղաշխարհում, իրենց տեղը զիջելով հաղթանակող բուրժուական հարաբերություններին: Սրվում էին սոցիալական հակասությունները քաղաքում և գյուղում, ուր ավատական կյանքի ողբերգական գծերին՝ տգիտությանը, հետամնացությանը, ավելանում էին «քաղաքակրթության» բերած նոր արատները՝ փողի իշխանության հետ մուտք գործող շահա-

մոլությունը, դաժանությունը, վաշխառությունը, բոլոր սրբական ըմբռնումների առուծախը, մասսայական հողազրկությունը, սովն ու գյուղերի լքումը: Թումանյանը տնտեսական ու բարոյական այդ մեծ տեղաշարժերի ականատեսն էր և խորամիտ կնողը: Դրա բազմաթիվ վկայություններից մեկը, բացի գեղարվեստական ստեղծագործություններից, 1894 թ. տպագրված *Բորչալվում* ճանապարհորդական ակնարկն է, որի մեջ Թումանյանը հայրենի գավառի իրականության վգաստ քննությամբ ցույց է տալիս, թե տնտեսական, կենցաղային և հոգեբանական ի՜նչ ցավագին զալարումներով «ժողովուրդը մի դրությունից անցնում է դեպի մյուսը»:

Գրական առաջին իսկ քայլերից Թումանյանի ուղին բնութագրվում է հարազատ ժողովրդի կյանքն ու հոգսերը խորապես հասկանալու, արտացոլելու ձգտումով: Նա իր հետ սկզբից ևեթ բերում էր գրականության ժողովրդայնության նոր, ավելի բարձր մի որակ: Այդ որակը բնորոշվում էր նախ և առաջ նրանով, որ հայրենիքի ու ժողովրդի նկատմամբ տածած սերը, նրանց լավ ապագայի երազանքը կուզակցվում էին ժամանակակից կյանքի, ժողովրդի մարդկանց բնավորությունների ամենախոր իմացության և կգաստ, մինչև վերջ ճշմարտացի պատկերման հետ: Թումանյանի պոեզիայում մեր գրականության մեջ առաջին անգամ իրագործվեց արվեստի բարձրագույն սկզբունքներից մեկը՝ *ժողովրդայնության և ռեալիզմի օրգանական, լիակատար միաձուլումը:* Ճիշտ է, առաջին շրջանի՝ 80—90-ական թվականների երկերում այդ որակը դեռ չէր նվաճվել: Բայց արդեն այդ տարիներին այն առկա էր իբրև հիմնական միտում, իբրև ստեղծագործական ուղղություն և նպատակ, որը լրիվ իրագործվեց ավելի ուշ՝ տաղանդի բարձրագույն հասունության շրջանում (սկսած, մոտավորապես, 1900 թվականից):

Գրականության խնդիրների այդ նոր ըմբռնման դիրքերից Թումանյանը, բնականաբար, պետք է հաղթահարեր նախորդ շրջանի հայ գրականության պատմականորեն հասկանալի որոշ թերություններ: Դրանով էր պայմանավորված, օրինակ, նրա քննադատական վերաբերմունքը, այսպես կոչված՝ «տարաշխարհիկ» հայ բանաստեղծների նկատմամբ (Ռ. Պատկանյան, Ղ. Ալիշան, Ս. Շահազիզ): Նրանց ընդհանուր բնորոշ գիծը նա տեսնում էր այն բանում, որ, ունենալով հայրենասիրական մեծ կրակ ու նվիրվածություն, նրանք, այնուամենայնիվ, ինչպես հարկն է չեն ճանաչել ժողովրդի բուն կյանքը, չեն պատկերել դա իր գույների ու ձևերի ամբողջ հարազատությամբ: Այդ երևույթը նա կապում էր հայ կյանքի և գրականության զարգացման անբարենպաստ պայմանների, մասնավորապես, այդ գրողների՝ հայրենի միջավայրից հեռու, օտար հորիզոնների տակ ապրելու և ստեղծագործելու իրողության հետ: Դա հայ գրականության անցյալն ու ներկան պատմական մեծ հեռանկարի մեջ գնահատելու օրինակ էր: Գրականության արդյունավետ զարգացման ճիշտ ուղին Թումանյանը տեսնում էր այն սկզբունքի մեջ, որ նա ձևակերպել է իր հայտնի կոչով՝ «Դեպի ժողովո՛ւրդը, դեպի բնությո՛ւնը, հայո՛ց գրողներ»:

Իրոք, բանաստեղծի ուշադրության կենտրոնում միշտ ժողովրդի և մարդու ճակատագիրն է, հողի աշխատավորն իր հոգսերով, «տանջանքներով և տենչանքներով»: Այս առումով շատ հետաքրքրական է Թումանյանի համեմատաբար քիչ ծանոթ մի բանաստեղծություն, որ նա գրել է 1890 թ., ներշընչված Գևորգ Բաշինջաղյանի *Չորագետը գիշերով* հայտնի կտավից: Բանաստեղծը դրվատում է նկարչի մեծ ձիրքը, որ կարողացել է կտավի վրա փոխադրել



կենդանի բնության մի անկյուն, արտահայտել նույնիսկ «ահագին ժայռերի մտածմունքը» և «փայլուն ծփանքը փրփրուն գետի»: Բայց բանաստեղծի մտքերի սևեռակետը այդ ձորերի բնակիչն է, աշխատող ու տառապող մարդը, որի խրճիթի աղոտ լույսը հազիվ է երևում նկարչի կտավի վրա: Ճանաչել այդ մարդուն, ապրել և արտահայտել նրա մեծ տառապանքը,— սա Թումանյանը համարում է արվեստի ամենաբարձր նպատակը.

*Բայց ահա այնտեղ, ձորի խորքերում*
*Մի մենակ վառվող լույս է երևում.*
*Այն՛, մի խուղ կա այն ձորի միջին,*
*Դու ճանաչո՞ւմ ես նրա բնակչին...*

*Օ՜, չես ճանաչում— անծանոթ ես դու,*
*Բայց թե գիշերը և նրա հոգու*
*Կարողանայիր տեսնել և զգալ—*
*Հանգստություն չէիր նայողին դու տալ:*

Այս տողերը, որոնք մի անգամ ևս հաստատում են Թումանյանի երկերում մարդու նկատմամբ ինչ-որ «անտարբերություն» տեսած անցյալի որոշ քննադատների խոր անիրավացիությունը, միաժամանակ անձնական խոստովանության բնույթ ունեն. Թումանյանը խորապես ճանաչել և զգացել էր լեռների ու ձորերի բնակչի հոգու տառապանքը, և այստեղից էլ՝ բանաստեղծի հոգու մեծ տվայտանքը, որ այնպես լայնորեն սփռված է նրա երկերում:

Հայ գյուղացու ծանր վիճակի, գյուղում տիրող անարդարության և ճընշումների մասին Թումանյանը պատմել է իր շատ երկերում, և պատմել գեղարվեստական այնպիսի ուժով, հարատևող ընդհանրացումներով, որ իր նախորդների, ասենք՝ Պռոշյանի կամ Աղայանի համապատասխան երկերի կողքին դրանք նշանավորեցին գեղարվեստական զարգացման անհամեմատ մի բարձր աստիճան: Վերցնենք հանրահռչակ «Գութանի երգը», որն իր սոցիալական բովանդակությամբ մի ամբողջ վեպի կշիռ ունի: Դեռ ստեղծագործական կյանքի վաղ արշալույսին գրած (1887), թեև հետագայում ոճական և կառուցվածքային լուրջ վերամշակման ենթարկված այս բանաստեղծության մեջ Թումանյանն արդեն միաժամանակ լուծում էր երկու էական խնդիր. նախ՝ հայ գյուղացու հոգսերի ու հույսերի աշխարհի թափանցելը և երկրորդ՝ այդ ամենի մասին նրան խորապես հարազատ ոճով պատմելը: Բանաստեղծության քնարական հերոսը՝ հայ աշխատավոր գյուղացին, իր տառապալից կյանքի մասին պատմում է այնքա՜ն պարզ, բնական երանգներով, որ մի պահ թվում է, թե բանաստեղծը պարզապես գրի է առել գյուղացու առօրյա մտածմունքը ծանր աշխատանքի ժամին: Բայց այնքան հասարակ թվացող այդ խոսքը միաժամանակ իսկական բարձր պոեզիա է, կյանքի ճշմարտության՝ գեղարվեստական մեծ ուժով ձևակերպված արտահայտություն: Բանաստեղծը ցույց է տվել գյուղական կյանքի ամենօրյա դրաման, ընդամենը մի քանի տողով բնութագրել սոցիալական բռնությունը մարմնավորող «հերոսներին»՝ իր պարտքը պահանջող վաշխառուն, գյուղացուն ծեծող քյոխվան, անիծող քահանան, տերության հարկը վերցնող չինովնիկը... Եվ այս բոլոր չար ու դաժան ուժերի դեմ մենմենակ կանգնած է խեղճ գյուղացին, իր անասելի թշվառությամբ՝ միայն իր հավատարիմ եզներին ու անտեսանելի աստծուն ապավինող այդ անօգնական մարդը...

Հիշենք գյուղական իրականությունը պատկերող թումանյանական հոյակապ պոեմները՝ *Մարոն, Լոռեցի Սաքոն* և մանավանդ *Անուշը*՝ ժողովրդի կյանքի այդ իսկական գեղարվեստական հանրագիտարանը, որի տողերում չխամրող գույներով դրոշմված են այդ կյանքի բանաստեղծական ու ողբեր-

գական կողմերը՝ պատանեկան անձնազոհ սիրո թրթռուն զգացմունքներից մինչև մասսայական տեսարանների վիթխարի տարերքը, կենցաղի մանրամասներից մինչև մարդու անմահության մասին փիլիսոփայական մեծ խոհը: Իզուր չէ, որ Թումանյանի պոեմների և առաջին հերթին *Անուշի* մասին Վալերի Բրյուսովը գրել է, թե օտար ընթերցողին դրանք «ավելի շատ բան են տալիս ժամանակակից Հայաստանը և նրա կյանքը ճանաչելու համար, քան կարող են տալ հատուկ հետազոտությունների ստվար հատորները»:

Հայ գյուղաշխարհին իր կյանքի ամենաբնորոշ կողմերով արտացոլվել է նաև Թումանյանի երկու տասնյակից ավելի պատմվածքներում: Դրանք հայ նախընթաց (ռոմանտիկական և ռեալիստական) արձակի ֆոնի վրա բերում էին ավանդական գյուղական թեմայի մեկնաբանության գեղարվեստական նոր սկզբունքներ, նոր ոճ, երբ արտակարգ սեղմությունը, ասեք «մերկ, արձանագրական» գրելաձևը ամփոփում է կենսական պատկերների բացառիկ լրիվություն, հումորի և թախծի, բնության և կենցաղի, մտքի և զգացմունքի, վիճակների և գործողության արտակարգ հարստություն: Այդ և շատ ուրիշ բարձր հատկանիշների լավագույն մարմնավորումը հանդիսացող *Գիքորը* մի իսկական կոթող է հայ գրականության մեջ, որը մշտապես կհուզի աշխատավոր մարդու ողբերգության զարմանալի խոր բացահայտումով: Նահապետական գյուղի և բուրժուական քաղաքի հակադրությունը հայ գրականության ո՛չ մի ուրիշ ստեղծագործության մեջ չի գտել այդքան ճշմարտացի ու բարձր գեղարվեստական արտահայտություն:

Սակայն Թումանյանի սոցիալական զգացողության, նրա դեմոկրատական աշխարհայացքի ամենալայն ու ցայտուն դրսևորումը, անտարակույս, *Հառաչանք* պոեմն է: Լինելով բանաստեղծի ամենավաղ մտահղացումներից մեկը (նրա ստեղծագործական պատմությունն սկսվում է դեռ 80-ական թթ. կեսերից), այդ պոեմը ժամանակի ընթացքում հասցվեց գեղարվեստական բացառիկ խտացման: Պոեմի այն հատվածը, որը, փրկվելով ցարական ժանդարմական վարչության ձեռքից, հրապարակվեց 1914 թ., ներկայացնում է բանաստեղծական խոսքի միջոցով սոցիալական իրականության ամենաբարդ երևույթներն ու խոր հակասությունները բացահայտելու հիանալի օրինակ: Մի՞թե, ասենք, ժողովրդի կյանքում կատարվող մեծ տեղաշարժերի, հնի կործանման և հաղթանակող նոր հարաբերությունների նկատմամբ աշխատավոր մարդու տագնապալից խոհերի արտահայտությունը չեն Ծերունու այս խոսքերը.

*Մեր հին ադաթից ընկել ենք, զրկվել,*
*Նորն էլ չգիտենք թե ինչ է եկել...:*

Ծերունու ամբողջ պատմությունը հարազատորեն ներկայացնում է ժողովրդի մարդու հոգեբանությունը, սոցիալական կենսափորձը, դարավոր իմաստությունն ու նրա խոսքի անխարդախ երանգները: Դրա շնորհիվ պոեմի գրեթե յուրաքանչյուր տող մի-մի աֆորիզմ է, որ մտել է ժողովրդի խոսակցական լեզվի մեջ, օրգանապես զուգակցում է պատկերավորությունն ու սոցիալական իրողությունների ճշգրիտ բնութագիրը.

*Դարձել է աշխարքն, ա՛խպեր, տռ ու փուխ,*
*Սերը դարձել սուր ու ջուրը— արին,*
*Ոչ ամոթ ունի ուժեղը, ոչ վախ,*
*Վայը եկել է տարել տըկարին:*



Բայց Թումանյանի հերոսը հասել է նաև այն գիտակցության, որ հին ձևով ապրել այլևս չի կարելի («Բայց իմ կարճ խելքով էնքանն եմ տեսնում — ապրիլ չի լինիլ էսպես ամեն օր»): Դա կյանքի արմատական հեղաբեկման անհրաժեշտության միտքն է, որ Թումանյանը տեսել է ժողովրդի ընդերքում և արտացոլել իր ստեղծագործության մեջ: Ահա թե ինչու բանաստեղծը խորին համակրանքով էր հետևում դարասկզբին ծավալված հեղափոխական իրադարձություններին, ահա թե ինչու նա ցավով էր նշում, որ հայ-թուրքական ազգամիջյան ընդհարումները խանգարեցին մասնակցելու «Ռուսաստանի ազատագրական մեծ կռվին» (խոսքը ռուսական առաջին հեղափոխության մասին է):

Այսպիսով, հայ գյուղաշխարհն իր մարդկանցով, կենսական հարաբերություններով ու պատկերացումներով, իր բնությամբ և ժողովրդական բանահյուսության դարավոր ավանդույթներով դարձավ ո՛չ միայն Թումանյանի ստեղծագործության հիմնական նյութը, այլև նրա գեղարվեստական պաթոսի աղբյուրը: Նույնիսկ այն երկերը, որոնք աշխարհագրական միջավայրի և ժամանակի կոնկրետացում չունեն (ասենք, նրա բալլադներն ու հեքիաթները), նույնպես փաստորեն արտացոլում են հայկական գյուղն իր բնավորություններով և ըմբռնումներով: Բուրժուական քաղաքն ստեղծագործական իմաստով խորթ մնաց Թումանյանին, թեև իր գիտակից ամբողջ կյանքը նա ապրեց Թիֆլիսում: Բանն այն է, որ այստեղ նա ստեղծագործական ոգևորության, պոեզիայի աղբյուր չէր գտնում. բուրժուական հարաբերությունները անհարիր էին նրա դեմոկրատական աշխարհայացքին, լիարժեք, անարատ մարդու նրա իդեալին: Ահա թե ինչու նա կա՛մ «շրջանցում էր» այդ միջավայրը, կա՛մ, սակավադեպ պատկերում անսքող երգիծանքով (*Պետոն ու Մուսան*), իբրև ամեն մի գեղեցիկ բան կործանող աշխարհ (*Գիքորը*):

Հայ նահապետական գյուղը Թումանյանը պատկերեց ռեալիստական օբյեկտիվությամբ: Հավասարապես սխալ կլիներ նրա վերաբերմունքը համարել իդեալականացում կամ, ընդհակառակը, ամբողջովին ժխտական մոտեցում,— երկու ծայրահեղ գնահատական, որոնց շուրջ այնքա՜ն վեճեր են եղել քննադատության մեջ դեռ բանաստեղծի կենդանության ժամանակից սկսած: Թումանյանը, իհարկե, քննադատում և մերժում է գյուղական կյանքի հետամնացությունը, սոցիալական հակասությունները, որոնք այնքա՜ն ողբերգություններ են ծնում այդ աշխարհում: Սակայն ժողովրդական կյանքում և բնավորությունների մեջ նա տեսնում է նաև այնպիսի գեղեցիկ գծեր՝ ազնվություն, անձնազոհություն, կոլեկտիվի զգացում, որոնք արժանի են պոետականացման, որոնք բանաստեղծի կողմից հակադրվում էին և՛ նահապետական հետամնացությանը, և՛ բուրժուական աշխարհում մանրացող, բանաստեղծական վեհությունից զրկվող մարդուն: Հասարակ ժողովրդի ընդերքում պահպանված այդ գեղեցիկ հատկանիշները, Թումանյանի խորին համոզմամբ, պետք է մտնեն ապագա հասարակության մեջ, որի երազանքն այնպե՜ս տիրաբար թևածում է նրա ողջ ստեղծագործության վրա:

Թումանյանի երազած հասարակությունը պետք է լիներ սոցիալական և ազգային հավասարության, ներդաշնակության հասարակություն, ուր չեն լինի «շահ ու գերի, ստրուկ ու տեր», ուր կիշխի ազնիվ աշխատանքը՝ «առողջ ձեռքով, խաղաղ հոգով»: Մի հասարակություն, ուր կլինի «հաշտ ու խաղաղ մարդկություն», ուր կյանքը կպարգևի «երջանկություն ամեն մարդու, խաղաղություն ողջ աշխարհին»:

Այսպես, հայկական կյանքի կոնկրետ պատկերներից Թումանյանը գնում

է դեպի համամարդկային իդեալների արծարծում, կենդանի կերպով մարմնավորելով իր այն խոսքերը, թե «բանաստեղծի ոտը հարազատ ու իրական հողի վրա պիտի լինի, նրանից հետո միայն կարող է բարձրանալ, թեկուզ գլուխը մինչև երկինք հասնի»: Թումանյանի ոտքը միշտ ամուր մնաց հարազատ իրականության վրա, և դա նրա ստեղծագործական մեծության բնական հողն էր: Այդ իմաստով պետք է հասկանալ Ալ. Մյասնիկյանի խոսքերը. «Հայ նախապետականությունը և դյուցազներգությունը Թումանյանին դարձրին խոշորագույն գրող»:

3

Դյուցազներգությունը և, առհասարակ, հայ ժողովրդական ստեղծագործության ամբողջ լայնածավալ աշխարհը դարձավ Թումանյանի գեղարվեստական նվաճումների կարևորագույն հիմքերից մեկը: Եթե ճիշտ է, որ հայ նոր գրականությունը, սկսած Խ. Աբովյանից, սերտորեն առնչված է եղել, սնվել է ժողովրդական բանահյուսության կենարար աղբյուրներից, ապա ճիշտ է նաև այն, որ ոչ մի ուրիշ հայ գրողի մոտ այդ կապն այնքան ամուր և բազմակողմանի չի եղել, ինչպես Թումանյանինը: Ֆոլկլորային ուղղակի հիմք ունեն նրա երկերից շատ-շատերը՝ բոլոր բալլադներն ու հեքիաթները, պոեմներից՝ *Թմկաբերդի առումը*, *Սասունցի Դավիթը*, *Հազարան բլբուլը*, բազմաթիվ բանաստեղծություններ: Թումանյանի գրեթե բոլոր մյուս երկերի մեջ ևս դուք կգտնեք ժողովրդական բանահյուսության պատկերների, ոճերի և առհասարակ նրա ոգու ազդեցության խոր դրոշմը: Սակայն Թումանյանի բերած նորությունն այս հարցում չպետք է որոնել ֆոլկլորին պարզապես ավելի հաճախ դիմելու մեջ: Կարևորը բանահյուսության օգտագործման այն նոր սկզբունքներն էին, որ հայ գրականության մեջ հաստատեց նա:

Ֆոլկլորային նյութերի նկատմամբ սկզբից ևեթ Թումանյանի ցուցաբերած ջերմ վերաբերմունքը ինչ-որ ազգագրական հետաքրքրասիրություն չէր, այլ ուներ շատ ավելի խոր հիմքեր: Ժողովրդական բանահյուսության մեջ նա իրավացիորեն տեսնում էր ազգության ոգին, հասարակական-բարոյական իդեալները՝ իրենց գեղարվեստական անխարդախ արտահայտությամբ: Եվ ամեն մի ազգային գրականություն, որի հիմնական խնդիրն այդ ոգու, այդ իդեալների մարմնավորումը պետք է լինի, չի կարող չդիմել բանահյուսությանը, չօգտվել դարերի ընթացքում դրա մեջ խտացված ժողովրդական իմաստության գանձերից: Ահա թե ինչու դեռ 1894 թ. Թումանյանը ժողովրդական բանահյուսությունն անվանում էր «մեր գրականության հարազատ հողն ու պատվանդանը», իսկ մի քանի տարի անց, իբրև ընդհանուր օրինաչափություն, հավաստում էր. «Ամեն մի ազգի բանաստեղծություն ժողովրդական լեգենդաներով, ազգային ոգու ստեղծագործություններով է կորանում և ինքնուրույնության կնիք առնում, հաստատվում, առաջ գալիս, որպես մի ամբողջ ժողովրդի խոսք, և դրանով էլ դառնում պատկառելի»:

Թումանյանից առաջ հայ գրականության մեջ շատ տարածված էին ֆոլկլորի օգտագործման երկու հակադիր սկզբունք: Գրողները (առավելապես երկրորդական, փոքր շնորհքի տեր գրողները) հաճախ զբաղվում էին այս կամ այն ավանդության, վիպական կրույցի կամ հեքիաթի պասսիվ նկարագրական վերապատմությամբ, որն անզոր է նոր լույսով լուսավորելու ժողովրդի պատմածը, նոր աստիճանի բարձրացնելու նրա գեղարվեստական մակարդակը:





Մյուս կողմից, XIX դարի մեր շատ նշանավոր գրողների երկերում ժողովրդական բանահյուսությունն օգտագործվել է, առաջին հերթին, որևէ սուբյեկտիվ ստեղծագործական գաղափար հաստատելու, և ոչ թե ֆոլկլորի մեջ պարփակված ժողովրդական ոգին, աշխարհըզգացողությունը բացահայտելու համար: Դա բնորոշ էր հատկապես մեր կլասիցիստ և ռոմանտիկ գրողների համար:

Թումանյանի մեծությունն այս դեպքում այն էր, որ բոլոր ֆոլկլորային մշակումների մեջ նա իր բանաստեղծական անհատականությունն օրգանապես միաձուլում էր ժողովրդի ոգու, մտածողության, իդեալների աշխարհին: Դա *ժողովրդական բանահյուսության ռեալիստական ըմբռնման և մարմնավորման սկզբունքն էր*, որ սկզբից իսկ հատուկ էր Թումանյանին և ժամանակի ընթացքում ավելի ու ավելի կատարելագործվեց: Ամենուր մեր առջև կանգնում են, մի կողմից, հեքիաթի, վիպերգության կամ ավանդության հեղինակ ժողովուրդն իր կյանքով ու աշխարհըզգացողությամբ և, մյուս կողմից՝ այդ ամենը վերարտադրող բանաստեղծը: Թումանյանը երբեք չի բռնանում, չի մոդեռնացնում ժողովրդական բանահյուսության ոգին, բայց երբեք էլ չի դառնում նրա պասսիվ վերապատմողը: Ժողովրդի կենսափորձն ու իմաստությունը մարմնավորող նյութերի մեջ նա միշտ տեսնում է հաճախ առաջին հայացքից թաքնված, նույնիսկ իրենց՝ պատմողների համար աննկատելի մնացած մի հիմնական գաղափար, որին և բացառիկ վառ արտահայտություն է տալիս բանաստեղծը: Թումանյանն իրավամբ գտնում էր, որ ֆոլկլորային ստեղծագործության այդ հիմնական գաղափարի հայտնագործումն ինքնին արդեն դժվարագույն խնդիր է: Դրան գրեթե միշտ ավելանում է նաև սկզբնաղբյուրի գեղարվեստական բազմակողմանի մշակման, կանազան տարբերակների լավագույն դրվագների ստեղծագործական վերաձուլման աշխատանքը: Որպես արդյունք, ֆոլկլորային նյութը միշտ հասցվում է գեղարվեստական ավելի բարձր մակարդակի, դառնալով խորապես թումանյանական:

Ահա թե ինչու Թումանյանն այնպիսի կրքոտությամբ է հանդես եկել «հայոց դրամբյանիզմի»՝ գռեհիկ և տգետ քննադատության դեմ, որը ֆոլկլորից օգտվելը համարում էր բանագողություն: Իհարկե, այդ պայքարում հիմնականը ոչ թե սեփական անունն ու գործը պաշտպանելու մտահոգությունն էր, այլ ժողովրդական բանահյուսության և գրականության կապի ճշմարիտ չափանիշների հաստատումը: Այդ սկզբունքները նա իրագործել է տարբեր ուղիներով, բայց միշտ շլացուցիչ ուժով ու տաղանդով:

Մեր ժողովրդական վեպի մի շարք տարբերակների համադրումից Թումանյանը կերտեց իր անկրկնելի *Սասունցի Դավիթը*, որը ցայսօր մնում է հայ հերոսական էպոսի լավագույն գեղարվեստական մշակումը: Պոեմի դյուցազուն հերոսը, նրա բոլոր մյուս կերպարներն ու դրվագները մինչև վերջ հարազատ են ժողովրդական ոգուն, պոետիկային, բայց և միաժամանակ արտահայտում են նաև Թումանյանի գաղափարական-ստեղծագործական ոգին՝ ազատության և հայրենասիրության, համընդհանուր արդարության և խաղաղ աշխատանքի նրա նվիրական երազանքը:

Շատ գրողներ են դիմել արևելքի և արևմուտքի գրեթե բոլոր ժողովուրդների մեջ տարածված հեքիաթային սյուժեին, որը պատմում է հրաշք-թռչունի, նրա կախարդական արարքների մասին: Բայց Թումանյանն այդ հեքիաթի մեջ տեսավ մի բոլորովին այլ գաղափար՝ երգի, արվեստի միջոցով մարդկությանը վերածնելու, մարդուն բոլոր կարգի արատներից մաքրելու գաղափարը, որն







այնքան կարևոր էր բանաստեղծի համար: Ահա թե ինչու նա այնպիսի սիրով ու երկյուղածությամբ էր պատրաստվում ավարտելու իր *Հազարան բլբուլը*, որի վրա Թումանյանն աշխատել է գրեթե ողջ ստեղծագործական կյանքի ընթացքում՝ շուրջ 30 տարի, հավաքելով և ուսումնասիրելով այդ հեքիաթի մի քանի տասնյակ տարբերակներ:

Ժողովրդական բանահյուսության ստեղծագործական իմաստավորման ճանապարհով են երևան եկել Թումանյանի սքանչելի հեքիաթները: Դրանց թվում կան սոցիալական ամենախոր ընդհանրացումներ պարունակող այնպիսի գործեր, ինչպես՝ *Ոսկու կարասը*, *Տերն ու ծառան*, և, իհարկե, նրա հեքիաթային ստեղծագործության գագաթը՝ *Քաջ Նազարը:* Այստեղ կան ժողովրդական սրամտության այնպիսի հոյակապ կոթողներ, ինչպես՝ *Կիկոսի մահը*, *Բարեկենդանը*, *Սուտլիկ որսկանը* և շատ այլ գործեր: Այդ ճանապարհով են ստեղծվել նաև Թումանյանի բազմաթիվ բալլադները, որոնց թվում՝ այնքա՜ն բանաստեղծական, միաժամանակ այնքա՜ն կենսալից ու խորիմաստ *Փարվանան*, *Ախթամարը*, *Աղավնու վանքը*, *Հսկան*, *Մի կաթիլ մեղրը*, *Թագավորն ու չարչին:*

Ժողովրդական մի հասարակ ավանդությունից է ծագել *Թմկաբերդի առումը*՝ Թումանյանի բանաստեղծական հանճարի ամենակատարյալ կերտվածքներից մեկը: Խորտակված բերդի լեգենդը հիմք դարձավ սիրո և խարդավանքի, հայրենասիրական սխրանքի և դավաճանության մի դրամատիկ պատմության, որը, իիրավի, հասնում է շեքսպիրյան ուժի: Ինչպիսի՜ խորքեր է բացահայտել բանաստեղծն իր հերոսների հոգում՝ սեր, հիացմունք, անձնազոհություն, նենգություն, խղճի խայթ, ափսոսանք, կյանքի, փառքի ու գանձի անցողիկության փիլիսոփայական խոհ: Եվ այդ բոլորի վրա, հերոսական և ողբերգական դեպքերի, վիպական և քնարական շարադրանքի վրա թևածում է բանաստեղծի իմաստուն պատգամը բարի գործի անմահության մասին: Մի պատգամ, որն, ասեք, իր մեջ խտացնում է ամբողջ Թումանյանին, նրա հումանիզմը, մարդու կոչման բարձր ըմբռնումը, բարոյական կատարելության տենչանքը.

*Գործն է անմահ, լա՛վ իմացեք,*
*Որ խոսվում է դարեդար,*
*Երնեկ նրան, ով իր գործով*
*Կապրի անվերջ, անդադար:*

Եվ ապա՝

*Անց ենք կենում... միայն անմահ*
*Գործն է խոսվում լավ ու վատ.*
*Ա՜խ, երանի՛ ո՛վ մարդ կգա*
*Ու մա՛րդ կերթա անարատ:*

Մարդու կոչման, կյանքի և մահվան հավերժական հարցերը կազմում են Թումանյանի շատ երկերի և, մանավանդ, կյանքի վերջին տարիներին գրած խորախորհուրդ քառյակների հիմնական թեման: Իմաստի վիթխարի խտացմամբ և անթերի կատարելությամբ այդ քառյակները ո՛չ միայն Թումանյանի, այլև ողջ բազմադարյան հայ պոեզիայի ամենաբարձր նվաճումներից են:

4

Թումանյանը 1910 թվականին գրել է. «Ես առաջ եմ գալիս ոչ թե «տիրող հանգամանքներից», այլ մի արյունոտ հողից, մի անօրինակ կարհուրելի պատմությունից, մի հոշոտված ժողովրդից, ուր ինձ բանաստեղծ է արել ճակատագիրը ու ներշնչել է անկեղծ լինել



ամենից առաջ»: Խոր թախիծով և արժանապատվությամբ տոգորված այս խոսքերի հաստատումը, ամենից առաջ, Թումանյանի գեղարվեստական ստեղծագործությունն է, որի մեջ այնքան մեծ տեղ են գրավում հայրենիքի քաղաքական ճակատագրի, ազգային ազատագրության հարցերը: Արդեն 80-ական թթ. գրական առաջին փորձերում և 90-ական թթ. հրատարակած բանաստեղծություններում գծագրվում է տառապող ու մաքառող, բախտի չար հարվածով մասնատված ու բզկտված հայրենիքի ողբերգական պատկերը: Այդ պատկերը ժամանակի ընթացքում խորացավ, տոգորվեց պատմական ու գեղագիտական մեծ բովանդակությամբ և իր դասական արտահայտությունը գտավ *Հին կռիվը* պոեմում (դժբախտաբար, Թումանյանի 1911 թ. ձերբակալության ժամանակ իր մեծ մասով կորած) և հայրենասիրական քնարերգության այնպիսի անմահ նմուշների մեջ, ինչպես դարասկզբին գրած *Հայոց վիշտը*, *Հայոց լեռներում*, *Մեր ուխտը*, համաշխարհային պատերազմի շրջանում հրապարակած *Հայրենիքիս հետ*, *Հոգեհանգիստ* և այլ բանաստեղծություններ:

Թումանյանի հայրենասիրական պոեզիայի ամենաբնորոշ գծերից մեկը հարազատ ժողովրդի անցած պատմական ուղու, նրա ազգային բնավորության լավագույն գծերի գեղարվեստական բացահայտումն է: Բանաստեղծը ձգտում է կռահել ու ցույց տալ, իր մի հոդվածի խոսքերով ասած՝ «թե ո՞րն է էս ժողովրդի պատմական ճանապարհը, սրա գոյության խորհուրդը, ի՞նչ է կամենում սա, սրա ոգին» (*Հայի ոգին*, 1910): Թումանյանը բարձր էր գնահատում հայ ժողովրդի կարմանալի կենսունակությունը, պատմության բոլոր արհավիրքներին դիմանալու ուժը: Բայց դա պարզապես ֆիզիկական գոյության բնազդ չէ, այլ, ըստ Թումանյանի, համամարդկային մեծ իդեալների կենսագործմանը մասնակցելու ձգտում: Թումանյանը բանաստեղծորեն դրվատում է «միշտ դեպի վեր», «միշտ դեպի լույս» գնալու այդ ձգտումը, հպարտությամբ է խոսում մշկութային այն մեծ գանձերի մասին.

*Ինչ որ դարերով*
*Երկնել է, ծնել մեր խորունկ հոգին*
*Հայոց լեռներում,*
*Բարձր լեռներում:*

Հայ ժողովրդի ազգային բնավորությանը նա հատկապես բնորոշ է համարում խաղաղության, մարդկանց և ազգերի եղբայրության երազանքը: Խոսելով այդ մասին, նա նույն հոդվածում գրել է. «Եվ ինչքան մեծ է խաղաղ կյանքի կարոտը էս ամեն տեղերում ու ամենի մեջ, խորթ արյունի ու պատերազմի, խորթ սրածության ու ավերածության»:

Հայ ժողովրդի ողբերգական ճակատագրի պատկերները Թումանյանի երկերում գրեթե միշտ ուղեկցվում են հայրենիքի վերածնության լավատեսական հավատի շեշտով: Բայց դա ինչ-որ բարեհոգի մխիթարանքի խոսք չէր, այլ ուներ իր հասարակական ամուր հիմքը: Թումանյանը հավատում էր մարդկային վեհ սկզբունքների՝ արդարության ու եղբայրության վերջնական հաղթանակին և դրա հետ էր կապում հայ ժողովրդի փրկությունը: Դա էր, որ ուժ տվեց նրան 1915 թվականին գրած իր *Հայրենիքիս հետ* բանաստեղծությունը— XX դարի հայ պոեզիայի թերևս ամենից ողբերգական և միաժամանակ ամենից առնական այդ գործը— ավարտելու այսպիսի հավերժող տողերով.

*Ու պիտի գա հանուր կյանքի արշալույսը վառ հագած,*
*Հազա՜ր-հազա՜ր լուսապայծառ հոգիներով ճառագած,*

*Ու երկնահաս քո բարձունքին, Արարատի սուրբ լանջին*
*Կենսաժպիտ իր շողերը պիտի ժպտան առաջին,*
*Ու պոետներ, որ չեն պղծել իրենց շուրթերն անեծքով,*
*Պիտի գովեն քո նոր կյանքը նոր երգերով, նոր խոսքով,*
*Իմ նո՜ր հայրենիք,*
*Հզո՜ր հայրենիք...*

Համընդհանուր եղբայրության, ազգերի միջև փոխըմբռնման և խաղաղության հաստատման ազնիվ նպատակին էր ուղղված նաև Թումանյանի ամբողջ բազմակողմանի հասարակական գործունեությունը, որն այնքա՜ն ուժ և ժամանակ է խլել բանաստեղծից: Նա երբեք կաբինետային գրող չի եղել. միշտ գտնվել է կյանքի հորձանքում, ժամանակի մեծ իրադարձությունների կենտրոնում: Գրեթե տասը տարի անընդմեջ Թումանյանը ղեկավարել է հայ գրողների Կովկասյան ընկերությունը, հասարակական և մշակութային շատ ուրիշ կազմակերպություններ: Եվ այդ բոլորին նա նվիրվել է ինքնամոռացության աստիճան, միշտ իր առջև ունենալով հասարակության ու գրականության առաջընթացի ազնիվ խնդիրը: Այդ է իրավունք տվել նրան ասելու. «Ամենքի հետ ապրում եմ, ամենքի չափ տառապում»: Անհամար են այս միտքն ապացուցող փաստերը:

Ինչպե՞ս կարելի է չհիշել 1905—1907 թվականները, երբ ցարական բյուրոկրատիայի կողմից հրահրված հայ-թուրքական կոտորածների ժամանակ Թումանյանն ամեն ինչ արեց արյունհեղությունը կասեցնելու համար՝ կոչեր, դիմումներ, բանավոր ելույթներ, երբ հավատարիմ մարդկանց ուղեկցությամբ նա ամիսներ շարունակ սպիտակ դրոշի ներքո շրջում էր գավառներում, քարոզելով եղբայրություն ու խաղաղություն:

Կամ ինչպե՞ս չվերհիշել համաշխարհային պատերազմի ժամանակ, ազգային մեծագույն դժբախտության օրերին Թումանյանի ծավալած գործունեությունը՝ այցելություններ ռազմաճակատ, անձնական ակտիվ մասնակցություն գաղթականների, որբ երեխաների պատսպարման ու փրկության գործին: Խաղաղության ազնիվ միսիայով հանդես եկավ մեծ բանաստեղծը և՛ 1918 թ. ծագած հայ-վրացական կոնֆլիկտի, և՛ 1921 թ. դաշնակցական ավանտյուրայի ժամանակ:

Թումանյանի հասարակական հայացքների մեջ կարևորագույն տեղ էր գրավում ազատ, դեմոկրատական Ռուսաստանի հետ դաշինքի գաղափարը: Նա հայ ժողովրդի պատմական ճակատագրի հարցում «ռուսական կողմնորոշման» համոզված ու հետևողական պաշտպան էր և միայն այդ ճանապարհին էր տեսնում ազգային փրկության հնարավորությունը: Եվ միանգամայն օրինաչափ էր, որ բանաստեղծը ողջունեց սոցիալիստական հեղափոխությունը Ռուսաստանում, «բոլշևիկմի մեծ խիզախումների» մեջ տեսնելով ռուս ժողովրդի ոգու արտահայտությունը, ժողովուրդ, որն «առհասարակ մեծ միսիա ունի կատարելու ժողովուրդների կյանքում» *(Բաց նամակ Սերգեյ Գորոդեցկուն, 1918)*: Հեղափոխական դեպքերը դիտելով իբրև «պատմության ուղիղ ընթացքը», Թումանյանը ողջունեց նաև խորհրդային կարգերի հաղթանակը Անդրկովկասում: Նա հավատում էր, որ նոր իշխանությունը «ժողովուրդներին բերելու է ազնիվ աշխատանքի վրա հիմնված խաղաղ և հանգիստ կյանք»,— մի նպատակ, որի համար բանաստեղծը պայքարել էր ամբողջ կյանքում, իր խոսքով ու գործով:

Այդ համոզմունքով էլ նա իր վերջին ուժերը նվիրաբերեց նոր կարգերի ամրապնդման գործին: 1921—22 թթ., որպես Հայաստանի օգնության կոմիտեի (ՀՕԿ) նախագահ և Թիֆլիսի հայ արվեստի տան (Հայարտուն) ղեկավար, հայ ժողովրդի մեծ բանաստեղծը դարձավ նրա նոր պետականության և նոր կուլտուրայի ակտիվ կառուցողներից մեկը:



5

Խորհելով Հովհաննես Թումանյանի և նրա ժառանգության մասին, ուզում ես կրկնել իր իսկ բանաստեղծի խոսքերն անցյալի մեր մեծ գրողների վերաբերյալ, որոնք «ինչպես պայծառ արևներ լուսավորում են մեր ճանապարհը դեպի ապագա լավ օրերը, և որոնց ապավինած մենք զգում ենք մեզ հզոր ու անսասան»: Այս տողերը ամենից ավելի բնորոշում են իրեն՝ Թումանյանին, նրա խոսքի արտակարգ մեծ նշանակությունը հայ ժողովրդի հոգևոր կյանքում:

Նրա երգերն ու պոեմները, հեքիաթներն ու պատմվածքները հայ մարդուն ուղեկցում են ամբողջ կյանքում: Բանաստեղծի խոհերն առավել հստակ են արտահայտում մեր ամենաբարձր պատկերացումները մարդու կոչման, կյանքի իմաստի մասին: Նրա խոսքը գեղարվեստական պարզության ու խորության, ժողովրդայնության ու ռեալիզմի անզերազանց օրինակ է:

Վիթխարի է Թումանյանի դերը հայ գեղարվեստական խոսքի հետագա զարգացման գործում: Այն ամեն արժեքավորը, ժողովրդայինը, ինչ վերջին տասնամյակներում ստեղծվել է հայ գրականության մեջ, ուղղակի կամ անուղղակի կապված է Թումանյանի ավանդույթների հետ: Նրա լայնախոհ ռեալիզմը, ժողովրդական պայծառ ոգին, նրա իմաստուն հայացքը կյանքի և աշխարհի նկատմամբ, պարզության մեջ անհատակ, սեղմության մեջ լայնածավալ նրա խոսքը դարձել են հայրենի գրականության այնպիսի բարձունքներ, որոնց կողքից չէր կարող անցնել ոչ մի հայ գրող, եթե անգամ իր գրելաձևով նա շատ հեռու լիներ Թումանյանից: Այդ իրողությունը տարբեր կերպ արտահայտվել է Ե. Չարենցի և Ա. Բակունցի, Ստ. Զորյանի և Ն. Զարյանի, Գ. Սարյանի և ավելի նորագույն գրողների երկերում:

Դժվար է պատկերացնել նաև հայ արվեստը առանց թումանյանական մոտիվների և սյուժեների: Թումանյանի երկերը անհամար նկարչական կտավների ու քանդակների նյութ են տվել հայ արվեստագետներին: Թեև բանաստեղծը չհասցրեց ավարտել իր ծրագրած դրամաները, բայց նրա պոեմները, պատմվածքներն ու հեքիաթները տասնյակ թատերական ներկայացումների և կինոֆիլմերի հիմք են դարձել: Հայ ազգային օպերայի երկու դասական և ամենասիրված ստեղծագործություններից՝ Ա. Տիգրանյանի «Անուշից» և Ա. Սպենդիարյանի «Ալմաստից» հետո էլ Թումանյանի երկերը ներշնչում են ստեղծելու ամենատարբեր ժանրի երաժշտական գործեր՝ երգից մինչև բալետ և օպերա:

*«Արևի նման նայեցեք աշխարհքին»,—* ասում էր Թումանյանը, դիմելով երիտասարդ գրողներին: Այդպես, կյանքում և ստեղծագործության մեջ արևի նման շռայլ ու առատաձեռն էր Թումանյանը, որովհետև նրա սրտում «սերն անվերջ էր, բարին՝ անհատ»: Հոգու այդ հարստությունը, այդ անսահման մարդասիրությունը ողողում են նրա ողջ գրական ժառանգությունը, որը հայ ժողովրդի ազգային օրինական հպարտության առարկան է և, միաժամանակ, մի թանկարժեք ավանդ համամարդկային մշակույթի մեջ:

# Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԾՆՆԴՅԱՆ 100-ամյակի առթիվ

## Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ՏԵՍԱԲԱՆ ԵՎ ՀԻՄՆԱԴԻՐ

**Ա. Թ. ԹՈՎՄԱՍՅԱՆ**

Հայկական ՍՍՀ վաստակավոր իրավաբան

Վ. Ի. Լենինի տեսական ժառանգության մեջ կարևոր տեղ է գրավում սոցիալիստական պետության գիտական հիմնավորման ու կառավարման սովետական սիստեմի պրակտիկ կազմակերպման պրոբլեմը: Զարգացնելով Մարքսի ու Էնգելսի հեղափոխական ուսմունքը պատմական նոր իրադրության պայմաններում, Լենինը այն ստեղծագործաբար կիրառեց ռուսական իրականության մեջ, կանխանշեց ցարիզմի ու բուրժուական կարգերի տապալման ուղիները:

Նա միաժամանակ պետության մարքսիստական ուսմունքը պաշտպանեց բուրժուական ու ռևիզիոնիստական գաղափարախոսների հարձակումներից, որոնք ջանք չէին խնայում խեղաթյուրելու պրոլետարական դիկտատուրայի մարքսյան ըմբռնումը՝ սոցիալիստական հեղափոխության այդ արմատական հարցը:

Լենինն իր դասական երկում ապացուցեց, որ Ռուսաստանում հիմնված առաջին սոցիալիստական պետությունը իշխանության սովետական ձևով՝ դա հենց պրոլետարական դիկտատուրայի մարմնացումն է:

Լենինի ուսմունքի համաձայն, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատմամբ դասակարգային կռիվը չի վերջանում, այլ շարունակվում է մի նոր ձևով, որի ընթացքում հաղթանակած պրոլետարիատը դաշն է կնքում ոչ պրոլետարական, բայց աշխատավոր դասակարգի՝ գյուղացիության հետ:

Մերկացնելով բուրժուական պետության և բուրժուական դեմոկրատիայի դասակարգային էությունը, Լենինը վերջինիս հակադրեց սոցիալիստական դեմոկրատիան: Նա ի լուր աշխարհի հայտարարեց, որ բանվոր դասակարգի դիկտատուրայի պայմաններում ստեղծված դեմոկրատիան միլիոն անգամ ավելի դեմոկրատական է ամեն մի բուրժուական դեմոկրատիայից: Նա ամենայն վճռականությամբ հերքեց բուրժուական պառլամենտների մասին եղած



այն առասպելը, թե իբր դրանք ժողովուրդների շահերն արտահայտող օրգաններ են, հօդս ցնդեցրեց բուրժուական դեմոկրատիան գովաբանող վարկածները: Նա ասում էր, թե բուրժուական պառլամենտները, կամ «ժողովրդական ներկայացուցչության օրգանները», ինչպես դրանց փորձում են փետրազարդել բուրժուական փիլիսոփաներն ու իրավաբանները, իրականում ոչ այլ ինչ են, բայց եթե «...չլսված սրիկայությունների, ժողովուրդներին ֆինանսապես և քաղաքականորեն խաբելու, կարիերիզմի, երեսպաշտության, աշխատավորներին ճնշելու գլխավոր ասպարեզը կամ գլխավոր ասպարեզներից մեկը» (Երկեր, հ. 31, էջ 226—227):

Ի տարբերություն բուրժուական դեմոկրատիայի ու պետականության և ի հակադրություն դրանց, սովետական հասարակարգը, որպես հասարակական և պետական կարգի պատմականորեն կազմավորված նոր սիստեմ, հանդիսացել ու հանդիսանում է մաքսիմում դեմոկրատիզմ բանվորների և գյուղացիների համար: Այն իր բոլոր ատրիբուտներով հանդերձ՝ արմատապես տարբերվում է բուրժուական դեմոկրատիայից:

Լենինը հիմնովին քննադատեց բուրժուական գաղափարախոսների հորինած և II Ինտերնացիոնալի ռեֆորմիստների, ռուսական մենշևիկների ու էսեռների լիակատար հավանությանն արժանացած այն հակագիտական, մարքսիզմը գռեհկացնող ըմբռնումը, ըստ որի, իբր դիկտատուրա և դեմոկրատիա հասկացությունները միմյանցից արմատապես տարբեր ու միմյանց սկզբունքորեն հակասող ու հակադիր բաներ են: Նա ցույց տվեց, որ այս կամ այն պետության օրոք գոյություն ունեցող դեմոկրատական հաստատություններն ըստ էության այդ պետության մեջ քաղաքական տիրապետության հասած որոշակի դասակարգի դիկտատուրայի դրսևորման արտահայտություններն են: Լենինը բացահայտեց բուրժուական պետության դիկտատորական բնույթը՝ անկախ նրա ձևից: Բուրժուական պետությունների ձևերը թեև «...չափազանց բազմազան են, բայց նրանց էությունը մեկ է. այդ բոլոր պետություններն այսպես թե այնպես, բայց վերջին հաշվով անպայման *բուրժուազիայի դիկտատուրան* են» (Երկեր, հ. 25, էջ 533):

Գիտական խորությամբ և կուսակցական սկզբունքայնությամբ վերլուծելով բուրժուական պետության դասակարգային բնույթը, Լենինը միաժամանակ բազմակողմանիորեն քննեց և հիմնավորեց սովետական պետության պատմական անհրաժեշտությունը:

Ստեղծագործաբար յուրացնելով Մարքսի հանճարեղ դրույթը, որ կապիտալիզմից կոմունիզմ տանող ժամանակաշրջանը պատմականորեն անհրաժեշտ ու անցողիկ է, որը հանգեցնում է սոցիալ-դասակարգային բոլոր տիպի տարբերությունների վերացման, Լենինը միաժամանակ հայտնագործեց անցման այդ ժամանակաշրջանի խնդիրները լուծող սոցիալիստական պետության միակ ճիշտ և նպատակահարմար ձևը՝ սովետական իշխանությունը:

Ամփոփելով Փարիզի կոմունայի և, առանձնապես, ռուսական 1905 թ. և 1917 թ. փետրվարյան հեղափոխությունների փորձը, Լենինը եկավ այն եզրակացության, որ ստեղծված նոր պայմաններում բանվորների, գյուղացիների և զինվորների դեպուտատների սովետների հանրապետությունը պրոլետարիատի դիկտատուրայի նպատակահարմար քաղաքական ձևն է: Ապրիլյան թեզիսներում Լենինը ցույց տվեց, որ «Ոչ թե պառլամենտական հանրապետություն,— Բ. Դ. սովետներից դրան վերադառնալը կլիներ մի քայլ դեպի ետ,— այլ բանվորների, բատրակների և գյուղացիների դեպուտատների սո-

վետների հանրապետություն ամբողջ երկրում, վարից մինչև վեր» (Երկեր, հ. 24, էջ 6):

Մարքսիզմի պետական-քաղաքական ուսմունքի մեջ հիմնականը պրոլետարիատի դիկտատուրայի գաղափարն է, որը և սովետական պետության բովանդակությունն է. դա «...նոր դասակարգի ամենաանձնվեր և ամենաանողոք պատերազմն է ընդդեմ *ավելի հզոր* թշնամու, ընդդեմ բուրժուազիայի, որի դիմադրությունը *տասնապատկվել* է նրա տապալումով (թեկուզ մի երկրում) և որի հզորությունը ոչ միայն միջազգային կապիտալի ուժի, բուրժուազիայի միջազգային կապերի ուժի և ամրության մեջ է, այլ *սովորության ուժի, մանր արտադրության* ուժի մեջ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 8): Դա մի պատերազմ է, որը կուգորդվում է համառ մարտերով, արյունոտ ու անարյուն, բռնի ու խաղաղ, ռազմական ու տնտեսական, մանկավարժական ինչպես և վարչական պայքարով՝ ընդդեմ հին հասարակության ուժերի ու տրադիցիաների, ասում էր Լենինը: Պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը աշխատավորության համար միաժամանակ դեմոկրատական ամենամեծ ազատություններն ու երաշխիքներն հռչակող ու իրականացնող պետություն է: Նրա պայմաններում լիովին ապահովվում է աշխատավոր մասսաների իսկական մասնակցությունը երկրի քաղաքական կյանքին, ապահովվում են աշխատավոր մարդու ազատ ու անկաշկանդ աշխատանքային գործունեության բոլոր հնարավորությունները:

Սովետական պետությունն իր գոյության տարիներին ամրապնդվել և վիթխարի կարգաշում է ապրել: Նախկին հետամնաց, տնտեսապես թույլ ու անգրագետ Ռուսաստանի վերափոխումը սոցիալիստական հզոր պետության, հասարակության սոցիալական և հոգևոր կյանքում կատարված արմատական հեղափոխական տեղաշարժերն աննախադեպ երևույթ էին մարդկության պատմության մեջ:

Լենինը գիտականորեն հիմնավորեց կոմունիստական կուսակցության դերը բանվոր դասակարգի դիկտատուրայի պետության սիստեմում: Նա ցույց տվեց, որ բանվոր դասակարգի իշխանության պայմաններում կուսակցության դերը ոչ թե նվազում, այլ ընդհակառակն, ավելի է մեծանում: Սոցիալիստական հեղափոխության կատարման և իշխանության նվաճման համար մղվող գոտեմարտի տարիներին, կուսակցությունը ղեկավարում էր բանվոր դասակարգին և նրա դաշնակից մյուս սոցիալական խավերին՝ կապիտալիզմի դեմ ծավալված պայքարում: Հեղափոխության հաղթանակից և իշխանության նվաճումից հետո կուսակցության դերը նոր բովանդակություն և նոր իմաստ է ստանում: Որպես պետության ղեկավար ուժ, նա ուղղություն է տալիս պետական օրգաններին, հասարակական-մասսայական կազմակերպություններին: Կուսակցության նախաձեռնությամբ ու ղեկավարությամբ իրականացվում է պետության արտաքին ու ներքին քաղաքականությունը, ստեղծվում, ամրապնդվում ու կատարելագործվում է սովետական պետական ապարատը:

Ներկա ժամանակաշրջանը բնութագրվում է *կոմունիստական կուսակցության*, որպես սովետական հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի, դերի ու նշանակության առավել աճմամբ:

Լենինին մեծապես զբաղեցնում էր այն հարցը, թե ինչպիսի պետական կառուցվածք պետք է ունենար արդեն կազմավորվող սովետական հանրապետությունների մեծ ընտանիքը: Մարքսիզմի մեծ պետականագետին հատուկ խորաթափանցությամբ նա մշակեց Սովետական Սոցիալիստական Հանրապե-



տությունների Միության, որպես ֆեդերալ պետության սկզբունքները: Լենինյան ծրագրի համաձայն՝ հանրապետություններն այդ ֆեդերացիայի սիստեմում հանդես են գալիս որպես լիիրավ դաշնակիցներ: Պահպանելով իրենց ինքնուրույնությունը, նրանք միաժամանակ պետք է ունենան իրենց համապետական տնտեսությունը, միասնական արտաքին քաղաքականությունը, կազմակերպեն միասնական հզոր բանակ, միասնական դրամական և վալյուտային սիստեմ, ընդհանուր ֆեդերալ մասշտաբով համապատասխան պետական օրգաններ, հրատարակեն իրավունքի բոլոր բնագավառներին վերաբերող կայուն օրենսդրության միասնական հիմունքներ: Ֆեդերալ պետության և նրա կազմում մտնող հանրապետությունների իրավասության շրջանակները պետք է սահմանվեն ընդհանուր միութենական և միութենական հանրապետությունների սահմանադրություններով, այսինքն՝ երկրի հիմնական օրենքներով: Այս նշանակում է, որ սոցիալիստական ֆեդերացիայի գոյությունը հիմնավորվում և արդարացվում էր տնտեսական ու քաղաքական, այդ թվում երկրի պաշտպանության շահերի թելադրանքով: Դրա կազմակերպումը պատմականորեն պայմանավորված ու անհրաժեշտ էր:

Սովետական պետության ֆեդերալ կառուցման սկզբունքն առաջին անգամ օրենսդրական կարգով հաստատվեց Լենինի կազմած աշխատավոր և շահագործվող ժողովրդի իրավունքների դեկլարացիայի նախագծում, որը 1918 թ. հունվարի 5 (18)-ին ընդունվեց համառուսաստանյան Կենտգործկոմի կողմից, իսկ մի քանի օր հետո հաստատվեց սովետների համառուսաստանյան III համագումարում: Այդ նույն սկզբունքը մի փոքր ավելի ուշ իր արտահայտությունն ու իրավաբանական ձևակերպումը գտավ այս անգամ արդեն սովետական առաջին՝ ՌՍՖՍՀ 1918 թ. սահմանադրության մեջ, իսկ տարիներ հետո՝ ՍՍՀՄ 1924 թ., ապա և 1936 թ. սահմանադրություններում:

Սովետական ֆեդերատիվ պետությունն ազատ ազգերի ազատ ու կամավոր միություն է: «Մենք ազգերի *կամավոր* միություն ենք ուզում,— ասում էր Լենինը,— այնպիսի միություն, որը ո՛չ մի բռնություն չթույլատրեր մի ազգի կողմից մյուսի վրա, այնպիսի միություն, որը հիմնված լիներ ամենալրիվ վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա» (Երկեր, հ. 30, էջ 368):

Սակայն նոր կազմակերպված սոցիալիստական պետության իսկայական տերիտորիայի վրա բնակվում էին նաև մանր ազգություններ ու ցեղախմբեր, որոնք իրենց փոքրաթիվ լինելու կամ այլ պատճառներով ի վիճակի չէին դառնալու ինքնուրույն դաշնակից հանրապետություններ: Կուսակցությունը խնդիր էր դրել գործն այնպես կազմակերպել, որ դրանք հնարավորություն ունենային պահպանելու իրենց ազգային գոյությունն ու ինքնուրույնությունը, զարգացնելու սեփական լեզուն, ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան: Անհրաժեշտ էր ֆեդերացիայի սիստեմում նման ազգությունների համար կազմակերպել ավտոնոմ ազգային օկրուգներ և այլ պետական-տերիտորիալ միավորումներ: «Քննադատական դիտողություններ ազգային հարցի մասին» հոդվածում (դեռևս 1913 թ.), նա գրում էր. «Անկասկած է..., որ ամեն մի ազգային ճնշում վերացնելու համար անչափ կարևոր է ստեղծել թեկուզ ամենափոքր մեծությամբ, ամբողջական, միասնական, ազգային կազմով ավտոնոմ օկրուգներ, ըստ որում դեպի այդ օկրուգները կարողանային «ձգտել» և նրանց հետ հարաբերության մեջ մտնել նաև ամեն կարգի ազատ միություններ, տվյալ ազգության անդամները, որոնք

ցրված են երկրի կամ նույնիսկ երկրագնդի կամայական ծայրերում» (Լենին, Երկեր, հ. 20, էջ 44):

Այն հանգամանքը, որ մեծ Հոկտեմբերի հաղթանակի շնորհիվ մեր երկրում կազմակերպվել ու բարգավաճում են մի ամբողջ շարք ավտոնոմ հանրապետություններ, ավտոնոմ մարզեր և ազգային բազմաթիվ օկրուգներ, ազգային պետականության ստեղծման լենինյան հանճարեղ տեսության իրականացման յուրահատուկ արտահայտությունն է: ՍՄԿԿ ծրագրում նշված է, որ կուսակցության խնդիրն է հետագայում նույնպես ապահովել սովետական բոլոր ազգերի ու ազգությունների ավելի ու ավելի սերտ եղբայրական համագործակցությունն ու փոխադարձ օգնությունը, դրանց կամավոր համախմբումն ու մերձեցումը կյանքի բոլոր բնագավառներում, որ պետք է այսուհետև ևս լիովին օգտագործել ու կատարելագործել ՍՍՀՄ ժողովուրդների ազգային պետականության ձևերը:

Լենինը մշակեց սովետական պետության կառավարման սիստեմի հարցը: Երկրում կառավարման միակ ճիշտ սկզբունքը նա համարում էր սոցիալիստական դեմոկրատական ցենտրալիզմը, որն ի տարբերություն և ի հակադրություն բուրժուական ցենտրալիզմի, գալիս է ներքևից, կամավոր հիմունքներով, աշխատավորության ամենալայն զանգվածների գիտակցական գործունեությամբ՝ հանուն ընդհանուր նպատակների: Նա սովորեցնում էր, որ ցենտրալիզմը չի կարելի հակադրել դեմոկրատիզմին, որքանով որ կոմունիստական շինարարության պայմաններում այդ երկու սկզբունքները մեկ միասնական և անխզելի ամբողջություն են կազմում: Ելնելով այդ դրույթներից, նա մշակեց սովետական դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքները:

Նախահոկտեմբերյան և հետհոկտեմբերյան շրջանում Լենինին մտահոգում էր հին պետական ապարատի նկատմամբ ունենալիք վերաբերմունքի և նոր, սովետական պետական ապարատի ստեղծման հարցը: Ուսումնասիրելով Արևմուտքի և Ռուսաստանի աշխատավոր մասսաների դասակարգային պայքարի փորձը, նա գտնում էր, որ ամենակարճ ժամկետում բուրժուազիայի և կալվածատերերի շահերն արտահայտող ու այդ շահերը պաշտպանող հին պետական ապարատը, այդ թվում հին դատարանն ու դատախազությունը, պետք է հիմնովին ջախջախվեն և դրանց փոխարեն պետք է ստեղծվի բոլորովին նոր, սովետական պետական ապարատ՝ օրգանների իր կուռ ու միասնական սիստեմով:

Միաժամանակ անհրաժեշտ է ամենօրյա, հետևողական և համառ պայքար տանել նորաստեղծ պետական ապարատի, նրա օրգանների գործունեությունը բարելավելու, դրանցում աշխատավորական մասսաներին մասնակից դարձնելու, այդտեղ եղած բյուրոկրատիզմի դեմ անողոք պայքարելու, գործին նվիրված լավագույն կադրերով այդ ապարատն ապահովելու և նրա գործունեությունը ռիթմիկ ու անթերի դարձնելու համար. «...Ճնշված դասակարգի ազատագրումն անկարելի է *ո՛չ* միայն առանց բռնի հեղափոխության, *այլև առանց* պետական իշխանության այն ապարատի *ոչնչացման*, որը ստեղծել է տիրող դասակարգը...» (Լենին, Երկեր, հ. 25, էջ 498):

Հայտնի է, որ հեղափոխությունը հողմացրիվ արեց բուրժուազիայի և կալվածատերերի քաղաքական պետությունը, ջախջախեց հին պետական իշխանությունը, արձակեց հակահեղափոխական Հիմնադիր ժողովը, վերացրեց նախկին ժանդարմերիան, դատարանն ու դատախազությունը: Հեղափոխությունը սահմանեց պրոլետարիատի քաղաքական տիրապետությունը, իշխանությունը հանձնեց սովետների ձեռքը: Կարճ ժամկետում կազմվեց երկրի օրենսդիր օրգանը՝ Կենտրոնական Գործադիր Կոմիտեն, ստեղծվեցին պետական իշխանության և կառավարման կենտրոնական ու տեղական նոր օրգաններ՝ Ժողովրդական կոմիսարների սովետը և պետական իշխանության տեղական օրգանների գործադիր կոմիտեները: Կազմավորվեցին ճյուղային կառավարման կենտրոնական և տեղական օրգանները, հանձին ժողովրդական կոմիսարիատների և իշխանության տեղական օրգանների գործադիր կոմիտեների բաժինների: Կազմակերպվեց սովետական բանակը, կազմվեցին հետախուզական և հակահետախուզական, ինչպես նաև դատական և դատախազական օրգանները, հիմնվեց սովետական միլիցիան:



Լենինը խորապես գիտակցում էր, որ սովետական նորաստեղծ պետության համար կենսականորեն անհրաժեշտ է նաև նոր, բովանդակությամբ սոցիալիստական համապարփակ իրավունք: Նա ասում էր, որ առանց ուտոպիզմի մեջ ընկնելու չի կարելի նույնիսկ մտածել, որ տապալելով կապիտալիզմը, մարդիկ միանգամից կսովորեն հասարակության համար աշխատել առանց իրավունքի որևէ նորմի: Լենինը սոցիալիստական իրավունքի՝ որպես իրավանորմերի սիստեմի առջև, դնում էր համապետական նշանակություն ունեցող խնդիրներ, պահանջում, որ այդ նորմերը խախտողների նկատմամբ կիրառվեն հասարակական և պետական հարկադրանքի խստագույն միջոցներ. «...Մեծագույն հիմարություն և ամենաանհեթեթ ուտոպիզմ կլիներ ենթադրել, թե առանց հարկադրանքի և առանց դիկտատուրայի հնարավոր է կապիտալիզմից անցնել սոցիալիզմին» (Երկեր, հ. 27, էջ 315):

Հոկտեմբերի դեռ առաջին տարիներին նրա ղեկավարությամբ ու մասնակցությամբ ձևակերպվեցին սովետական սոցիալիստական իրավունքի բոլոր ճյուղերի կարևորագույն օրենսդրական փաստաթղթերը, որպիսիք են՝ Հոկտեմբերի առաջին դեկրետները, սովետական առաջին՝ ՌՍՖՍՀ 1918 թ. սահմանադրությունը, ՌՍՖՍՀ քաղաքացիական, աշխատանքային, հողային, ամուսնության, ընտանիքի և խնամակալության, քրեական, քրեական և քաղաքացիական դատավարության օրենսգրքերը, ՍՍՀՄ առաջին՝ 1924 թ. սահմանադրությունը և հարյուրների հասնող այլ օրենսդրական բազմաբովանդակ ակտեր: Այդ օրենսգրքերում իրավունքը դրսևորվեց որպես նյութական ուժ, որպես հասարակական հարաբերությունների յուրատեսակ կարգավորիչ, որպես այդ հարաբերությունների դեմ կատարվող ոտնձգությունների ու այլ կարգի խախտումների պաշտպան, որպես միջոց, որն ակտիվորեն ներգործում է իր իսկ տնտեսական բազիսի, հասարակական կյանքի տնտեսական, քաղաքական և գաղափարական բոլոր կողմերի վրա:

Իր բազմաթիվ աշխատություններում ու ելույթներում Լենինը մշակեց և հիմնավորեց սովետական պետության ֆունկցիաների բնույթը, զարգացման դիալեկտիկան: Ներքին ֆունկցիաներից մեկը դրսևորվում է շահագործողների դասակարգային դիմադրության ճնշման մեջ, որն առանձին դեպքերում զինված ընդհարումների է հասցնում: Պրոլետարիատի կողմից քաղաքական իշխանության նվաճումը չի դադարեցնում նրա դասակարգային պայքարը բուրժուազիայի դեմ, այլ, ընդհակառակը, այդ պայքարը դարձնում է առանձնապես սուր և անողոք:

Լենինը պահանջում էր երկրի պաշտպանության այս գործը կատարել այնպես, որ վճռական մոմենտին պետությունը հանկարծակիի չգա և ջախջախիչ հարված հասցնի հնարավոր ամեն մի ագրեսորի: Այս կապակցությամբ

նա պահանջում էր մշտապես հոգ տանել երկրի պինված ուժերի ամրապնդման, մարտունակության բարձրացման և այդ ուժերը ամենաժամանակակից ռազմական տեխնիկայով հագեցնելու մասին: Նա ասում էր, որ մենք իրավունք նվաճեցինք պաշտպանելու մեր հայրենիքը:

Ուշագրավ է, որ հետագայում Կոմինտերնի VI կոնգրեսը պաշտպանեց Լենինի այս սկզբունքային տեսակետը: Կոնգրեսի բանաձևում ասված է. «Իմպերիալիզմից պաշտպանվելու համար պրոլետարիատին անհրաժեշտ է ուժեղ, կարգապահ, լավ պինված և մարտունակ կարմիր բանակ: Ժամանակակից պայմաններում այդ խնդիրը կարող է կատարել միայն մշտական բանակը» (Шестой конгресс Коминтерна. Стенограф. отчет, вып. 2, М. 1939, стр. 109):

Երկրի պաշտպանունակության ամրապնդումն ամենասերտ կերպով կապված էր հետախուզության և հակահետախուզության գործի կազմակերպման հետ. այստեղից հասկանալի է դառնում նաև այն մեծ աշխատանքը, որ Լենինի նախաձեռնությամբ կատարվեց սովետական հետախուզական օրգանների կազմակերպման բնագավառում:

Դնելով իմպերիալիզմի հնարավոր ոտնձգություններից սոցիալիստական պետության ակտիվ պաշտպանության հարցը, Լենինը միաժամանակ անհրաժեշտ էր համարում հարկ եղած դեպքում քաղաքական, տնտեսական և ռազմական օգնություն ցույց տալ բոլոր այն երկրներին ու ժողովուրդներին, ովքեր փորձում են թոթափել ճնշման ու շահագործման լուծը և իրենց ազատ ու անկախ հայտարարել:

Վ. Ի. Լենինի ծննդյան հարյուրամյակի առթիվ ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկվայի միջազգային խորհրդակցության նյութերում մեծ առաջնորդի այս ցուցումն իր հետագա զարգացումն ստացավ: Հանդես գալով խորհրդակցությունում, ընկ. Լ. Ի. Բրեժնևն ասաց. «Սովետական Միության կոմունիստական կուսակցությունն իր ողջ արտաքին քաղաքականությունն ուղղում է այն նպատակին, որ սոցիալիզմի աշխարհն այսօր ավելի ուժեղ լինի. քան երեկ, վաղը՝ ավելի ուժեղ, քան այսօր: Դա իր կոնկրետ մարմնացումն է գտնում այն ջանքերի մեջ, որոնք մեր պետությունը մյուս սոցիալիստական երկրների հետ ձեռնարկում է քաղաքական, պաշտպանական և տնտեսական համագործակցության հետագա զարգացման նպատակով» («Սովետական Հայաստան», 1969 թ., հունիսի 8, № 131):

Լենինը սովետական պետության ներքին ֆունկցիաների թվին էր դասում կազմակերպական և կուլտուրական-դաստիարակչական աշխատանքի ֆունկցիան: Մշակույթի բնագավառում նա դնում էր իսկական հեղափոխություն կատարելու հարցը, գտնում, որ երկրում դրա համար կան նյութական նախադրյալներ: Ելնելով երկրի ռեալ իրավիճակից, նա կանխագծեց կուլտուրական հեղափոխության պլանը, որը հաջողությամբ իրագործվեց:

Լենինը պետական կառավարումը համարում էր արվեստ, պահանջում գործն այնպես կազմակերպել, որ աշխատավորության լայն զանգվածները ակտիվ մասնակցեն կառավարման պրոցեսին: Նա ժողկոմատներին առաջարկում էր շաբաթական հաշվետվություններում հատկապես նշել բանվորների մասնակցությունը կառավարման, ինչպես նաև աշխատավոր գյուղացիների պրակտիկ օգնությունը սովետական իշխանությանը զանազան կամպանիաներ իրականացնելիս:



Քննադատելով մասնավոր սեփականատիրական ապրելակերպի արատները, Լենինը պահանջում էր ուժեղացնել պայքարը դրանց հետևանքը հանդիսացող օրինախախտումների դեմ: «...հին հասարակության կազմալուծման բոլոր տարրերը, որոնք անխուսափելիորեն շատ բազմաթիվ են, որոնք կապված են առավելապես մանր բուրժուազիայի հետ... չեն կարող «իրենց ցույց չտալ»... Իսկ կազմալուծման տարրերը «իրենց ցույց տալ» *չեն կարող* այլ կերպ, քան հանցագործությունների, խուլիգանության, կաշառքի, սպեկուլյացիայի. ամեն տեսակ այլանդակությունների ավելացումով: Այդ բանը հաղթահարելու համար հարկավոր է ժամանակ և *հարկավոր է երկաթե ձեռք*» (Երկեր, հ. 27, էջ 316—317):

Կատարվող օրինազանցությունների թվում նա մատնանշում էր պետական և հանրային գույքի հափշտակումը, պահանջում հնարավոր բոլոր միջոցների գնով, և առաջին հերթին հասարակական հարստության խստիվ հաշվառմամբ, հսկողությամբ ու պլանային բաշխմամբ, այն խափանել: Չնայած դրան, եթե հափշտակումները այնուամենայնիվ կատարվում են, այդ դեպքում պետք է խստագույն պատիժներ կիրառվեն հանցագործների նկատմամբ:

Լենինը հանրային գույքի հափշտակումների մեջ ամենից առաջ տեսնում էր զանազան արատավոր տարրերի և մանրբուրժուական տարրերի դիմադրությունը սոցիալիստական շինարարությանը. «Մենք ունենք մի անչափ վտանգավոր, ծպտյալ թշնամի, որն ավելի վտանգավոր է, քան բազմաթիվ բացահայտ հակահեղափոխականները: Այդ թշնամին... մանր սեփականատիրոջ տարերքն է, որն ապրում է մի մտայնությամբ՝ «պոկիր ինչ որ կարելի է, իսկ հետո՝ թեկուզ խոտ չբուսնի»: Այս թշնամին ավելի ուժեղ է, քան բոլոր Կոռնիլովները, Դուտովները և Կալեդինները՝ միասին վերցրած» (Երկեր, հ. 27, էջ 276):

Հանգամանորեն լուսաբանելով սովետական պետության ներքին ֆունկցիաները, Լենինը միաժամանակ մշակեց այդ պետության արտաքին ֆունկցիաների տեսությունը: Դեռևս Կ. Մարքսը բանվոր դասակարգին և նրա առաջավոր ավանգարդին կոչ էր անում հասնել այն բանին, որ բարոյականության և ճշմարտության այն պարզ օրենքները, որոնցով իրենց փոխհարաբերություններում պետք է ղեկավարվեն մասնավոր անձինք, դառնան բարձրագույն օրենքներ ժողովուրդների միջև ծագող հարաբերությունները կարգավորելու համար: Նա ասում էր, որ այդպիսի արտաքին քաղաքականության համար մղվող պայքարը պետք է հանդիսանա բանվոր դասակարգի ազատագրական համընդհանուր պայքարի բաղկացուցիչ մասը (տե՛ս К. Маркс и Ф. Энгельс. Соч. т. 16, стр. 11, 373):

Զարգացնելով և պատմական կոնկրետ պայմաններում կիրառելով Մարքսի դրույթը, Լենինը սովետական ամբողջ պետության արտաքին քաղաքականության սկզբունքներից մեկը հռչակեց կապիտալիստական պետությունների հետ խաղաղ գոյակցության սկզբունքը, մի սկզբունք, որը դատապարտում է անարդարացի պատերազմները և այն որակում՝ հանցագործություն:

Սակայն, երբ այդ սկզբունքը կապիտալիստական աշխարհի կողմից չի ընդունվում կամ ոտնահարվում է և առաջանում է պինված ընդհարման վտանգ, այդ դեպքում դրսևորվում ու հանդես է գալիս սովետական պետության մյուս արտաքին ֆունկցիան՝ իմպերիալիստական, ագրեսիվ պատերազմներից երկրի ակտիվ պաշտպանության ֆունկցիան, և քանի դեռ այդ

վտանգը կա, պետության մահացման մասին խոսք լինել չի կարող, ընդհակառակը, այն պետք է հզորացնել:

Պետության մարքսիստական տեսության մեջ չափազանց մեծ նշանակություն ունեցավ պրոլետարիատի դիկտատուրայի *պետական ձևերի* մասին լենինյան տեսությունը:

Դեռևս 1916 թ. «Մարքսիզմի ծաղրանկարի մասին» հայտնի հոդվածում Լենինը գրում էր. «Բոլոր ազգերը կգան դեպի սոցիալիզմ, դա անխուսափելի է, բայց բոլորը կգան ոչ բոլորովին միատեսակ, յուրաքանչյուրը յուրահատկություն կմտցնի դեմոկրատիայի այս կամ այն ձևի մեջ, պրոլետարիատի դիկտատուրայի այս կամ այն տարատեսակության մեջ, հասարակական կյանքի զանազան կողմերի սոցիալիստական վերափոխումների այս կամ այն տեմպի մեջ» (Երկեր, հ. 23, էջ 81): Ավելի ուշ, 1918 թ. լույս տեսած «Պետություն և հեղափոխություն» հռչակավոր գրքում բացահայտելով և մերկացնելով պետության և պրոլետարիատի դիկտատուրայի էության հարցում միջազգային օպորտունիզմի հակագիտական կոնցեպցիաները, Լենինն իր վերոհիշյալ միտքը շարադրեց ավելի ընդհանուր գծերով. «Կապիտալիզմից կոմունիզմին անցնելը, իհարկե, չի կարող չբերել քաղաքական ձևերի ահագին առատություն և բազմազանություն, բայց դրանց բոլորի էությունն անխուսափելիորեն մեկ է. լինելու՝ *պրոլետարիատի դիկտատուրա*» (Երկեր, հ. 25, էջ 533):

Կյանքն ապացուցեց լենինյան այս հանճարեղ տեսության ճշտությունը: Ներկայումս ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրներում հաստատված է պրոլետարիատի քաղաքական տիրապետությունը, նրա դիկտատուրան, բայց այդտեղ դիկտատուրայի դրսևորման ձևերը միանգամայն տարբեր են: Պետական կենտրոնական և տեղական իշխանության ձևերում գործող օրգանները, ղեկավարվելով կոմունիստական և բանվորական կուսակցությունների կողմից, հաջողությամբ լուծում են իրենց պատմական խնդիրները նոր հասարակարգի կառուցման գործում:

Սոցիալիստական պետության մասին լենինյան ուսմունքն իր հետագա զարգացումն ստացավ ՍՄԿԿ XXII և XXIII համագումարների որոշումներում: Այդ ուսմունքը աշխատավոր մարդկությանը օգնում է ճանաչելու հասարակական կյանքի զարգացման օրենքները և հաստատելու ամենաարդարացի հրավակարգ:





# ԼԵՆԻՆՅԱՆ ԳՎԱՐԴԻԱՅԻ ԱՌԱՋԱՄԱՐՏԻԿՆԵՐԸ

**Գ. Մ. ՍԱՐՅԱՆ**

Քաղաքականությունը մի այնպիսի գիտություն և արվեստ է,— կարդում ենք Վ. Ի. Լենինի *«Ձախության» մանկական հիվանդությունը կոմունիզմի մեջ* գրքում,— որը երկնքից վար չի ընկնում, ձրիաբար չի տրվում, և պրոլետարիատը, եթե ուզում է հաղթել բուրժուազիային, պետք է պատրաստի իր պրոլետարական, «դասակարգային քաղաքագետները» և այնպիսիք, որ բուրժուական քաղաքագետներից վատ չլինեն:

«Դասակարգային քաղաքագետների» լենինյան գվարդիային են նվիրված Լենինի բարեկամներին ու զինակիցներին ներկայացնող պատմվածքների ժողովածուները, որոնց չորս հատորը՝ *Կուսակցության ակունքների մոտ, Կուսակցությունը քայլում է դեպի հեղափոխություն, Լենինյան գաղափարների լույսով* և *Մոլորակի լենինյան գվարդիան** արդեն հրապարակի վրա են: Եթե առաջին երեք հատորներում զետեղված պատմվածքները նվիրված են մեր կուսակցության ստեղծմանը, Հոկտեմբերյան մեծ հեղափոխության հաղթանակին և սոցիալիստական կուլտուրային ու նրա գործիչներին, ապա չորրորդում պատկերված են նրա արտասահմանյան զինակիցների ու ժամանակակիցների դիմանկարները. մարքսիզմ-լենինիզմի անմահ գաղափարներով տոգորված, անձնականը մոռացած, նրանք նվիրվել են սոցիալիստական հեղափոխության մեծ գործին, լենինյան գաղափարների վերջնական հաղթանակին: Այս հատորում չկան հատկապես Լենինին նվիրված պատմվածքներ, սակայն Լենինը կա ամեն պատմվածքում: Նա գործում, հանդիպում է աշխարհի շատ երկրների նշանավոր հեղափոխականների հետ, որոնք կյանքի ամենատարբեր ճանապարհներով, ամենատարբեր հանգամանքներում, կրծքերում վառ պահելով լենինյան ուսմունքի ու Լենինի իմաստուն խոսքերի հավերժական հուրը, դիմել են հերոսական սխրանքների՝ հանուն իրենց երկրներում լենինյան գաղափարների հաղթության: Եվ ինչպես բանաստեղծն է ասել.

*Համայն աշխարհում*
*երթն է լայնահուն՝*
*Իլյիչի գործի,*
*մտքի*
*ու խոսքի:*

* Մոլորակի լենինյան գվարդիան, *Ե., «Հայաստան» հրատ., 1968, 704 էջ:*

Այդ պատմվածքներում Վ. Ի. Լենինը հանդես է գալիս որպես սոցիալիստական հեղափոխության, աշխատավորների իմաստուն առաջնորդ և ուսուցիչ, մեծ մտածող ու գիտնական, որն իր ողջ տիտանական գործունեությունը ի սպաս է դրել միայն մի հիմնական նպատակի՝ աշխատավորության ազատագրության, կոմունիզմի կառուցման գործին:

Հոկտեմբերյան հեղափոխությունը, սովետական պետությունը, որոնք լենինիզմի հաղթանակի փայլուն արտահայտությունն են, առինքնում են ամբողջ աշխարհի մեծ հեղափոխականներին: Ամեն անգամ, երբ անհրաժեշտ էր լինում լսել Իլյիչի իմաստուն խորհուրդներն իրենց երկրների հեղափոխական շարժումների վերաբերյալ, մշակել նրա հետ իրենց հեղափոխությունների ճիշտ ստրատեգիան ու տակտիկան, Մոսկվա էին ուղղում նրանք իրենց հայացքը, և երբ հնարավոր էր լինում՝ և քայլերը: Եվ այդ բնական է: Լենինյան ամենազոր ուսմունքը, որի հետ կապված են XX դարի ամենանշանավոր սխրանքները, հեղափոխական մտքի և հեղափոխական գործողության կենարար աղբյուրն է: Եվ դա շնորհիվ այն բանի, որ, ինչպես գրում է Պոլ Վայան Կուտյուրիեն, այդ ուսմունքի ստեղծողը, «որ ցնցեց ամբողջ աշխարհը... մինչև իր գիտակցական կյանքի վերջը իր մեջ պահպանեց զարմանալի ընդունակություն՝ զգալ ու մտածել ինչպես չինական կուլի, ինչպես բեռնակիր նեգր: Ճնշված վիետնամցին, հնդիկը նրան նույնքան հասկանալի էին, որքան լենինգրադցի մանածագործը, որքան փարիզցի տեքստիլագործը, որքան Նոր Վիրգինիայի հանքափորը»: Դրա արդյունքն է հենց այն, որ աշխարհի բոլոր երկրներում հեղափոխական բանվորների լավագույն ներկայացուցիչներն արդեն կանգնել են կոմունիզմի կողմը, հանուն սովետների իշխանության, հանուն պրոլետարիատի դիկտատուրայի: Նրանք ջերմորեն սիրում և անսահման նվիրված էին Իլյիչին: Մարդկային այն իդեալն էր Լենինը, ոգեշնչման այն աղբյուրը, որին տենչում էին նմանվել սովետական ու արտասահմանյան նրա զինակիցները թե՛ անձնական, թե՛ քաղաքական-հասարակական կյանքում:

*Մոլորակի լենինյան գվարդիան* հատորի պատմվածքների հեղինակները սովետական և արտասահմանյան գրողներ են: Մեծ հետաքրքրությամբ կարդացվող այս գիրքը գեղարվեստականից առավել ունի փաստագրական անուրանալի արժանիքներ: Հատորում զետեղված են 26 պատմվածք՝ Վ. Ի. Լենինի արտասահմանյան 26 զինակիցների մասին, որոնք ներկայացնում են արտասահմանյան 14 երկրներ: Հատորում զետեղված պատմվածքներում հիշվում են շատ քիչ անուններ: Մինչդեռ Վ. Ի. Լենինի արտասահմանյան բարեկամների, զինակիցների ու հավատարիմ հետևորդների թիվն այնքան մեծ է, որ նրանց մասին գրելու համար կպահանջվեն մի քանի ստվար հատորներ: Հավանաբար հետագայում կհրատարակվեն պատմվածքների նոր ժողովածուներ, բայց այսօր «Հայաստան» հրատարակչության կողմից այս հատորի լույսընծայման նախաձեռնությունը միանգամայն տեղին է, ողջունելի: Պատմվածքների դիպուկ, բնորոշող վերնագրերը գրավում են անմիջապես:

Ահա ֆիննական հայտնի բանաստեղծ, կոմունիստ Արմաս Էյկիայի *Հյուսիսի կարմիր սոճին* պատմվածքը՝ նվիրված ֆինն նշանավոր հեղափոխական Օտտո Վիլհելմովիչ Կուուսինենին: Նրան իրավամբ անվանում էին XX դարի առաջին կեսի խոշորագույն քաղաքագետ, գիտնական-մարքսիստ, փիլիսոփա և գեղագետ: Վ. Ի. Լենինի հետ ունեցած անմիջական շփումը նրա վրա թողնում է չափազանց խոր տպավորություն և իր կնիքը դնում նրա հետագա ողջ կյանքի վրա: Նրա հիշողություններում իր և ընկերների գաղափարական փոփոխու-



թյուններն ամբողջովին վերագրվում են Լենինի ազդեցությանը: Կուուսինենն ընտրվում է Կոմինտերնի գործկոմի և նախագահության անդամ, դառնում դրա քարտուղարներից մեկը: Նրա անունը Կոմինտերնի պատմության հետ կապված է նույնքան հաստատուն, որքան Գեորգի Դիմիտրովինը, Վիլհելմ Պիկինը, Պալմիրո Տոլյատիինը և ուրիշներինը: Ֆինլանդիայի բուրժուական կարգերի անկոտրում թշնամին անսահման հավատում ու սիրում էր Իլյիչին, խորապես գիտակցելով լենինյան ուսմունքի ճշմարտացիությունն ու ուժը:

«Ամեն ոք, ով հիմնավորապես յուրացնի այդ աշխարհայացքը,— գրել է նա,— ձեռք կբերի ո՛չ միայն բանվորական գործի արդարության, այլև ամբողջ աշխարհում սոցիալիզմի ապագա հաղթանակի պատմական անհրաժեշտության նկատմամբ խոր համոզմունք: Զինվելով մարքսիզմ-լենինիզմի աշխարհայացքով, մարդը, նույնիսկ թույլ մարդը, կդառնա ուժեղ, քաղաքականապես կայուն, սկզբունքային: Նա ձեռք կբերի գաղափարական այնպիսի անսասան համոզվածություն, որը նրան կհաղորդի ամեն մի փորձության դիմանալու ուժ»:

Մեծարժեք են Օտտո Կուուսինենի հիշողությունները Լենինի մասին: Իլյիչի մեջ զուգորդվում էին ջերմ մարդկայնությունը և հեղափոխական կրքի ուժեղ բռնկումը: Նրա հետ խոսելիս ամեն բարդ երևույթ դառնում է պայծառ, օրվա պես հստակ: Լենինի հետ զրուցելուց հետո մարդուն համակում է հաղթանակի հավատը:

«...Եթե որևէ մեկը հարցնի,— շարունակում է Կուուսինենը,— թե մենք՝ ավագ սերնդի մարդիկ, ինչո՞ւմ էին առանձնահատուկ պայծառությամբ զգում Լենինի հանճարեղությունը, ապա կարելի կլիներ պատասխանել այսպես՝ նա մեզ թվում էր *պայծառատես*՝ այս բառի լավագույն իմաստով: Ա. Մ. Գորկու դիպուկ արտահայտությամբ, Լենինն ուներ ներկայից ապագայի բարձունքից նայելու բացառիկ ունակություն»:

Ահա Բորիս Կոստյուկովսկու *Գրանիտի պես ամուր հոգին* պատմվածքը: Վ. Ի. Լենինին հուզում էր բուլղարական հեղափոխության բախտը: Բուլղարական կոմունիստական կուսակցության օրրանի մոտ կանգնած էին այնպիսի նշանավոր հեղափոխականներ, ինչպես՝ Դիմիտր Բլագոևը, Վասիլ Կոլարովը, Գեորգի Դիմիտրովը և ուրիշներ: Գեորգի Դիմիտրովը Բլագոևի համեմատությամբ երիտասարդ հեղափոխական էր, բայց Լենինի անունը նրան վաղուց էր հայտնի: Նա երազում էր տեսնել Իլյիչին: Դիմիտրովը գիտեր, որ ամբողջ աշխարհում չկա ավելի հանրաճանաչ անուն, քան Լենինը... Իտալիայում, Ավստրիայում, ո՛ւր եղել էր նա, այդ անվան շուրջ՝ լեգենդներ էին հյուսվել. մարդկության լավագույն հույսերը սոցիալիստական պետության ստեղծողի հետ էին առնչված: Նրա հիշողության մեջ անջինջ է 1921 թվականի սկիզբը: Իլյիչի առանձնասենյակում մեծ հուզումով զրուցում է նրա հետ: Իր հարցուփորձով, խորհուրդներով զրույցն աննկատելի ու հմտորեն վարում էր Վլադիմիր Իլյիչը: Ապա, դիմելով Դիմիտրովին, նա ասում է, որ պետք է անդուլ գործել կուսակցական կազմակերպություններն ամրապնդելու և կուսակցական գործիչներ պատրաստելու նպատակով:

— Միայն գործով ստուգված, կուսակցությանը նվիրված, պայքարում անվախ, գաղափարապես կոփված պրոֆեսիոնալ հեղափոխականները ձեզ հնարավորություն կտան վստահորեն առաջ նայելու...— ասում է Վլադիմիր Իլյիչը:— Մի՛ մոռացեք նաև բանակի վրա կուսակցության ազդեցության մասին:

Մի՛ կարծեք, որ բանվոր դասակարգն ինքն իրեն կկազմակերպվի, այս գործում ես պետք է ներդնել և՛ ջանք, և՛ համբերություն, և՛ հմտություն... Ապա Իլյիչը ժպտալով եզրակացնում է՝ «Մեր փորձը թանկ գնով է ձեռք բերվել, բայց հենց նրա համար էլ մենք կոմունիստներ ենք, որ իրար հետ կիսենք այն ամենը, ինչ խիստ թանկ է մեզ համար»:

Դա մեծ առաջնորդի իմաստուն ցուցումն էր բուլղարական կոմունիստական կուսակցությանը:

1933 թվականի փետրվարի 27-ին ֆաշիստները կազմակերպեցին Ռայխստագի հրկիզումը՝ կոմունիստների հետ դատաստան տեսնելու համար: Ձերբակալվեց հրդեհի հաջորդ օրը միայն անլեգալ կերպով Բեռլին եկած Գեորգի Դիմիտրովը: Հարցաքննության ժամանակ ձեռքերն ու ոտքերը շղթայակապ, կարճ շղթայով պատին կապված Դիմիտրովի աչքի առաջ Լենինի կերպարն էր, նրա ականջին հնչում էին Իլյիչի խոսքերը, և նա իրեն պահում էր լենինաբար... Գրանիտի պես ամուր հողին՝ ժողովրդին ձուլված բոցաշունչ հեղափոխական-մեղադրյալը դատի ժամանակ դարձել էր մեղադրող, Գյորինգին ու Գեբելսին նետելով մերկացնող այնպիսի պատասխաններ, որ «Գեբելսը ծեծված շան նման հեռանում է դահլիճից»: Նրանց առաջնորդին՝ Հիտլերին Դիմիտրովը հրապարակով հայտարարում է մարդասպանների հովանավոր: Մեղադրյալ, մեղադրող, ապա՝ դատախազ, այսպիսին էր դատվող լենինյանը:

*«Ուրիշներին լուսավորելու համար պետք է իր մեջ կրել արևը»*,— Ռոմեն Ռոլանի այս խոսքերն է իր *Ամբողջ կյանքի պարգևը* պատմվածքի համար բնաբան ընտրել Գեորգի Միրոնովը: Ակնարկը նվիրված է ֆրանսիական կոմունիստական շարժման ականավոր գործիչ Մարսել Կաշենին, որի համար անսահման թանկ էր Լենինի կողմից ընկեր-կամարադ կոչվելը:

«Ոչ բարձրահասակ, ամրակազմ, վրան լավ նստող ամենևին ոչ նոր, սև կոստյումով Լենինը Մարսել Կաշենին թվաց ինչ-որ զարմանալի ներդաշնակ, շատ վաղուց ծանոթ, խիստ հասկանալի ու մոտիկ մի մարդ»:

«Յումանիտե» թերթի հրատարակիչը՝ Մարսել Կաշենը՝ Ֆրանսիայի այդ հռչակավոր կոմունիստը, հանկարծակիի եկավ Կոմինտերնի գործկոմի նիստում, երբ Ֆրանսիայում դասակարգային, միաձույլ կոմունիստական կուսակցություն կոփելու առաջարկից հետո, Լենինը սուր քննադատեց «Յումանիտե»-ն, որը նա այնքան սիրում և միշտ բավականությամբ կարդում էր: Լենինը խոսում էր այն իրարամերժ, հաճախ միմյանց բացասող նյութերի մասին, որ տպագրվում էին «Յումանիտե»-ի նույնիսկ միևնույն համարում: «Սրանից հետո,— ասում է նա,— էլ ինչպե՞ս եք դուք ցանկանում, որ բանվորներն իրենց թերթից իմանան ճշմարտությունը: Պահպանեցեք թերթը օպորտունիստներից. նրանց «Յումա»-ին մոտ մի թողեք»:

Լենինը մի վայրկյան լռում է և, տեսնելով, թե ինչպես է տխրում Կաշենը, քաջալերանքով ասում.

— Դե՛, դե՛, գլուխդ բարձր, ընկե՛ր Կաշեն: Ձեր հետևից է գնում ֆրանսիական պրոլետարիատը, որը հիացմունք է առաջացնում իր պատմությամբ, իր պայքարով: Դուք՝ ֆրանսիացիներդ, պետք է լավ հասկանաք մեր տակտիկան, որը նույնպես նախապատրաստված է և ձեր ժողովրդի հեղափոխությունների փորձով: Թող ձեզ չվախեցնեն ռենեգատների և օպորտունիստների դեմ մղվելիք առաջիկա պայքարի դժվարությունները: Մեզ համար ևս հեշտ չէ, բայց պայքարում ենք և կհաղթանակենք:

Կաշենի համար կոմունիզմի ուսուցման լավ դպրոց է դառնում սովետա-



կան հանրապետություն այցելելը: Անձնական ծանոթությունը Լենինի հետ, ուղևորությունը սովետական երկրում, Կոմինտերնի կոնգրեսի աշխատանքին մասնակցելը, շփումը նոր հասարակություն կառուցողների հետ՝ այս ամենը ֆրանսիական սոցիալիստին դարձնում է հաստատուն ու հետևողական կոմունիստ-լենինյան, սովետների երկրի բարեկամ, որպիսին նա մնաց մինչև իր երկարատև կյանքի վերջը:

Անչափ հետաքրքրական է Լյուբով Ժակի *Մարտական շոտլանդացին* պատմվածքում պատկերված անգլիական պրոլետարիատի ղեկավարներից մեկի՝ Ուիլյամ Գալլախերի կյանքի ուղին: Սկզբում լեյբորիստ էր նա, տրեդյունիոնի ակտիվ աշխատող: Հուսախաբվելով լեյբորիստական կուսակցությունից՝ նա հարում է բանվորական ավագների շարժմանը: Կոմինտերնի II կոնգրեսի նիստերի օրերը Ուիլյամ Գալլախերի համար դառնում են ծանր փորձությունների, ուրախալի ապրումների պահեր: Գալլախերին գրավում էր Վլադիմիր Իլյիչի խոսքի տրամաբանության ուժը, նրա սրամտությունը, մարտիկի եռանդը, ընկերների նկատմամբ ցուցաբերած բացառիկ ուշադրությունը: «Ինչպիսի՜ երջանկություն է լինել այս մարդու կողքին, աշխատել նրա հետ»,— մտածում էր նա:

Լենինը սուր քննադատեց Գալլախերի գաղափարական այն սխալ տեսակետը, թե III Ինտերնացիոնալը պետք է որոնի մասսաների մեջ ապստամբության ոգին արթնացնելու ուղիներ ու միջոցներ և ոչ թե մտածի պառլամենտական ընտրություններին մասնակցելու մասին: Գալլախերը բերում է իր «համոզիչ» օրինակը, պատմելով մի դեպուտատի մասին, որը նախընտրական ժողովներում ներկայանալով իբրև բոլշևիկ, դավաճանում է բոլշևիզմին, երբ ընտրվում է պառլամենտում:

Հենց այստեղ էլ Իլյիչը որոշում է ուղղել Գալլախերին: Կրեմլյան իր բնակարանում Գալլախերի հետ ունեցած տեսակցության ժամանակ Լենինը դիմում է նրան.

— Դուք ասում եք, թե անգլիական պառլամենտ ընկնող ամեն մարդ այլասերվում է: Ընկե՛ր Գալլախեր, եթե բանվորները որպես իրենց ներկայացուցիչ ձեզ ուղարկեն պառլամենտ, դուք նույնպե՞ս կայլասերվեք:

Հարցը Ուիլյամի համար անսպասելի էր: Նա նույնիսկ ընկրկեց և դժվարությամբ ասաց.

— Ձեր հարվածը տեղին չէ:

— Դա խիստ կարևոր հարց է,— պնդում էր Լենինը:— Եվ ես շատ կուզեի, որ դուք պատասխանեիք այդ հարցին:

Ուիլյամը մի րոպե լռեց: Ապա հանգիստ, բայց համոզված պատասխանեց.

— Ո՛չ, ես համոզված եմ, որ բուրժուազիային երբեք չի հաջողվի մոլորեցնել ինձ:

Եվ զրույցի վերջում, գրկելով Ուիլյամի ուսերը և ողողելով նրան իր պայծառ ժպիտով, Իլյիչն ասաց.

— Ընկեր Գալլախեր, հասեք այն բանին, որպեսզի ձեզ ընտրեն անգլիական պառլամենտում, և բանվորներին ցույց տվեք, թե հեղափոխությունն ինչպես է կարողանում այն օգտագործել:

Լենինն արդեն նրա մեջ տեսնում էր իր համախոհին, նշում մարտական շոտլանդացու գործողությունների ծրագիրը:

— Դուք պետք է,— հրաժեշտ տալիս ասաց Լենինը իր սխալ գաղափա-

րից հրաժարված Ուիլյամին,— աշխատեք Անգլիայում հենց նոր ստեղծված կուսակցության մեջ: Մտեք կուսակցության մեջ: Պայքարեցե՛ք հանուն Կոմինտերնի գծի և այդ դեպքում Կոմունիստական ինտերնացիոնալն իր հեղինակությամբ կպաշտպանի ձեզ:

«Մենք պատմում ենք իր մանրուքներով վերականգնված պատմությունը մի մարդու,— որին իր լավագույն վեպում երազում էր պատկերել նրա հայրենակից գրող Թեոդոր Դրայզերը»,— այսպես են սկսել Սերգեյ Բոլդիրևը և Ալեքսեյ Գրեչուխինը, Ուիլյամ Ֆոստերին նվիրված իրենց *Վերջին, բայց չավարտված մենամարտը* պատմվածքը:

Ուիլյամ Զ. Ֆոստերը Ամերիկայի Միացյալ Նահանգների կոմունիստական կուսակցության պատվավոր նախագահն էր, երբ ծանր հիվանդացավ: Սիրտը հրաժարվում էր ծառայել 80-ամյա գործչին: 1961 թվականի հունվարին Նյու-Յորքից նրան փոխադրեցին Մոսկվա: Կրեմլյան հիվանդանոցի նրա հիվանդասենյակը վեր էր ածվել աշխատասենյակի: Վեց պատմական հետազոտությունների հեղինակը, որ կուլտուրայի բարձունքներին էր հասել ինքնակրթությամբ, շարունակում էր աշխատել: Սխրագործություն է եղել նրա ողջ կյանքը. կուսակցական գործունեության տասնյակ տարիներում հաղթահարել է մեծ դժվարություններ, անցել փորձությունների բովով: Եվ ահա, անկողնում պառկած, ամեն անգամ լսելով Կրեմլյան աշտարակի զանգերի ղողանջը, ողջ անցածը նրան հեքիաթ էր թվում: Նա հիշում էր Լենինին, որին տեսել ու լսել էր մի անգամ, քառասուն տարի առաջ՝ 1921 թ. փետրվարին: Արհմիութենական լուսավորության լիգայի Չիկագոյի խմբի կողմից հրավեր ստանալով, արհմիութենական շարժման մի քանի առաջնորդների հետ նա մեկնում է Մոսկվա՝ մասնակցելու Պրոֆինտերնի կոնգրեսին: Մասնակցում է նաև Կոմինտերնի III կոնգրեսին: Այստեղ նա տեսնում, լսում է Լենինին և զարմանում, որ նա ոչ մի բանով չի հիշեցնում Ամերիկայի հռետորներին: Իլյիչին լսելուց հետո ռուսական հեղափոխությունը նրա համար դառնում է ավելի հասկանալի, մոտ ու հարազատ:

Մոսկվայում նա մնում է երեք ամիս և այդ ամիսներին սկսում ուսումնասիրել Լենինի աշխատությունները, մարքսիստական այլ գրքեր: Երբ հայրենիք է վերադառնում, նույն 1921 թվականի կեսերին ընդունվում է Ամերիկայի կոմունիստական կուսակցության շարքերը և դառնում կուսակցության Կենտկոմի անդամ:

— Ես շնորհակալ եմ Լենինից այն բանի համար,— ասում է Ֆոստերն իր ընկերներին,— որ ավելի քան քսան տարվա որոնումներից հետո նա ինձ կանգնեցրեց ամուր հեղափոխական հիմքի վրա:

Դժվարին, կամքի և ուժի, նյարդերի ու մտքի մեծ լարում պահանջող մարտեր է մղել Ֆոստերն իր գաղափարական հակառակորդների դեմ և երբեք չի ընկրկել, ընկճվել, իր թիկունքում ունենալով Ամերիկայի բանվոր դասակարգը: «Բայց ամենածանր փորձությունները Ֆոստերին բաժին էին ընկնում այն ժամանակ, երբ նա ստիպված էր անհաշտ լինել իր համախոհների հետ»: Ամենևին մենակ չմնալու արվեստը սովորեցնող կոմունիստն Ազգային կոմիտեում գրեթե միայնակ մնալու գնով անզիջում պայքարեց կուսակցության երկու գլխավոր քարտուղարների դեմ՝ Լովստոնի, որը հետագայում դավաճանեց բանվոր դասակարգին և էռլ Բրաուդերի դեմ, վերջինս կուսակցությունը տանում էր դեպի ցրում և մի քանի տարի անց արդեն նրա թշնամիների շարքում էր:



կյանքի փորձը, համառ ու սկզբունքային պայքարի դասերն են նրան հանգեցրել այն եզրակացության, որը հայտնել է նա դեռևս 1945 թվականին: «Մենք երբեք չպետք է թույլ տանք, որ մեր կուսակցության շարքերում կրկին ստեղծվի մեկ մարդու արտակարգ իշխանություն, որը գրեթե հավասարազոր է դիկտատուրայի...»:

Իրականացավ կաթվածահար, զառամյալ ծերունու ամենացանկալի բաղձանքը— հանդիպումը նոր աշխարհի ամենանոր, աստղերի մոտով երկրագնդի շուրջը պտտված առաջին մարդու հետ. նրան մտահոգում էր այն, թե կհասկանա՞ արդյոք չափազանց երիտասարդ, մաքուր ու լուսե ժպիտով այդ մարդը իրեն՝ տարբեր ժամանակների ու հանգամանքների, տարբեր պայմանների մարդուն.

— Իմ թռիչքը հնարավոր դարձավ միայն այն պատճառով, որ ձեր սերնդի հեղափոխականները Լենինի հետ միասին ապրել և աշխատել են մեզ բոլորիս համար...

Յուրի Գագարինի այս խոսքերը ցրեցին նրա կասկածը: Նա հասկացել էր ծերունու միտքը և գոհ էր, որ իր թռիչքով օգնել է նրան և նրա նմաններին՝ աշխարհի տարբեր ծայրերում պաշտպանելու իրենց համոզմունքները:

Ամեն երկրի բանվոր դասակարգի, աշխատավորների թշնամիները սեփական երկրի կապիտալիստներն են, շահագործողները, հանուն իրենց շահի պատերազմ նյութողները: Հաղթահարելով լարափակոցներն ու հրետանային պատնեշները, խրամատները, գետերն ու ծովերը, լենինյան գաղափարները հասնում էին երկրագնդի տարբեր ծայրերը, զինվորագրում նորանոր աննկուն մարտիկներ, ստեղծում տարբեր երկրների պրոլետարների անձնուրաց, մահ ու արյուն տեսած առաջնորդներ: Այդպիսիներից էր Սովետական Միության ջերմ բարեկամ, գերմանական պրոլետարիատի մեծ առաջնորդ, ամուր բռունցքով և պայծառ մտքով իսկական բանվորը՝ Էռնստ Թելմանը: Նրան է նվիրել Եվգենի Ռյաբչիկովը իր *Հաղթանակի խորհրդանիշը* պատմվածքը:

...Բանվորական Համբուրգում է ծնվել Թելմանը, այստեղ է նա անցել կյանքի համալսարանները, կոփվել հեղափոխական պայքարում, դարձել գերմանական պրոլետարիատի աննկուն առաջնորդը: Այդպիսին էր նա և ռազմաճակատում, պատերազմի ժամանակ, որի դեմ նա կրքոտ պայքարում էր: Հենց այդ տարիներին Թելմանը ձգտում էր շատ բան իմանալ Լենինի մասին: Նրա հստակ միտքը, սկզբունքայնությունն էին գրավում Թելմանին:

Առաջին անգամ նա Լենինին հանդիպում է Մոսկվայում՝ Կոմինտերնի III կոնգրեսում, որի պատգամավորներից մեկն էր ինքը: Լենինը խոսում էր ռուսերեն, գերմաներեն, ֆրանսերեն, պատգամավորներին ապշեցնելով իր հետաքրքրասիրությունների լայն շրջանակներով, էրուդիցիայով, արտակարգ հիշողությամբ:

Կոմինտերնի կոնգրեսի ընդունած որոշումները Թելմանի համար դառնում են կուսակցական կյանքի ու պայքարի ուղենիշ: Իր գործունեության ընթացքում, տեսական ելույթներում նա հետևում էր Լենինին, աշխատում պատկերացնել, թե Լենինն ինչպես կլուծեր այս կամ այն բարդ, բոլորովին նոր խնդիրը: Իլյիչի հետ ունեցած կարճատև, բայց անմոռաց հանդիպումների, մտերիմ, բովանդակալից զրույցների հուշերը կյանքի վերջին տարիներին իսկ լուսավորում էին ապրելու, գործելու կամքով, ուժով ու տենչով լցուն Թելմանի բանտախուցը: Բանտախուց, որին, ինչպես Ռոմեն Ռոլանն է ասել նրա 50-ամյակը շնորհավորող ողջույնում, ուղղված էին ամբողջ աշխարհի ջանա-

սեր մարդկանց ու բանվորների հայացքները։ Լենինը, Հոկտեմբերը, հերոսական սովետական բանվոր դասակարգը միշտ էլ փարոս են եղել Թելմանի համար։ Նա խիզախ ու համարձակ անարգանքի սյունին էր գամում հիտլերյան ֆաշիզմը, և դարձավ ֆաշիստական տեռորի առաջին զոհերից մեկը։ Միջնադարյան ահավոր խոշտանգումներով ֆաշիստները հույս ունեին կոտրել նրա կամքը. Թելմանը ցուցաբերեց հոգու գերագույն ուժ։ Ոչ մի բան չկարողացավ սասանել նրա հաստատ հավատը հիտլերյան Գերմանիայի անխուսափելի կործանման, սոցիալիզմի հաղթանակի նկատմամբ։ Նրա անվեհերության կենսատու ուժը լենինիզմն էր։

Թելմանին սպանեցին 1944 թվականի օգոստոսի 16-ին։ Թելմանը չկա, բայց կա նրա հաղթանակող գործը, կա նոր Գեմանիան, Գերմանական Դեմոկրատական Հանրապետությունը։

Այսպես կարելի է խոսել մյուս 20 պատմվածքների մասին, որոնք նվիրված են Հոկտեմբերի պոետ ու տարեգիր Ջոն Ռիդին, հունգարական կոմունայի կոմիսար Սամուել Թիբորին, հիանալի, նվիրված հեղափոխական Բելա Կունին, Պոլ Վայան Կուտյուրիեին, պրեզիդենտ դարձած քարտաշ Անտոնին Զապոտոցկուն, բանվորուհի էլիզաբեթ Գերլի Ֆլինին, Կլարա Ցետկինին, Մորիս Թորեզին, Պալմիրո Տոլյատիին և այլոց։ Ազնիվ մարդկանց այս ստվար բանակի զինվորներն են սրանք, որոնք առանց հատուկ շնորհակալությունների ու մեծարանքի ակնկալության կատարել են իրենց մարդկային պարտքը, ծառայելով սեփական համոզմունքներին։ Նրանք վստահ էին, որ գալու է բոլոր շահագործողների վերջը... «Բոլոր գայլերն ի վերջո հանդիպում են մորթեղենի խանութում», ասում էր Անտոնիո Գրամշին և կոչ անում պրոլետարիատին՝ միավորվել, զորեղանալ, իր ուժը գիտակցել, թե չէ «Երբ խոտ դառնաս, նույնիսկ այծերը քեզ կուտեն»։

Այս պատմվածքների մեջ թևածում են Իլյիչի ուսմունքը, աշխատավոր մարդուն ամեն ճնշումից ազատագրելու մտահոգությամբ լի նրա խոհերն ու հայացքները։ Այդ պատմվածքների հեղինակներն արտահայտել են իրենց սերը լենինյան գվարդիայի զինվորների, նրանց ղեկավարի հանդեպ, որին հանդիպելը, որի հետ հաղորդակցվելը «...թողնում էր հեղձուցիչ սենյակ ներխուժած մրրիկի տպավորություն. այն թարմացնում էր նախապաշարումներով ու ձևական դոկտրինաներով ծանրաբեռնված ուղեղը»։

Պատմվածքներում Լենինը ո՛չ միայն աշխատավորների մեծ առաջնորդ է, հանճարեղ տեսաբան, այլև իր զինակիցների անձնվեր բարեկամը, խորհրդատուն՝ անչափ ուշադիր ու հոգատար նրանց նկատմամբ։ Արտացոլված են նաև Լենինի բնավորության, սովորույթների այնպիսի հետաքրքրական մանրամասներ, որոնք առաջնորդի կերպարին տալիս են նոր, թարմ գույներ՝ ավելի կենդանացնելով ու ամբողջացնելով այն։

Անկեղծ ներշնչանքով ու սիրով գրված այս պատմվածքները կարդացվում են մեծ հետաքրքրությամբ ու հաճույքով, մի անգամ ևս ընթերցողին համակում լենինյան գաղափարների անպարտելիության հավատով, այդ գաղափարներին զինվորագրվածների նկատմամբ ջերմ համակրանքով։ Այս մեծարժեք գործը ունի դաստիարակչական խոշոր նշանակություն։ Համաշխարհային պատմական զարգացման վրա լենինյան գաղափարների խոր ազդեցությունն արտացոլող այս գիրքը կնպաստի Լենինի նվիրական ձգտման իրականացմանը — ամբողջ հողագնդի հեղափոխական բոլոր ուժերի միավորմանը, պրոլետարական ինտերնացիոնալիզմի ամրապնդմանը։

## ՀՈԴՎԱԾՆԵՐ

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՆՈՐ ՓՈՒԼԸ

Ս. Կ. ՊԱՊՅԱՆ

ՊԱՏՄԱԿԱՆ ԻՐԱԴԱՐՁՈՒԹՅՈՒՆ։ ՍՄԿԿ ՓՈՐՁԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ։ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՈՒԽԵՐԻՄ ԹՇՆԱՄԻՆ։ ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԳԼԽԱՎՈՐ ՀԱՐՑԸ։ ԿԱՅՈՒՆ ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆԸ ՈՒՏՈՊԻԱ ՉԷ։ ՆՈՐ ՔԱՅԼ ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԵՋ։ ՎՃՌԱԿԱՆ ԳՈՐԾՈՆԸ։ ՊԵԿԻՆԻ ՊԱՌԱԿՏԻՉ ՔԱՅԼԵՐԸ։ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԸ ԼԱՎԱՏԵՍՆԵՐ ԵՆ։

Բովանդակ մարդկությունը, նրա հեղափոխական ավանգարդ՝ կոմունիստները մեծ խանդավառությամբ քննարկում են կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկվայի միջազգային խորհրդակցության փաստաթղթերը։ Այդ կապակցությամբ եղբայրական կուսակցություններում ամենուրեք տեղի ունեցան կենտրոնական կոմիտեների պլենումներ, կուսակցական ակտիվի ժողովներ։

Հունիսի 26-ին կայացած ՍՄԿԿ Կենտկոմի պլենումը, լսելով և քննարկելով ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևի զեկուցումը՝ «Կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցության արդյունքների մասին», ամբողջությամբ ու լիովին հավանություն տվեց ՍՄԿԿ Կենտկոմի քաղբյուրոյի քաղաքական գծին ու պրակտիկ գործունեությանը՝ ուղղված համաշխարհային կոմունիստական շարժման համախմբվածության ամրապնդմանը, խորհրդակցությունում ՍՄԿԿ պատվիրակության աշխատանքին։ Պլենումը նշեց, որ «Կոմունիստական և բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունը հանդիսացավ կոմունիստական, բանվորական ու ամբողջ ազատագրական շարժման մեծ հաջողությունը։ Խորհրդակցությունը հսկայական ազդեցություն կգործի խաղաղու-

թյան, բոլոր դեմոկրատական, առաջադեմ ուժերի գործողությունների ամենալայն միասնության ամրապնդման, իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի հետագա ծավալման վրա։ Խորհրդակցությունը նշանավորեց կարևոր էտապ մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքով միջազգային կոմունիստական շարժման համախմբվածության ամրապնդման ճանապարհին»։

Ինչպես նշվեց համաժողովի եզրափակիչ կոմյունիկեում, «Խորհրդակցության մասնակիցները պատրաստակամություն հայտնեցին ավելի զարգացնելու կապերը կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջև։ Նրանք նպատակահարմար համարեցին, որ տեղի ունենան երկկողմ և ռեգիոնալ հանդիպումներ, ըստ անհրաժեշտության հրավիրվեն կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցություններ, որտեղ կատարվի կարծիքների ու փորձի փոխանակում, կոլեկտիվ կերպով քննարկվեն ու մշակվեն հրատապ քաղաքական ու տեսական հարցերը, իմպերիալիզմի դեմ, խաղաղության, ազգային անկախության, դեմոկրատիայի ու սոցիալիզմի գործի հաղթանակի համար մղվող պայքարի պրոբլեմները»։

Իմպերիալիստական ռեակցիան վախենալով կոմունիստներից, նրանց միասնությունից ու համախմբվածությունից, որոշ երկրներում խորհրդակցության նախօրեին նույնիսկ հատուկ օրենքներ ընդունեց պատժելու կոմունիստների միջազգային համաժողովի աշխատանքի մասնակիցներին։ Զո՞ւր ջանքեր։

Մի՞թե ռեպրեսիաները, ոստիկանական և խուզարկու գործողությունները կամ հեռավոր տարածությունները կարող էին խանգարել կոմունիստական շարժման մարտական ներկայացուցիչներին գալու Մոսկվա՝ հանդիպելու միմյանց հետ ու քննարկելու բոլորին հուզող պրոբլեմները։ Դժվար է գերագնահատել այդ կարևոր իրադարձության միջազգային նշանակությունը, որը հետագայում կարող է օրինակ ծառայել փոխադարձ հանդիպումների կազմակերպման գործում։

Խորհրդակցության աշխատանքի ոգեշնչող հիմնական սկզբունքը պրոլետարական ինտերնացիոնալիզմն էր, արդի էտապում իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի ուժերի համախմբումը։ Այն փայլուն կերպով արտահայտվեց ՍՄԿԿ պատվիրակության ղեկավարի ելույթի ժամանակ։ ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի գլխավոր քարտուղարի ելույթում տրված է արդի միջազգային դրության մարքս-լենինյան խոր վերլուծությունը, ընդհանրացված սոցիալիզմի և կոմունիզմի համար մեր կուսակցության ու ժողովրդի պայքարի փորձը, ցուցադրված է նրանց ավանդը հակաիմպերիալիստական պայքարի ընդհանուր գործում, շարադրված ՍՄԿԿ տեսակետը կոմունիստական շարժման պրոբլեմների նկատմամբ։ Այստեղ հանգամանորեն քննված են ժամանակակից իմպերիալիզմի բնույթը, առավել զարգացած կապիտալիստական երկրներում, այսպես կոչված՝ ռազմա-արդյունաբերական կոմպլեքսի՝ խոշորագույն մոնոպոլիստների և պետական ապարատի ու զինվորականության դաշինքի ազդեցության մեծացումը։ Մեր օրերում այդ չարագուշակ դաշինքն ավելի ու ավելի մեծ ազդեցություն է գործում ԱՄՆ-ի, Արևմտյան Գերմանիայի, Անգլիայի, Ճապոնիայի և իմպերիալիստական այլ պետությունների պաշտոնական քաղաքականության վրա։ Այնտեղ, ուր շահագործողներն ի վիճակի չեն իրենց համար անհրաժեշտ «կարգ» ապահովել բուրժուական դեմոկրատիայի շրջանակներում, իշխանությունը հանձնվում է ֆաշիստական տիպի բացահայտ տեռորիստական վարչակարգերի ձեռքը։ Իսպանիայում, Պորտուգալիայում, Հունաստանում,



Թաիլանդում, Հարավ-Աֆրիկյան հանրապետությունում, Հարավային Ռոդեզիայում, Ինդոնեզիայում, Հարավային Կորեայում, Հարավային Վիետնամում, Պարագվայում և Լատինական Ամերիկայի այլ երկրներում ստեղծված վարչակարգերը վայելում են իմպերիալիստական տերությունների կառավարող շրջանների և խոշորագույն մոնոպոլիստների ֆինանսական ու քաղաքական աջակցությունը։

Իմպերիալիզմը, առաջին հերթին՝ ամերիկյանը, այսօր մեծագույն սպառնալիք է նաև նախկին գաղութների ժողովուրդների ազատության և անկախության համար։ Այժմ, իմպերիալիզմի գաղութային սիստեմի կրած ծանր պարտություններից հետո, միջազգային ռեակցիայի գործողությունների հիմնական նպատակակետն է՝ թույլ և պակաս զարգացած երկրների բնական հարստությունների կողոպուտը և դրանց բնակչության անխիղճ շահագործումը, թեև իմպերիալիստները այժմ հարկադրված են գործել առավել խորամանկ, կողոպտել ավելի քողարկված։

Սակայն ամբողջ աշխարհի ժողովուրդներին իմպերիալիզմի բերած ամենամեծ վտանգը համաշխարհային նոր պատերազմի սպառնալիքն է։ Միլիտարիզմը եղել և մնում է իմպերիալիզմի անկապտելի գիծը։ Մեր դարի առաջին կեսում կատարված համաշխարհային երկու պատերազմները խլեցին ավելի քան 70 միլիոն մարդկային կյանք, երկրի երեսից ջնջեցին հազարավոր ծաղկուն քաղաքներ ու գյուղեր։

Իմպերիալիզմի հանցանքով է, որ բազմամիլիոն մարդկանց աշխատանքը, մարդկային բանականության, գիտնականների, հետազոտողների, ինժեներների տաղանդի փայլուն նվաճումներն ի սպաս են դրվում ո՛չ թե մարդկության կյանքի առաջադիմության և վերափոխման գործին, այլ օգտագործվում են բարբարոսաբար, ռեակցիոն, պատերազմի նպատակով, որը մեծագույն աղետ է ժողովուրդների համար։ Վերջին հինգ տարվա ընթացքում (1964—1968 թթ.) միայն ԱՄՆ-ի ռազմական ծախսերը կազմեցին գրեթե 350 մլրդ դոլար, այսինքն՝ 20 տոկոսով ավելի, քան երկրորդ համաշխարհային պատերազմի բոլոր տարիներին։

«Վերջին տասնամյակների իրադարձությունները,— նշվում է խորհրդակցությունում ընդունված Հիմնական փաստաթղթում,— ավելի մեծ ուժով մերկացրին ամերիկյան իմպերիալիզմի, որպես համաշխարհային շահագործողի և ժանդարմի, ազատագրական շարժումների անհաշտ թշնամու կերպարանքը»։ ԱՄՆ-ի իմպերիալիստական ագրեսիվ քաղաքականությունը, որ կիրառվում է նաև Անգլիայի, Արևմտյան Գերմանիայի և մի շարք այլ կապիտալիստական երկրների կառավարող շրջանների աջակցությամբ, նրա նախորդ ուղու անմիջական շարունակությունն է։

Սպառազինությունների մրցավազքը ամենաեկամտաբեր բիզնեսն է ամերիկյան մոնոպոլիստների համար։ 85 մլրդ դոլար ուղղակի ռազմական ծախսերից տարեկան մոտ 45 մլրդ հատկացվում է ռազմական պատվերներին։ Ժամանակակից զենքի արժեքի խիստ աճը արմատապես փոխել է ռազմական արտադրությամբ զբաղված մոնոպոլիստների գործունեության մասշտաբները։

Ոչ լրիվ տվյալների համաձայն, անցյալ ֆինանսական տարում, որն ավարտվեց 1969 թ. հունիսի 30-ին, հրթիռային սիստեմների արտադրության տերերը Պենտագոնից ստացան գրեթե 5 մլրդ, ավիացիոն գործարանների տերերը՝ 4,8 մլրդ դոլարի պատվեր։ Էլեկտրոնային և կապի միջոցների արտադրությամբ զբաղված ընկերությունները ստացան 3, նավաշինարարական ըն-

կերությունները՝ ավելի քան մեկ մլրդ դոլարի պատվեր։ Հրթիռային բազաների շինարարության փորձարկումների համար հատուկ պոլիգոնների, լաբորատորիաների, հեռավոր տարածության վրա գործող ռացիոնալ հրթիռներ կառուցելու համար կոնտրակտները կազմում են 1,5 մլրդ դոլար։ Ռազմական այլ կարիքների՝ ինժեներների վարձատրությունից սկսած և վիճակագրական հետազոտություններով վերջացրած՝ կոնտրակտները բիզնեսմեններին բերին ևս 3,3 մլրդ դոլար։

ԱՄՆ-ի արտասահմանում գտնվող զինված ուժերը կազմում են ավելի քան մեկ և կես միլիոն մարդ։ Այդ թվից մոտավորապես 600 հազարը գտնվում են Հեռավոր Արևելքում, որից 550 հազարը՝ Հարավային Վիետնամում, 40 հազարը՝ Խաղաղ օվկիանոսի կղզիներում, 30 հազարը՝ Կարիբյան ծովի շրջանում և մոտ 400 հազարը՝ Արևմտյան Եվրոպայի երկրներում ու Միջերկրական ծովի ավազանում։

Միայն վաթսունական թվականներին ԱՄՆ-ը և մյուս իմպերիալիստական պետությունները զինված հարձակումներ գործեցին Վիետնամի, Կուբայի, Պանամայի, Դոմինիկյան Հանրապետության, արաբական երկրների և ուրիշ խաղաղասեր պետությունների վրա։

Արկածախնդրական քաղաքականությունը, մասսայական բնաջնջման զենքի պաշարների կուտակման փաստի զուգորդությամբ, արդի իմպերիալիզմը դարձնում է մշտական սպառնալիք համայն աշխարհի խաղաղության համար։

Մեծագույն սխալ կլիներ թերագնահատել իմպերիալիզմի, առաջին հերթին՝ համաշխարհային ռեակցիայի գլխավոր ուժի՝ ԱՄՆ-ի իմպերիալիզմի, ստեղծած ռազմական վտանգը։ Կոմունիստները հեղափոխական մյուս ուժերի հետ միասին ձգտում են հասնել այն բանին, որ միլիոնավոր մարդիկ հասկանան, թե ժողովուրդներին ինչ են բերում համաշխարհային պատերազմի սանձազերծման իմպերիալիստական քաղաքականությունը, ագրեսիվ բլոկների գոյությունը, ստեղծված պետական սահմանները վերանայելու կուրսը, սոցիալիզմի երկրների և ազգային երիտասարդ պետությունների առաջադիմական վարչակարգերի դեմ ծավալված քայքայիչ գործունեությունը։ Բոլոր կոմունիստների խնդիրն է՝ հասնել այն բանին, որ ժողովուրդները ո՛չ միայն ըմբռնեն այդ քաղաքականության ամբողջ վտանգը, այլև բազմապատկեն իրենց ջանքերը իմպերիալիզմի ագրեսիվ դիտավորությունները ձախողելու համար մղվող պայքարում։

Ներկա պայմաններում, երբ միջուկային ռումբերը կարող են հաշված րոպեների ընթացքում հասնել ուզած մայրցամաքին և ամայացնել վիթխարի տերիտորիաներ, համաշխարհային կոնֆլիկտը կնշանակեր հարյուր միլիոնավոր մարդկանց կործանում, համաշխարհային քաղաքակրթության և մշակույթի գանձերի մոխրացում։ Պատերազմները, ագրեսիայի և բռնության ակտերը, ժողովուրդների ազատության նկատմամբ ոտնձգությունները, այս ամենը բխում են իմպերիալիզմի քաղաքականությունից։ Այդ իմպերիալիզմն է, և, առաջին հերթին՝ ամերիկյան իմպերիալիզմը, որ արագացնում է սպառազինությունների մրցավազքը, ուժեղացնում միջազգային լարվածությունը, երկրագնդի տարբեր անկյուններում կոնֆլիկտներ ու տեղական պատերազմներ հրահրում։ Ժողովուրդների մոլի թշնամի ամերիկյան իմպերիալիզմն ամեն կերպ ձգտում է ճնշել ազգային-ազատագրական շարժումները, կազմակերպում է ռեակցիոն հեղաշրջումներ, պարտադրում և պաշտպանում հակաժողովրդական վարչակարգերը։ Ավելի քան հինգ տարվա ընթացքում նա Վիետ-



նամում ագրեսիվ պատերազմ է մղում կիրառելով ամենաբարբարոսական միջոցներ։ Արաբական ժողովուրդների դեմ իսրայելական ագրեսիայի հետևանքով Մերձավոր Արևելքում և Միջերկրական ծովի շրջանում պահպանվում է լարվածության վտանգավոր օջախը, որն ամեն րոպե կարող է համընդհանուր պատերազմի հրդեհ առաջացնել։

Եվրոպայի կենտրոնում ուժեղանում է արևմտա-գերմանական ռազմատենչ իմպերիալիզմը, գլուխ բարձրացնում նեոնացիզմը։ Հենվելով ՆԱՏՕ-ի ագրեսիվ բլոկի վրա և գործելով ամերիկյան իմպերիալիզմի հետ դաշնակցած, Բոննի կառավարող շրջանները, որոնք անհրաժեշտ դասեր չեն քաղել հիտլերյան Գերմանիայի ջախջախումից, վարում են ռևանշի քաղաքականություն, ձգտում են միջուկային զենքի, սպառնում Եվրոպայի բոլոր ժողովուրդների անվտանգությանը։

Կոմունիստները հայտարարում են, որ եվրոպական պետությունների ներկա սահմաններն անխախտելի են, որովհետև դրանց օրինականությունը խարսխված է Յալթայի և Պոտսդամի, նմանապես և այլ համաձայնագրերի վրա, որոնք իրենց նշանակությամբ քաղաքական ու միջազգային իրավական պատմական ակտեր են և կնքվել են շահագրգռված պետությունների միջև։ Դրանք անխախտելի են, որովհետև, ահա արդեն երկրորդ տասնամյակն է, ինչ այդ նոր սահմանների շրջանակներում մի շարք եվրոպական երկրներ, այդ թվում ԳԴՀ-ն և ԳՖՀ-ն յուրովի են վարում իրենց կյանքը, պետական գործերը։

«Ագրեսիայի և պատերազմի քաղաքականությունը, որը վարվում է հանուն մոնոպոլիստական կապիտալի շահույթների,— ասվում է խորհրդակցության կողմից ընդունված «Խաղաղության պաշտպանության կոչում»,— բուն կապիտալիստական երկրներում ուժեղացնում է ժողովրդական լայն զանգվածների շահագործումը, բորբոքում ռասայական խտրականություն, արմատավորում բռնությունը, սահմանափակում է դեմոկրատական ազատությունները, սպառնում ժողովրդական զանգվածների կենսական շահերին։ Էկոնոմիկայի ռազմականացումը խժռում է հսկայական նյութական միջոցներ, իջեցնում կենսամակարդակը, որպես ծանր բեռ ընկնում աշխատավոր մարդկանց ուսերին։ Իմպերիալիզմն է մեղավոր, որ գիտության ու տեխնիկայի մեծագույն նվաճումները, որոնք մարդկության առջև նոր հորիզոններ են բացում, ի սպաս են դրված կործանման նպատակներին, մինչդեռ հարյուր միլիոնավոր մարդիկ տառապում են սովից և աղքատությունից»։ Ահա թե ինչու խաղաղության պայքարը՝ հանուն ժողովուրդների ազատության, առաջադիմության ու դեմոկրատիայի, միաձուլվում է օտարերկրյա բռնությունից, գաղութատիրությունից ու նեոգաղութատիրությունից, ռեակցիայից և ֆաշիստական դիկտատուրայից ազատագրվելու համար մղվող պայքարի հետ։

«Ստեղծված իրադրությունը,— նշված է Հիմնական փաստաթղթում,— պահանջում է կոմունիստների, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի գործողությունների միասնություն, որպեսզի, առավելագույն չափով օգտագործելով բոլոր նոր հնարավորությունները, ավելի լայն հարձակում ծավալվի իմպերիալիզմի դեմ, ռեակցիայի և պատերազմի ուժերի դեմ»։ Իմպերիալիզմի հանցագործություններին վերջ տալու համար բանվոր դասակարգը, դեմոկրատական, հեղափոխական ուժերը, ժողովուրդները պետք է միավորվեն և գործեն համատեղ։ Սանձահարել ագրեսորներին, մարդկությունը փրկել իմպերիալիզմից՝ ահա այն միսիան, որը վիճակվել է բանվոր դասակարգին, բոլոր հակա-

իմպերիալիստական ուժերին, որոնք պայքարում են հանուն խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության և սոցիալիզմի։

Խորհրդակցությունը միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման պատմության կարևոր էջն է, մարքսիստ-լենինյանների միասնությունն ու համախմբվածությունն ամրապնդելու համաժողովը, վերջին տասնամյակի համաշխարհային զարգացման հանրագումարը։ Կարևոր սկզբունքային նշանակություն ունի այն փաստը, որ խորհրդակցությունն արտահայտեց աշխարհի կոմունիստների կամքը, նրանց հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմին։

Կոմունիստների գաղափարական համախմբվածությունը բացառիկ ուժով դրսևորվեց Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի մասին դիմումի միահամուռ ընդունման ժամանակ։ Աշխարհի կոմունիստները հավատարիմ լենինիզմին, վճռականապես մերժում են աջ ու ձախ օպորտունիստների, մաոիստական պառակտիչների ամեն մի փորձ՝ կեղծելու մարքսիզմ-լենինիզմը, զինաթափ անելու ժողովուրդներին իմպերիալիզմի դեմ մղվող բարդ ու դժվարին պայքարում։

Ղեկավարվելով մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներով, խորհրդակցության մասնակիցները մանրազնին վերլուծեցին ժամանակակից իրադրությունն աշխարհում, հակաիմպերիալիստական պայքարում մշակեցին ժողովուրդների առաջ կանգնած խնդիրների լուծման ուղիներն ու ձևերը։ Դրա շնորհիվ նոր, խոշոր քայլ արվեց հեղափոխական տեսության զարգացման գործում, մարքս-լենինյան գաղափարական զինանոցը հարստացավ նոր դրույթներով։

Հիմնական փաստաթուղթը բովանդակում է արդի համաշխարհային զարգացման գիտական, մարքսիստական-լենինյան վերլուծությունը, ցույց է տրվում իմպերիալիզմի ռեակցիոն-մարդատյաց բնույթը, ընդգծվում են խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության, սոցիալիզմի համար գործուն պայքարի ձևերն ու մեթոդները։ Այն հարյուր միլիոնավոր աշխատավորների արմատական, կենսական շահերի համար պայքարի ծավալուն ծրագիր է։

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների Մոսկվայի միջազգային խորհրդակցությունը նորից հաստատեց, որ համաշխարհային հակաիմպերիալիստական, հեղափոխական շարժման պատվարը սոցիալիստական սիստեմն է, որը խարսխված է ինտերնացիոնալիզմի սկզբունքների անշեղ կենսագործման, ազգային և միջազգային խնդիրների ճիշտ զուգակցման, եղբայրական փոխօգնության և փոխադարձ աջակցության վրա։ Սոցիալիստական համագործակցությունը կազմող երկրները հուժկու պատնեշ են ստեղծում ընդդեմ համաշխարհային նոր պատերազմի սանձազերծման, ամրապնդում խաղաղության պայքարի միջազգային լայն ճակատը, կասեցնում սպառազինությունների մրցավազքը, պաշտպանում ժողովուրդների անկախությունը։

Մեր թշնամիները ջանում են խոշորացույցի միջով դիտել սոցիալիստական համագործակցության առանձին օղակներում առաջացած դժվարությունները, դրանց շուրջ աղմուկ բարձրացնել։ Նրանք փորձում են հանդես գալ խորհրդատուի, միջնորդի դերում, մոռանալով, որ այդ երկրներում իշխանության գլուխ կանգնած կուսակցություններն ու կառավարություններն են իրավասու դատելու սեփական պրոբլեմների մասին, քան կողմնակի որևէ մեկը։ Սոցիալիստական պետությունները, վերացնելով իրենց հարաբերություններում տեղ գտած թերությունները, կատարելագործում և ամրապնդում



են համագործակցության ձևերը։ Հատկապես կարևոր է Վարշավայի պայմանագրի կազմակերպության դերը, որը ուժեղացրել է սոցիալիստական երկրների ազդեցությունը աշխարհում, այդ թվում՝ Եվրոպայի գործերում։

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների 1969 թ. միջազգային խորհրդակցությունը նշեց, որ անհրաժեշտ է վճռականորեն և հետևողականորեն պայքարել ամեն կարգի օպորտունիզմի դեմ։ Խորհրդակցության ընդունած հիմնական փաստաթղթում ասված է, որ իմպերիալիզմի դեմ հաջողությամբ պայքարելու և իրենց գործի հաղթանակն ապահովելու համար, կոմունիստները պետք է հասնեն մարքսիզմ-լենինիզմի հաղթանակին, պայքարեն տեսության և քաղաքականության աջ ու ձախ օպորտունիստական աղավաղումների, ռևիզիոնիզմի, դոգմատիզմի և ձախ աղանդավորական ավանտյուրիզմի դեմ։

Խորհրդակցության մասնակիցների ելույթներում ցույց տրվեց, որ «ձախ» օպորտունիզմը և ձախ աղանդավորական ավանտյուրիզմը ավելի լրիվ մարմնավորվել է Չինաստանի կոմունիստական կուսակցության ներկայիս ղեկավարության քաղաքականության մեջ։ Հռետորների գերակշռող մեծամասնությունը վճռականորեն դատապարտեց չինական ղեկավարների պառակտչական գործունեությունը, մեծապետական շովինիզմը, հակասովետիզմի քաղաքականությունը, որն իր արտահայտությունն է գտել Չինաստանի կոմկուսի IX համագումարի որոշումներում։ «Չինաստանի կոմկուսի IX համագումարը,— ասում է ընկեր Բրեժնևը,— մաոիզմի գաղափարական ու քաղաքական դրույթների էվոլյուցիայի նոր էտապ հանդիսացավ։ Չինաստանի կոմկուսի նոր կանոնադրության մեջ Մաո Ցզե-դունի գաղափարները հայտարարված են արդի դարաշրջանի մարքսիզմ-լենինիզմ։ Չինական պրոպագանդան բացեիբաց խնդիր է հռչակում՝ «Մաո Ցզե-դունի գաղափարների դրոշը ծածանել ամբողջ երկրագնդի վրա»։

Մարքսիզմ-լենինիզմը բանվոր դասակարգի ինտերնացիոնալ ուսմունքն է և յուրաքանչյուր կոմունիստական կուսակցություն, այդ թվում նաև Չինաստանի կոմկուսը, հասկանալի է, իրավունք ունի ստեղծագործաբար կիրառել և զարգացնել այն։ Սակայն տվյալ դեպքում ոչ թե մարքսիզմ-լենինիզմն է ստեղծագործաբար զարգանում, այլ այն նենգափոխում է Մաո Ցզե-դունի նացիոնալիստական, մանրբուրժուական հայացքներով։

Մաոիզմն իր սոցիալական էությամբ մանրբուրժուական հոսանք է միջազգային կոմունիստական շարժման մեջ։ Մաոիզմի միջուկը մեծապետական շովինիզմն է, մանրբուրժուական հեղափոխականությամբ քողարկվող հակասովետիզմը։ Այդ հոսանքի համար բնորոշ են թե՛ տեսության և թե՛ քաղաքականության մեջ մի ծայրահեղությունից մյուսին նետվելը, ավանտյուրիզմի և անարխիզմի գծերը։ Մաոիզմի համար բնորոշ է անձի պաշտամունքի գաղափարախոսությունը, որը Չինաստանում հրեշավոր չափերի է հասել։

Համաշխարհային կոմունիստական շարժման պատմության մեջ չի եղել դեպք, երբ ղեկավարի կենդանության օրոք նրա անունը մտցվի կուսակցության կանոնադրության մեջ, իսկ IX համագումարում ընդունված կանոնադրության մեջ ո՛չ միայն Մաո Ցզե-դունը անվանված է Չինաստանի կոմկուսի «առաջնորդ», այլև հաստատված է նրա հաջորդը՝ Լին Բյաոն, նրա «մերձավոր զինակիցը» և «գործի շարունակողը»։

Չինական հազարավոր կոմունիստներ «կուլտուրական հեղափոխության» ժամանակաշրջանում հալածանքների են ենթարկվել այն բանի համար, որ

կասկածել են Մաո Ցզե-դունի քաղաքականության ճշտության մեջ և օբյեկտիվորեն գնահատել Չինաստանում տիրող դրությունը։ Կուսակցության ներսում այդ ուժերի նկատմամբ հաշվեհարդար կատարելու համար Մաոն մոբիլիզացրեց բոլոր ուժերը։ Ամենից առաջ նա օգտագործեց բանակը, կեղծեց պրոլետարիատի դիկտատուրայի մասին մարքսիզմ-լենինիզմի ուսմունքը, վերցնելով միայն նրա մի կողմը՝ բռնությունը։

Հակասովետիզմը դարձել է չինական ղեկավարների պաշտոնական պետական քաղաքականությունը։ Համագումարի նախօրյակին, 1969 թ. մարտի 2-ին, նրանք զինված արյունալի պրովոկացիա կազմակերպեցին սովետական Դամանսկ կղզում։ Այդ և դրան հաջորդած մարտի 14—15-ի ավելի խոշոր պրովոկացիան նույն կղզում մաոականները օգտագործեցին երկրում մասսայական հակասովետական կամպանիա ծավալելու համար, որը հանդիսացավ նրանց համագումարի անցկացման գաղափարական յուրատեսակ պատրաստությունը։ Լին Բյաոյի հաշվետու զեկուցումը լի է Սովետական Միության և ՍՄԿԿ դեմ ուղղված չարամիտ հարձակումներով, այնտեղ աղավաղված է պատկերվում չին-սովետական սահմանի հարցը։ Ամեն կերպ բորբոքելով ատելությունը Սովետական Միության նկատմամբ, մաոական պրոպագանդան, չխորշելով ամենակեղտոտ կեղծիքից ու զրպարտությունից, չին ժողովրդին ներշնչում է, թե իբր ՍՍՀՄ-ը ուզում է հարձակվել Չինաստանի վրա։

Ներկայիս չինական ղեկավարության հակասովետական ելույթները և գործողությունները ոչ մի առնչություն չունեն Չինաստանի կոմունիստական կուսակցության, չին ժողովրդի հետ։ Չինաստանի իսկական ազգային վերածնությունը, նրա սոցիալիստական զարգացումը հնարավոր են միայն Սովետական Միության, սոցիալիստական համագործակցության մյուս երկրների հետ դաշնակից լինելու պայմաններում։

Հենց այդ հեռանկարից է ելնում Չինաստանի նկատմամբ մեր կուսակցության կուրսը։ ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան (1969 թ.) պլենումը, միահամուռ հաստատելով միջազգային խորհրդակցությունում չինական հարցի նկատմամբ ՍՄԿԿ պատվիրակության դիրքավորումը, հայտարարեց, որ կուսակցությունը գաղափարական անհաշտ պայքար կմղի Չինաստանի ներկայիս ղեկավարների հակալենինյան գաղափարական դրույթների, նրանց պառակտչական քաղաքականության և մեծապետական արտաքին քաղաքական կուրսի դեմ։ Նա ամեն ինչ կանի, որպեսզի ամեն տեսակ ոտնձգություններից պաշտպանի կոմունիզմ կառուցող սովետական ժողովրդի շահերը։ Դրա հետ մեկտեղ ՍՄԿԿ-ն ելնում է նրանից, որ սովետական և չին ժողովուրդների արմատական շահերը համընկնում են։

Համաշխարհային կոմունիստական համաժողովի մասնակիցները, հաջողությամբ ավարտելով իրենց աշխատանքները, Մոսկվայից գնացին ավելի համախմբված, ընդհանուր գործի հաղթանակի նկատմամբ ավելի վստահ։

Կոմունիստները հիմք ունեն վստահ նայելու ապագային։ Նրանք լավատեսներ են։ Կոմունիստական շարժումը, հավատարիմ Մարքսի, Էնգելսի, Լենինի անմահ ուսմունքին, այժմ հսկայական հնարավորություններ ունի սանձելու իմպերիալիզմի ուժերը, նպաստելու ժողովուրդների սոցիալական ու ազգային առաջադիմությանը։

Աշխարհի կոմունիստների հերթական՝ մոսկովյան երրորդ խորհրդակցությունը մարդկության ապագան որոշող միջազգային աչքի ընկնող իրադարձություն է, նոր փուլ կոմունիստական ու բանվորական շարժման պատմության մեջ։

# ՆԵՈԳԱՂՈՒԹԱՏԻՐՈՒԹՅԱՆ ԲՆՈՐՈՇ ԳԾԵՐԸ

**Ն. Հ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**

Պատմական գիտությունների դոկտոր

Միջազգային իմպերիալիզմը պատմական բոլոր ժամանակաշրջաններում ճնշված ժողովուրդների նկատմամբ վարել է կեղեքման, գաղութային քաղաքականություն։ Իմպերիալիզմի գաղութային քաղաքականությունը պատմական զարգացման ընթացքում անցել է երկու էտապ, հին կամ դասական գաղութատիրության և նոր կամ նեոգաղութատիրության։ Նման էվոլյուցիայի հիմք է ծառայում շահագործման եղանակների և մեթոդների այն սիստեմը, որ պատմական տարբեր դարաշրջաններում իմպերիալիստական պետությունները կիրառել են ճնշված ժողովուրդների նկատմամբ։

Սակայն այդ երկու էտապները չի կարելի միմյանց հակադրել։ Նեոգաղութատիրությունը երկնքից չի ընկել, այլ ուղղակի դուրս է եկել դասական գաղութատիրության ծոցից. հանդիսանալով նրա տրամաբանական կերպարանափոխման արդյունք՝ պատմական նոր պայմաններում։ Թե՛ դասական և թե՛ նեոգաղութատիրության վերջնական նպատակը սկզբունքորեն նույնն է՝ գերշահույթներ ստանալ իմպերիալիստական մոնոպոլիաների համար, արգելակել հետամնաց ու չզարգացած երկրների տնտեսական վերածնունդը։ Տնտեսապես թույլ ու հետամնաց ժողովուրդների շահագործումը հատուկ է իմպերիալիզմին. դա վերջինիս բնորոշ գիծն է։

Դասական գաղութատիրությունը գոյություն ունեցավ մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը։ Պատերազմի ավարտից և սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ձևավորումից հետո բուռն թափով զարգացան ազգային-ազատագրական շարժումները, որի շնորհիվ նախկին գաղութների ճնշող մեծամասնությունը քաղաքական անկախություն նվաճեց։ Դա իմպերիալիզմի գաղութային սիստեմի ոչ թե մասնակի պարտությունն էր, այլ կրախը, որը սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ձևավորումից հետո երկրորդ խոշոր պատմական երևույթն է։

Գաղութային սիստեմի փլուզումը սակայն չի նշանակում, որ իմպերիալիզմը զինաթափ է եղել։ Այն հարմարվեց նորաստեղծ պայմաններին և ասպարեզ իջավ նոր քաղաքականությամբ, որը կոչվում է նեոգաղութատիրություն։

Իմպերիալիզմի և նրա նեոգաղութատիրական քաղաքականության հար-

ցերը բազմակողմանի և հանգամանալից քննարկվեցին այս տարվա հունիսին Մոսկվայում կայացած 75 կոմունիստական և բանվորական կուսակցությունների խորհրդակցությունում, որ ընդհանուր ճանաչում գտավ այն տեսակետը, որ նեոգաղութատիրությունը մեծ վտանգ է ներկայացնում ազատագրված երկրների համար և նրա դեմ պայքարը կազմում է իմպերիալիզմի դեմ մղվող ընդհանուր պայքարի բաղկացուցիչ և անբաժանելի մասը։ Խորհրդակցությունում ունեցած իր ելույթում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար Լ. Ի. Բրեժնևը նշեց, որ ժողովուրդները խիստ հաշվի են ներկայացնում իմպերիալիզմին, որ «իմպերիալիզմը եղել և մնում է ոչ միայն կոմունիստական շարժման գլխավոր հակառակորդը, այլև աշխատավորների իրավունքների համար, ժողովուրդների սոցիալական և ազգային ճնշումից ազատագրելու համար պայքարող բոլոր մարտիկների հակառակորդը»։

Երկրագնդի բոլոր մայրցամաքների մարքսիստ-լենինյանները համակարծիք են նեոգաղութատիրության գնահատման հարցի շուրջը, որն իր արտացոլումը գտավ խորհրդակցությունում ընդունված «Հիմնական փաստաթղթում»։ «Ազգային-ազատագրական շարժման դեմ մղվող պայքարում,— ասված է այնտեղ,— իմպերիալիզմը մի կողմից համառորեն պաշտպանում է գաղութատիրության մնացորդները, իսկ մյուս կողմից՝ ջանում է նեոգաղութատիրության մեթոդներով խոչընդոտել զարգացող պետությունների, ազգային սուվերենություն նվաճած երկրների տնտեսական և սոցիալական առաջադիմությանը»։

Խորհրդակցությունում ընդունված որոշումներն ունեն պատմական կարևոր նշանակություն և մեծապես կօգնեն նեոգաղութատիրության էության ըմբռնման, կուժեղացնեն նախկինում ճնշված ժողովուրդների պայքարը համաշխարհային իմպերիալիզմի դեմ։

* * *

Դասական գաղութատիրությունը, որը հաստատվեց ռազմական նվաճումների շնորհիվ, հիմնված էր բազմաթիվ ճնշված ժողովուրդների ինքնիշխանության և պետական անկախության իրավունքի ժխտման սկզբունքի վրա։ Ըստ այնմ էլ գաղութները, պրոտեկտորատները, ենթամանդատային տերիտորիաները և այլն կառավարում էին մետրոպոլիայի կողմից նշանակված գեներալ-նահանգապետերը և գլխավոր կոմիսարները։ Այդ երկրներում կանգնած էին գաղութարարների ռազմական ուժերը, այնտեղ ծածանվում էր մետրոպոլիայի դրոշը և նրանք զուրկ էին պետական որևէ ինքնուրույնությունից։

Ղեկավարվելով ռասայական տեսությամբ, որն ազգերին բաժանում է ցածր և բարձր կատեգորիաների, գաղութարարները գտնում էին, որ ճնշված ժողովուրդները դեռևս չեն հասունացել ինքնուրույն քաղաքական կյանքի համար և եվրոպական առաջավոր ազգերի ղեկավարման կարիքն են զգում։

Այդ հակագիտական թեզը նրանք կիրառում էին ո՛չ միայն իրոք զարգացման ցածր մակարդակի վրա գտնվող և պատմության ընթացքում երբեք իրենց պետականությունը չունեցած ազգերի ու ժողովուրդների նկատմամբ, այլ այնպիսի ժողովուրդների նկատմամբ, որոնք ժամանակին ստեղծել էին բարձր քաղաքակրթություն և ունեին իրենց պետականությունը, ինչպես հնդիկները, չինացիները, արաբները և այլն։

Նեոգաղութատիրությունը, ի տարբերություն հին գաղութատիրության, ձևականորեն ընդունում է նախկին բոլոր ճնշված ժողովուրդների սուվերենի-



տետի իրավունքը և ճանաչում նրանց քաղաքական անկախությունը։ Իմպերիալիստական պետությունները նախկին գաղութներից հարկադրված դուրս բերեցին իրենց ռազմական ուժերը, գաղութային ներկայացուցչին փոխարինեց դեսպանը, մետրոպոլիայի դրոշի փոխարեն սկսեց ծածանվել տվյալ երկրի ազգային դրոշը և այլն։

Բուրժուական գաղափարախոսները, պետական ու քաղաքական գործիչները, ելնելով գաղութային սիստեմի փլուզման փաստից, ձգնում են ապացուցել, որ գաղութատիրությունն իբր իր բոլոր ձևերով անհետացել է երկրի երեսից և այլևս գոյություն չունի։ Նրանք «ժխտում» են ոչ միայն դասական, այլև նեոգաղութատիրության գոյությունը։ Այսպես, Անգլիայի պահպանողականների կառավարության վերջին պրեմիեր-մինիստր Հյումն իր մի ելույթում հայտարարեց. «Անգլիայի քաղաքական բառարանում նեոգաղութատիրությանը տեղ չկա։ Մենք չգիտենք, թե դա ինչ է նշանակում։ Եվ մենք պետք է այդ զրպարտությունը դուրս գցենք մեր գիտակցության մութ ծալքերից» (Международная жизнь, 1968, № 1, стр. 23)։ Սակայն, անկախ այն բանից, թե իմպերիալիստական երկրների բառարաններում նեոգաղութատիրությունը տեղ կգտնի թե ոչ, դրա գոյությունը ռեալ իրողություն է և այն ունի իր կոնկրետ բովանդակությունը, բնորոշ կողմերը։

Նախկին գաղութների, պրոտեկտորատների և ենթամանդատային տերիտորիաների քաղաքական անկախության ճանաչումը չէր նշանակում, որ իմպերիալիստական պետություններն իրոք հաշտվել են նրանց քաղաքական անկախության փաստի հետ և անտարբեր են այն հարցի նկատմամբ, թե այդ երկրներում ի՞նչ է տեղի ունենում և ի՞նչ ուղղությամբ են նրանք ընթանում։ Ընդհակառակն, այդ հարցում նախկին գաղութատեր երկրները՝ Անգլիան, Ֆրանսիան, Իսպանիան, Իտալիան, Բելգիան, դրանց ավելացրած ԱՄՆ-ը, Արևմտյան Գերմանիան, Ճապոնիան և այլն, չտեսնված շահագրգռվածություն ու ակտիվություն են հանդես բերում։ Նրանք մշակել են մի սիստեմ, որն ընդունված է անվանել «հեռանալուց հետո մնալ»։ Դրա էությունն այն է, որ իմպերիալիստական պետությունները թեև ձևականորեն ճանաչում են նախկին գաղութների անկախությունը և նրանք ուղղակիորեն, քաղաքական առումով չեն կառավարում գաղութները, սակայն անուղղակի, զանազան հնարանքների և խորամանկ ու թաքուն միջոցներով ապահովում են իրենց ներկայությունը տվյալ երկրում և ուղղություն տալիս նրանց քաղաքականությանը։ Նեոգաղութատիրության հիմնական քաղաքական նպատակն է՝ ամեն ինչ անել, որպեսզի անկախություն ձեռք բերած նորաստեղծ ազգային պետությունները շարունակեն պատկանել կապիտալիզմի համաշխարհային սիստեմին, թույլ չտան նրանց մերձեցումը սոցիալիստական երկրների հետ և կանխեն նրանց զարգացումը ոչ կապիտալիստական ուղիով։ Դրա համար նրանք չափազանց մեծ նշանակություն են տալիս ռեժիմի հարցին, որն ամենակարևորն է նեոգաղութատիրության ողջ սիստեմում։

Նեոգաղութարարները նախքան այս կամ այն գաղութի անկախության ճանաչումը, ձգտում են լուծել այն խնդիրը, թե իրենցից հետո այնտեղ իշխանությունը ո՞ւմ ձեռքն է անցնելու և ինչպիսի՞ ռեժիմ է հաստատվելու։ Բնականաբար նրանք աշխատում են իշխանությունը հանձնել իրենց մարդկանց և ստեղծել այնպիսի ռեժիմ, որն անվերապահ կհետևի այս կամ այն իմպերիալիստական պետության հրահանգներին։ Արևմտյան երկրները դասական գաղութատիրության դարաշրջանում իրենց տիրապետությունը պահպանելու հա-

մար հենվում էին գաղութային երկրների ամենահետադիմական շրջանների վրա, հատկապես ֆեոդալական վերնախավի, ցեղապետերի, շեյխերի, ինչպես նաև կոմպրադորական բուրժուազիայի որոշ շրջանների վրա։ Հեռանալուց հետո գաղութարարները, իհարկե, ամեն կերպ ձգտում են իշխանությունը հանձնել դրանց։

Եվ պետք է նշել, որ այն երկրներում, որտեղ այդ խավերի տնտեսական ու քաղաքական ազդեցությունը մեծ է և ազգային-ազատագրական շարժումները համեմատաբար թույլ, Արևմուտքի իմպերիալիստական ուժերին հաջողվեց «իշխանությունը հանձնել» հետադիմական ուժերին, ստեղծել իրենց համար ձեռնտու ռեժիմ։ Այդպիսի վիճակ ստեղծվեց, օրինակ, Ֆիլիպիններում, Տաիլանդում, Նեպալում, Պակիստանում, Իրաքում, Լիբիայում, Մարոկկոյում, Կենտրոնական ու Հարավային Աֆրիկայի մի շարք երկրներում և այլն։

Սակայն այս հարցում նեոգաղութարարները դոգմատիկներ չեն և մեծ ճկունություն են հանդես բերում։ Այն դեպքում, երբ նրանք տեսնում են, որ վերոհիշյալ ուժերը կորցրել են իրենց հեղինակությունը և քաղաքական ասպարեզ են իջել նոր, բայց ավելի ազդեցիկ ուժեր, իմպերիալիստական երկրները անմիջական կապերի մեջ են մտնում վերջիններիս հետ և հովանավորում նրանց։ Անկախություն ձեռք բերած երկրներում տեղի ունեցած սոցիալ-քաղաքական տեղաշարժերի հետևանքով, հրապարակ է եկել մի նոր ուժ, այսպես կոչված բյուրոկրատական բուրժուազիան և նրա հետ կապված մտավորականությունը։ Բազմաթիվ երկրներում պետական ապարատը և կառավարման սիստեմը գտնվում է նրանց ձեռքում։ Դրանք մինիստրներ, պառլամենտի անդամներ և զանազան աստիճանավորներ են, որոնք ստանում են բարձր աշխատավարձ։ Այդ ուժերը, հասկանալի է, ժողովրդական և դեմոկրատական ռեժիմների գոյության դեպքում չէին կարող ստանալ մեծ եկամուտներ։ Ուստի, իրերի ստեղծված վիճակն անփոփոխ թողնելու համար նրանք իմպերիալիստական երկրների օգնության և աջակցության կարիքն են զգում։ Իսկ վերջիններս սիրով ընդառաջում են նրանց, որովհետև այդ նոր «ազգային» ուժերն ավելի մեծ հեղինակություն են վայելում և կատարում են նեոգաղութարարների հրամանները։

Նրանք, ինչպես նշվեց, օգտագործում են նաև բյուրոկրատական բուրժուազիայի հետ կապված մտավորականությանը, որի ներկայացուցիչներից շատերը բարձր պետական պաշտոններ են գրավում և պատկանում են նույն այդ բյուրոկրատական բուրժուազիային։ Նրանց օգտագործելու համար բուրժուական գաղափարախոսները այն «տեսությունն» են զարգացնում, որ կրթված ասիացին ու աֆրիկացին իր հոգևոր կերտվածքով, պահանջներով և կուլտուրայով ավելի հոգեհարազատ է եվրոպացուն և ամերիկացուն, քան իր անգրագետ ազգակցին։ Նման կեղծ տեսություններով նեոգաղութարարները փորձում են շոյել ասիական և աֆրիկյան մտավորականության ինքնասիրությունը, անջատել նրան իր ժողովրդից, հասարակությանը հուզող հարցերից, շահերի ընդհանրություն ստեղծել նորակազմ ասիական ու աֆրիկյան բյուրոկրատական մտավորական սերուցքի և իմպերիալիստական պետությունների շահերի միջև։

Սակայն բոլոր դեպքերում չէ, որ իմպերիալիստներին հաջողվում է նախկին գաղութներում և կախյալ երկրներում ստեղծել իրենց ցանկացած ռեժիմը։ Այնտեղ, որտեղ ազգային-ազատագրական շարժումն ունի կազմակերպված բնույթ և պայքարի հարուստ ավանդույթներ, ուր շարժման ղեկավարներն



արտահայտում են տվյալ երկրի ազգային շահերը, իսկ ժողովրդական խավերն ակտիվորեն են մասնակցում հակաիմպերիալիստական պայքարին, այնտեղ գաղութարարները չեն կարողանում իրենց կամքը թելադրել։

Այդպիսի երկրներում ստեղծվում են առաջադիմական և դեմոկրատական կարգեր, որոնց գլխավոր խնդիրը գաղութատիրության քաղաքական և տնտեսական արմատների վերացումն է։ Նման կարգեր ստեղծվեցին Եգիպտոսում, Բիրմայում, Ալժիրում, Գանայում, Մալիում, Կոնգոյում (Բրազավիլ) և այլ երկրներում։

Ինչպիսի՞ դիրք են գրավում նեոգաղութարարները ստեղծված նոր կարգերի նկատմամբ։ Հասկանալի է, որ «երրորդ աշխարհում» այդ երկրների առկայությունը (որոնք, իրոք, անկախ քաղաքականություն են վարում), հակասում է նեոգաղութարարների իմպերիալիստական շահերին։ Դրանով է բացատրվում վերջիններիս թշնամական դիրքը վերոհիշյալ երկրների նկատմամբ։ Նեոգաղութարարների գլխավոր խնդիրն է՝ տապալել առաջադիմական կարգերը և իշխանությունը հանձնել իրենց հետ համագործակցելու պատրաստ ուժերին։ Դրա համար նեոգաղութարարները լայնորեն դիմում են պետական հեղաշրջումների պրակտիկային։ Պետական հեղաշրջումները որպես կանոն բացակայում էին դասական գաղութատիրության ժամանակ։ Դա բացատրվում է նրանով, որ գաղութները չունեին իրենց ինքնուրույն կառավարությունները։ Իսկ այնտեղ, որտեղ ձևականորեն նշանակվում էին ռեալ իշխանությունից զուրկ «պրեզիդենտներ», նույնիսկ «թագավորներ» և եթե վերջիններս հանդգնում էին ինչ-որ չափով անհնազանդ գտնվել իրենց տերերի նկատմամբ, ապա վերջիններս նրանց պարզապես հեռացնում էին իրենց պաշտոններից և նոր մարդ նշանակում։ Պետական հեղաշրջման ոչ մի կարիք չէր զգացվում։

Պետական հեղաշրջումները հատուկ են նեոգաղութատիրության դարաշրջանին և կազմում են նրա ամենաբնորոշ գծերից մեկը։ Երկրորդ համաշխարհային պատերազմի ավարտից հետո Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի երկրներում տեղի է ունեցել 40-ից ավելի պետական հեղաշրջում։ Եթե հաշվի առնենք նաև ձախողված փորձերը, ապա այդ թիվն ավելի պատկառելի տեսք կունենա։ Որպես կանոն պետական հեղաշրջումների հետևում կանգնած են օտարերկրյա, գլխավորապես ամերիկյան և անգլիական իմպերիալիստները։ Պետական հեղաշրջումներն ուղղակի պատուհաս են դարձել «երրորդ աշխարհի» պետությունների համար։

Նման եղանակով նեոգաղութարարները ձգտում են տապալել գոյություն ունեցող առաջադիմական կարգերը և իշխանությունը հանձնել այնպիսի ուժերի, որոնք այդ երկրի զարգացումը կտանեն իմպերիալիստներին ձեռնտու ուղիով։ Այդ պատճառով նրանք իրենց հարվածն ուղղում են առաջին հերթին այն երկրների դեմ, որոնք վարում են ինքնուրույն, հակաիմպերիալիստական քաղաքականություն և զարգացման ոչ կապիտալիստական ուղին հռչակել են իրենց ազգային գլխավոր իդեալը։ Այդ մասին են վկայում պետական այն հեղաշրջումները, որ վերջին երկու տարում տեղի ունեցան Գանայում, Կոնգոյում (Բրազավիլ) և Մալիում։

Նեոգաղութարարները մի կողմից ձգտում են տապալել առաջադիմական կարգերը, մյուս կողմից՝ դիմում ամեն միջոցի, ընդհուպ մինչև ռազմական ինտերվենցիան, պահպանելու հետադիմական և հակաազգային ռեժիմներն այն երկրներում, որտեղ նրանց գոյությանը վտանգ է սպառնում։

Հետադիմական ռեժիմների տապալումը կանխելու կամ արդեն տապալ-

ված ռեժիմները վերականգնելու համար իմպերիալիստական ուժերը երբեմն դիմում են ռազմական միջամտության, զենքի ուժով ճնշում մասսաների ելույթը և վերականգնում «օրինականությունը»: Այդ բնագավառում մեծ ակտիվություն են հանդես բերում հատկապես Ամերիկայի Միացյալ Նահանգները, որոնք ռազմական ինտերվենցիա կատարեցին Գվատեմալայում, Լիբանանում, Հարավային Վիետնամում և Դոմինիկյան հանրապետությունում: Գաղութատիրական այդ նոր մեթոդից չեն խորշում Անգլիան, որը 1958 թ. հուլիսին իր զորքերը մտցրեց Հորդանան, և իմպերիալիստական մյուս երկրները: Սակայն էական տարբերություն կա ռազմական միջամտությունների միջև հին և նոր գաղութատիրությունների ժամանակ: Դասական գաղութատիրության դարաշրջանում այդ ռազմական միջամտությունները կատարվում էին առանց այլևայլության, առանց որևէ ձևական պատրվակի և գրավված տերիտորիան վեր էրածվում գաղութի ու մտցվում եվրոպական այս կամ այն իմպերիալիստական պետության գաղութային տիրապետությունների կազմի մեջ:

Նեոգաղութատիրության դարաշրջանում իմպերիալիստները գործում են ավելի զգույշ և քողարկված մեթոդներով: Ռազմական ինտերվենցիաներն այս դարաշրջանում ունեն իրենց բնորոշ առանձնահատկությունները: Նեոգաղութարարներն իրենց միջամտությունը նախ և առաջ փորձում են հիմնավորել նրանով, որ այս կամ այն երկրի «օրինական» կառավարությունը պաշտոնապես դիմել է իրենց, խնդրելով օգնություն ցույց տալ դրսից սպառնացող վտանգից պաշտպանվելու համար: Ելնելով դրանից, նեոգաղութարարները հայտարարում են, որ իրենք չեն խախտել միջազգային իրավունքի նորմաները և տվյալ երկրի սուվերենիտետը:

Մյուս առանձնահատկությունն այն է, որ ճնշելով հակաիմպերիալիստական շարժումները և ապահովելով իրենց ձեռնտու ռեժիմի գոյությունը, ինտերվենտները գրաված տերիտորիաները չեն վերածում իրենց գաղութի, ինչպես դա տեղի էր ունենում նախկինում: Ձևականորեն հարգվում է այդ երկրի սուվերենիտետը և պահպանվում նրա քաղաքական անկախությունը: Այս հանգամանքը դժվարացնում է, մանավանդ քաղաքականության մեջ անփորձ մարդկանց, ճիշտ ըմբռնել ու գնահատել իմպերիալիստական երկրների նոր գաղութային քաղաքականության նրբությունները:

Նեոգաղութատիրությունը դիմում է զգույշ, քողարկված ու նուրբ մեթոդների, որոնց օգնությամբ նա ձգտում է, մի կողմից կենսագործել իր շահադիտական ծրագրերը, իսկ մյուս կողմից՝ չվարկաբեկվել մասսաների առջև և նրանց աչքում պահպանել իր «հարգարժան» դիրքը:

Իմպերիալիզմի նեոգաղութատիրական քաղաքականության զինանոցը հարուստ է նաև տակտիկական այլ «հնարամտություններով»: Անհրաժեշտ է հիշատակել նեոգաղութարարների այն մեթոդը, որի նպատակը գաղութներին անկախություն տալուց առաջ նրանց թուլացնելը և եթե հնարավոր է՝ անզոր դարձնելն է: Նրանք, ինչպես դա տեղի ունեցավ աֆրիկյան մի շարք երկրների հետ, արհեստականորեն մասնատում են նախկին գաղութների տերիտորիաները և դրանց բազայի վրա «ստեղծում» մանր պետություններ, որոնք իրենց տնտեսական թուլության պատճառով լրիվ կախման մեջ են ընկնում այս կամ այն իմպերիալիստական պետությունից: Երբեմն այդ բաժանումը կատարվում է ըստ կրոնական հատկանիշի, ինչպես դա պատահեց Հնդկաստանի և Պակիստանի հետ: Չցանկանալով որ Հնդկաստանը մեծ և հզոր պետություն դառնա, Մեծ Բրիտանիան իր նախկին հնդկական գաղութի անկախությունը ճանաչելուց առաջ, նրան բաժանեց երկու մասի և որպես կռվախնձոր նրանց միջև թողեց Քաշմիրի հարցը:



Տերիտորիալ վիճելի հարցի առիթով եղբայրասպան պատերազմ մղվեց արաբական երկու պետությունների՝ Ալժիրի և Մարոկկոյի միջև: Այդպիսի վիճելի հարցեր ստեղծելը նեոգաղութատիրության բնորոշ գծերից մեկն է, որով պառակտվում է հակաիմպերիալիստական ճակատը և իմպերիալիստները հնարավորություն են ստանում մասնակցելու ծագած կոնֆլիկտների «լուծմանը»՝ իրենց կամքը թելադրելով այս կամ այն կողմին: Նեոգաղութատիրությանը բնորոշ է նաև ռազմա-քաղաքական և տնտեսական բլոկների ստեղծումը, որով նրանք ձգտում են ազատագրված երկրներին պահել իրենց ազդեցության ոլորտում:

Նեոգաղութատիրության զինանոցում մեծ տեղ է հատկացվում հակակոմունիզմի գաղափարախոսությանը: Կոմունիզմի և «սովետական վտանգի» մասին զանազան բարբաջանքներով և մտացածին հերյուրանքներով իմպերիալիստները ձգտում են սեպ խրել ազատագրված երկրների և Սովետական Միության ու սոցիալիստական մյուս երկրների միջև:

Սակայն նեոգաղութարարների համար գնալով դժվարանում է օգտվել «հակակոմունիզմի» խրտվիլակից, որովհետև ազատագրված երկրների առաջադիմական ուժերի քաղաքական մակարդակը օրեցօր բարձրանում է և այդ երկրները սեփական փորձով համոզվում են, որ սոցիալիստական պետությունները ոչ թե իրենց թշնամիներն են, այլ միակ անկեղծ ու անշահախնդիր բարեկամները:

* * *

Քաղաքական անկախության նվաճումից հետո ազատագրված երկրների առջև կանգնած գլխավոր խնդիրը տնտեսական անկախության նվաճումն է՝ ստեղծել ներդաշնակորեն ու համակողմանիորեն զարգացող, իմպերիալիստական մոնոպոլիաներից կախում չունեցող ինքնուրույն ազգային տնտեսություն և բարձրացնել իրենց ժողովրդի կենսամակարդակը: Սակայն նրանց այս ձգտումը հակադրվում է իմպերիալիզմի նեոգաղութարարական քաղաքականությանը: Վերջինիս հիմնական նպատակն է թույլ չտալ զարգացող երկրներին վերացնել իրենց տնտեսության գաղութային կառուցվածքը և հասնել տնտեսական անկախության, որպեսզի իմպերիալիստական մոնոպոլիաների համար ապահովվի գերշահույթների ստացումը, ինչպես հին գաղութատիրության շրջանում էր:

Իմպերիալիստական երկրներն առայժմ հնարավորություն ունեն կիրառելու այդպիսի քաղաքականություն, որովհետև զարգացող երկրները տնտեսական ու ֆինանսական կախման մեջ են գտնվում զարգացած կապիտալիստական երկրներից: Վերջիններս տնտեսական ու քաղաքական բազմաթիվ լծակների միջոցով վերահսկողություն են սահմանում այդ երկրների տնտեսության վրա և նրանց զարգացմանը տալիս են իրենց ձեռնտու ուղղություն:

Օտարերկրյա մոնոպոլիաները հին ձևերով ապահովելով բարձր շահույթներ, օգտագործում են նաև նոր մեթոդներ, որոնք բնորոշ են նեոգաղութատիրությանը: Դա նախ և առաջ գների քաղաքականությունը կամ անհամարժեք փոխանակությունն է: Դրա էությունն այն է, որ թույլ զարգացած երկրներից ապրանքները արտահանվում են ցածր գներով, իսկ այդ երկրները ներմուծվում են ապրանքներ՝ բարձր գներով: Դա կատարվում է շնորհիվ այն բանի, որ կա-

պիտալիզմի համաշխարհային շուկայում տիրապետում են մոնոպոլիստական ընկերությունները, որոնք և թելադրում են ապրանքների գները։ Օգտվելով այդ հանգամանքից, իմպերիալիստական երկրներն արհեստականորեն իջեցնում են Ասիայից, Աֆրիկայից ու Լատինական Ամերիկայից արտահանվող հումքի և պարենային ապրանքների գները ու բարձրացնում նրանց կողմից ներմուծվող արդյունաբերական զանազան ապրանքների գները։ ՄԱԿ-ի տվյալներով միայն 1950—1962 թթ. մոնոպոլիաները 18 անգամ իջեցրել են 35 կարևոր հումքի տեսակների և պարենային ապրանքների գները։ Հաշվումները ցույց են տալիս, որ միայն 1961—1966 թթ. անհամարժեք փոխանակության հետևանքով զարգացող երկրները յուրաքանչյուր տարի կորցրել են 1 մլրդ 200 մլն ֆունտ ստեռլինգ (տե՛ս «Проблемы мира и социализма», 1968, № 10—11, стр. 69)։

Նեոգաղութարարները նույնպիսի առասպելական շահույթներ են ստանում նաև ուղղակի կապիտալ ներդրումներից։ Բարձր շահույթներն ապահովվում են շնորհիվ «երրորդ աշխարհի» էժան բանվորական ուժի, բարձր մաքսային պատնեշների բացակայության և իմպերիալիստներին ձեռնտու կոնցեսիոն համաձայնագրերի կնքման։ ԱՄՆ-ի ազգային արդյունաբերության կոնֆերանսի խորհուրդը 1966 թ. իր հաշվետվություններից մեկում հայտնեց, որ սկսած 1950 թվականից, արտասահմանում ներդրված կապիտալներից, ԱՄՆ-ի ստացվող եկամուտների ընդհանուր գումարը գերազանցում է նոր կապիտալների արտահանմանը։ Սա ոչ թե հեքիաթ է, այլ իրողություն։ 1965 թվականի տվյալներով արտասահմանում ներդրված կապիտալներից ստացված ԱՄՆ-ի շահույթը կազմել է 4 մլրդ դոլար, իսկ նոր կապիտալների արտահանումը 5 մլրդ (տե՛ս «Проблемы мира и социализма», 1968, № 10—11, стр. 69)։ Զուտ շահույթը կազմում է 1 մլրդ դոլար։

Յուրաքանչյուր տարի կորցնելով այսպիսի հսկայական գումարներ, զարգացող երկրները ստիպված են դիմելու իմպերիալիստական երկրներին՝ խոշոր փոխառություններ ստանալու համար։ Վերջիններս հաճույքով են տրամադրում այդ փոխառությունը, որովհետև այն տրվում է իմպերիալիստների համար ձեռնտու պայմաններով, դառնում շահույթների նոր աղբյուր և, բացի այդ, ուժեղացնում է «երրորդ աշխարհի» երկրների ֆինանսա-տնտեսական կախվածությունը իմպերիալիստական երկրներից։ 1966 թվականի տվյալներով զարգացող երկրների պարտքը, որ գոյացել է փոխառություններից, կազմում է 18 մլրդ ֆունտ ստեռլինգ։ Այդ պարտքը մարելու համար նրանք յուրաքանչյուր տարի վճարում են 1 մլրդ ֆունտ ստեռլինգ (տե՛ս «Проблемы мира и социализма», 1968, № 10—11, стр. 69)։

Նեոգաղութարարների քաղաքականությունն անհամարժեք փոխանակության և փոխառություններ տալու հարցում հետապնդում է նաև մեկ այլ նպատակ՝ թույլ չտալ անհրաժեշտ ֆոնդերի կուտակում զարգացող երկրներում։ Հայտնի է, որ այդ երկրներից շատերը ծրագրեր ունեն տնտեսական զարգացման, ազգային անկախ տնտեսության ստեղծման, իմպերիալիզմի ազդեցության վերացման և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման վերաբերյալ։ Դրանք լուրջ ծրագրեր են, որոնց իրականացման համար անհրաժեշտ են համապատասխան ֆինանսական միջոցներ՝ դրամական ֆոնդերի կուտակում։ Սակայն հարցն այն է, որ այդ ֆոնդերը երկրի ներսում չեն մնում։ Իմպերիալիստական մոնոպոլիաները զանազան միջոցներով, որոնց մասին խոսվեց վերևում, կողոպտում են նախկին գաղութները և թույլ չեն տալիս նրանց ձեռնամուխ լինել ազգային, իմպերիալիզմից անկախ տնտեսության ստեղծմանը։



Այդ պատճառով ծրագրերի մեծ մասը մնում է թղթի վրա և շարունակվում է «երրորդ աշխարհի» երկրների տնտեսական կախվածությունը զարգացած կապիտալիստական երկրներից։

Նեոգաղութատիրությանը, ներկա էտապում, հատուկ է մի բնորոշ գիծ ևս։ Շատ երկրներում օտարերկրյա կապիտալը միավորվում է տեղական կապիտալի հետ և հանդես գալիս տեղական ազգային ցուցանակի տակ։ Ստեղծվում են խառը միավորումներ ու ֆիրմաներ, որոնց «ղեկավարները» ձևականորեն տեղացիներ են։ Այսպիսի քաղաքականության նպատակն է՝ շահերի ընդհանրություն ստեղծել օտարերկրյա իմպերիալիստների և տեղական վերնախավի միջև, վերջինիս մոտ շահագրգռվածություն առաջացնել Արևմտյան երկրների հետ համագործակցելու հարցում։ Բացի այդ, նեոգաղութարարները ստեղծելով խառը ընկերություններ տեղացիների գլխավորությամբ, դրանով փորձում են կանխել իրենց պատկանող ձեռնարկությունների ազգայնացումը, որովհետև «երրորդ աշխարհի» մի շարք երկրներում տեղի է ունենում օտարերկրյա կապիտալին պատկանող ընկերությունների և ձեռնարկությունների ազգայնացում։ Այդպիսի քաղաքականությամբ նեոգաղութարարները մի նպատակ էլ են հետապնդում՝ զորավիգ կանգնել մասնավոր սեկտորին՝ ընդդեմ պետական սեկտորի։ Պետական սեկտորի ստեղծումը զարգացող երկրներում մեծ վտանգ է ներկայացնում նեոգաղութարարներին։ Վերջիններս լավ են գիտակցում, որ պետական սեկտորի ստեղծումը և զարգացումը, որոշ բարենպաստ պայմանների դեպքում, կարող է հանգեցնել տնտեսական ինքնուրույնության։ Այդ «վտանգը» հատկապես մեծ է այն երկրներում, որտեղ իշխանությունը պատկանում է հեղափոխական դեմոկրատիային և որտեղ սոցիալիզմը հռչակված է որպես ազգային քաղաքականության հիմնական կուրս։

Այսպիսով, իմպերիալիզմի նեոգաղութատիրական քաղաքականությունը նպատակ ունի թույլ չտալ «երրորդ աշխարհի» երկրներին քաղաքականապես ու տնտեսապես պոկվել կապիտալիզմի համաշխարհային սիստեմից, կանխել նրանց քաղաքական, տնտեսական և կուլտուրական վերածնունդը և ապահովել նախկին գաղութների ազգային հարստության կողոպտման հաշվին առասպելական շահույթների ստացումը Արևմտյան իմպերիալիստական ընկերությունների համար։ Այս քաղաքականությունը հակասում է զարգացող երկրների ազգային շահերին։ Ուստի, պայքարը նեոգաղութատիրության դեմ հանդիսանում է նրանց առջև կանգնած ամենակարևոր քաղաքական ու տնտեսական խնդիրը։ Եվ կարելի է չկասկածել, որ Ասիայում, Աֆրիկայում և Լատինական Ամերիկայում ծավալված հակաիմպերիալիստական պայքարի շնորհիվ, նեոգաղութատիրությունը կարժանանա նույն բախտին, ինչ բախտի ժամանակին արժանացավ դասական գաղութատիրությունը։



## ՌԱԶՄԻԿՆԵՐԻ ԳԵՐԱԶԱՆՑ ՄԱՐՏՈՒՆԱԿՈՒԹՅԱՆ, ՔԱՂԱՔԱԿԱՆ ՊԱՏՐԱՍՏԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

**Ֆ. Պ. ՍՏԵՊՉԵՆԿՈ**

Գեներալ-գնդապետ, Անդրկովկասի կարմրադրոշ զինվորական օկրուգի ռազմական խորհրդի անդամ, քաղվարչության պետ

*Նոր տիպի բանակ ստեղծելիս մեր կուսակցությունը ելնում էր լենինյան այն դրույթից, որ իր սոցիալ-քաղաքական առանձնահատկություններով այդ բանակը պետք է լինի պրոլետարիատի դիկտատուրայի բանակ, ազատագրված բանվորների ու գյուղացիների իսկական ժողովրդական բանակ, մեր բազմազգ պետության բոլոր ժողովուրդների բարեկամության ու եղբայրության բանակ, որը դաստիարակված լինի պրոլետարական ինտերնացիոնալիզմի վսեմ գաղափարներով։ Իր քաղաքական նպատակներով այն պետք է դառնա թշնամական հարձակումներից աշխարհում առաջին սովետների երկրի պաշտպանության բանակը, որը միաժամանակ ի վիճակի լինի իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում վճռական օգնություն ցույց տալու մյուս երկրների պրոլետարիատին։*

*Կենսագործելով այդ դրույթները, մեր կուսակցությունը զինված ուժերի զարգացման և ամրապնդման յուրաքանչյուր փուլում որոշում է կուսակցական-քաղաքական աշխատանքի հիմնական ուղղությունը, մշտական հոգատարություն է ցուցաբերում, որպեսզի մարտիկները զինվեն մարքսիզմ-լենինիզմով, կոփվեն գաղափարապես և պատվով կատարեն իրենց պարտքը հայրենիքի հանդեպ։*

*Բանակում քաղաքական-դաստիարակչական աշխատանքն ուժեղացնելու նպատակով ՍՄԿԿ Կենտկոմը վերջերս ձեռնարկեց մի շարք միջոցներ. դրանցից են՝ վաշտերի և նրանց հավասար այլ ստորաբաժանումների հրամանատարների՝ քաղաքական մասի գծով տեղակալների ինստիտուտի ստեղծումը, բարձրագույն ռազմա-քաղաքական ուսումնարաններում միջին օղակի կուսակցական-քաղաքական աշխատողների ուսուցման վերականգնումը, զորատեսակների քաղաքական վարչությունների ստեղծումը, որոնք մեծ աշխատանք են կատարում։ Դրանց հետ միասին մեծ աշխատանք են կատարում*



*նաև բանակի կուսակցական կազմակերպությունները, որոնք իրենց շարքերում միավորում են բանակի ու նավատորմի անձնակազմի մոտ 22 տոկոսը։*

*Իրենց ողջ գործունեությամբ ղեկավարվելով ՍՄԿԿ ծրագրով ու կանոնադրությամբ, կուսակցության համագումարների և Կենտրոնական կոմիտեի որոշումներով, բանակային կուսակցական կազմակերպություններն իրենց գործնական աշխատանքը կառուցում են ՍՄԿԿ Կենտկոմի կողմից հաստատված հատուկ հրահանգով, ինչպես նաև բանակի գլխավոր քաղաքական վարչության դիրեկտիվներով։*

*Կուսակցական կազմակերպությունների գլխավոր խնդիրներից մեկը՝ բոլոր զինծառայողների գաղափարական-քաղաքական դաստիարակության հետագա բարելավումն է։ Դրա անհրաժեշտությունը թելադրվում է այն բանով, որ մեր բանակի ուժը, ի տարբերություն բուրժուական բանակների, հիմնվում է մարտիկների քաղաքական գիտակցականության, Հոկտեմբերյան հեղափոխության նվաճումների պաշտպանության, իրենց հայրենասիրական ու ինտերնացիոնալ պարտքի գիտակցականության վրա։*

*Գաղափարական աշխատանքի կարևոր նշանակությունը թելադրվում է նաև պատերազմի վարման նոր միջոցների բուռն զարգացմամբ։ Հրթիռա-միջուկային պատերազմը, որ համառորեն ձգտում են սանձազերծել իմպերիալիստները, անհամեմատ ավելի բարձր պահանջներ կներկայացնի ռազմիկների բարոյա-քաղաքական և մարտական պատրաստությանը։*

*Բանակային կուսակցական կազմակերպություններն անընդհատ կատարելագործում են իրենց աշխատանքը, հայրենիքին անձնուրաց ծառայելու, զինվորական պարտքն օրինակելիորեն կատարելու համար զինվորներին, սերժանտներին ու սպաներին մոբիլիզացնելու ձևերն ու մեթոդները։ Նրանք ակտիվորեն պաշտպանում են զինծառայողների ստեղծագործական նախաձեռնությունը ջոկերում, դասակներում և հրանոթների ու մեքենաների անձնակազմերում հարակից մասնագիտությունների տիրապետման, մարտական մեքենաների արագությունների բարձրացման, նորմատիվների կրճատման, զենքի բոլոր տեսակների առաջին կրակոցներով թիրախները խոցելու համար և այլն։ Կուսկազմակերպություններն օգտագործում են կուսակցական-քաղաքական աշխատանքի ամենաբազմազան ձևերի ու մեթոդների հարուստ զինանոցը, որով հնարավոր է լինում հասնելու քաղաքական աշխատանքի բարձր գաղափարայնության։*

*Զորքերում տարվող գաղափարական-դաստիարակչական աշխատանքի գլխավոր նպատակներն են՝ անձնակազմը համախմբել կոմունիստական կուսակցության և սովետական կառավարության շուրջը, զինծառայողներին դաստիարակել սովետական հայրենիքին և ժողովրդին անսահման նվիրվածության, սոցիալիստական համագործակցության երկրների ժողովուրդների ու բանակների հետ եղբայրության և համերաշխության, կոմունիստական բարոյականության ազնիվ սկզբունքներն անշեղորեն կիրառելու ոգով։*

*Անձնակազմի գաղափարական դաստիարակության գործում կարևոր տեղ են բռնում ռազմիկների քաղաքական զգոնության բարձրացման, մարդկանց գիտակցության մեջ կապիտալիզմի վերապրուկների վերացման, բուրժուական գաղափարախոսության դեմ մղվող անհաշտ պայքարի հարցերը։*

*Մարքս-լենինյան տեսության, ՍՄԿԿ XXIII համագումարի և կուսակցության Կենտկոմի պլենումների որոշումներում առաջ քաշված կոմունիստական շինարարության պրոբլեմների ուսումնասիրությունը սովետական զինված*

ուժերում կազմակերպվում է զինվորների ու սերժանտների հետ տարվող քաղաքական պարապմունքների սիստեմում, սպաների մարքս-լենինյան պատրաստության և կուսակցական լուսավորության սիստեմում։ Դրա հետ մեկտեղ, զորամասերում ու ստորաբաժանումներում ռազմիկների համար կարդացվում են դասախոսություններ ու զեկուցումներ, կազմակերպվում են զրույցներ, տեսական կոնֆերանսներ, հարց ու պատասխանի երեկոներ, գործում է կուսակցական դպրոցների և խմբակների լայնածավալ ցանց։

Օգտագործվում են մասսայական քաղաքական աշխատանքի նաև մյուս ձևերը. հրամանատարներն ու քաղաշխատողները, կուսակցական և կոմերիտական ակտիվը զինծառայողներին պարզաբանում են կուսակցության պատմական որոշումների էությունը, հանգամանորեն դրվատում են սովետական ժողովրդի ձեռք բերած հաջողությունները, ցույց տալիս կապիտալիստական սիստեմի հանդեպ սոցիալիստական սիստեմի առավելությունները։

Գաղափարախոսական մեր ողջ աշխատանքը սերտորեն կապվում է զենքի ու մարտական տեխնիկայի տիրապետման կոնկրետ խնդիրների, ժամանակակից մարտը վարելու եղանակների ու մեթոդների, մասսայական ոչնչացման զենքի կիրառմամբ պատերազմ վարելու՝ անձնակազմի բարոյա-հոգեբանական պատրաստման հետ։

Գաղափարա-դաստիարակչական աշխատանքի բարձր մակարդակն ապահովվում է միանձնյա հրամանատար-պետերի, պրոֆեսիոնալ քաղաշխատողների, կուսակցական և կոմերիտական կազմակերպությունների ակտիվ մասնակցությամբ։ Զինվորների և սերժանտների դաստիարակության սիստեմում կարևոր տեղ են բռնում քաղաքական պարապմունքները, որոնք կատարվում են սովետական բանակի և ռազմածովային նավատորմի գլխավոր քաղաքական վարչության ուսումնական պլաններով։

Քաղաքական պարապմունքները սովետական ռազմիկների գաղափարական-քաղաքական դաստիարակության հիմնական ձևն են։ Դեռ 1921 թվականին Մ. Վ. Ֆրունզեն իր հրամաններից մեկում գրել է, որ «քաղաքական-դաստիարակչական և ագիտացիոն-պրոպագանդիստական ողջ աշխատանքը մեր բանակում և նավատորմում պետք է կոմունիզմի պետական պրոպագանդայի բնույթ կրի, իսկ այդ պրոպագանդայի հիմնական ձևը պետք է լինեն քաղաքական պարապմունքները»։

Լայն ու բազմազան է այդ պարապմունքների թեմատիկան։ Ուսումնական պլանները նախատեսում են ՍՄԿԿ պատմության ու ծրագրի, որպես սովետական հասարակարգի ղեկավար և ուղղություն տվող ուժի՝ մեր կուսակցության դերի, կոմունիզմի կառուցման ասպարեզում ՍՍՀՄ աշխատողների նվաճումների, համաշխարհային սոցիալիստական լագերի երկրների աշխատավորների հաջողությունների, սովետական զինված ուժերի առանձնահատկությունների, նրանց բնույթի ու նշանակության, զինվորական երդման ու կանոնադրությունների ուսումնասիրությունը։ Քաղաքական պարապմունքներում չափազանց լուրջ ուշադրություն է հատկացվում ՍՄԿԿ XXIII համագումարի, կուսակցության Կենտրոնական կոմիտեի պլենումների որոշումների ուսումնասիրությանը, որոշումներ, որոնք բոլոր սովետական մարդկանց ամենօրյա գործողությունների ծրագիրն են։

Կարևոր հարց է սպաների գաղափարական-տեսական կոփվածության բարձրացումը։ Հրամանատարական կազմին մարքս-լենինյան տեսությամբ զինելը, այդ տեսությունը ստեղծագործաբար կիրառելու հմտության պատ-



վաստումը զինծառայողների հիմնական մասսայի՝ զինվորների ու սերժանտների հետ տարվող դաստիարակչական աշխատանքի հաջողության, հետևապես նաև սովետական բանակի մարտական հզորության ամրապնդման որոշող պայմանն է։

Սպաներին մարքս-լենինյան տեսությամբ զինելը, հրամանատարական պատրաստության անկապտելի մասն է։ Սպայի քաղաքական կրթության հիմնական մեթոդը ինքնուսուցումն է, որի ընթացքում նա, իր ընտրությամբ, կարող է ուսումնասիրել ՍՄԿԿ պատմությունը, դիալեկտիկական և պատմական մատերիալիզմը, քաղաքատնտեսությունը, մարքս-լենինյան ուսմունքը պատերազմի ու բանակի մասին, կուսակցության տեսության և պատմության այս կամ այն հարցը։ Ընդսմին, անկախ իր ընտրած առարկայից, յուրաքանչյուր սպա պետք է խորապես ուսումնասիրի ՍՄԿԿ ծրագիրը, կուսակցության XXIII համագումարի և Կենտկոմի հետագա պլենումների որոշումները։

Զորամասերում սպաների մարքս-լենինյան պատրաստության խմբերը կոմպլեկտավորելիս հաշվի են առնվում սպաների ընտրած առարկաները, որոնց ուսումնասիրումը կատարվում է գլխավոր քաղաքական վարչության հանձնարարականների հիման վրա ամբողջ ուսումնական տարվա համար կազմվող պլաններով։ Այդ խմբերում դասախոսություններ են կարդում քաղբաժինների ու շտաբների բարձր որակյալ սպաներ, ռազմական և քաղաքացիական բարձրագույն ուսումնական հաստատությունների դասատուներ, տեղական կուսակցական ու սովետական կազմակերպությունների ներկայացուցիչներ։ Այդ ամենը նպաստում է ամրապնդելու պրոպագանդայի կապը անձնակազմի մարտական ու քաղաքական պատրաստության խնդիրների, տեղի արդյունաբերական ձեռնարկությունների և գյուղի աշխատավորների հետ։

Մեկ հոդվածում հնարավոր չէ լիովին բացահայտել զորքերում տարվող գաղափարական աշխատանքի ողջ բովանդակությունը։ Համառոտակի կանգ առնենք նրա գլխավոր բաղկացուցիչ մասերի՝ ագիտացիոն-մասսայական և կուլտուր-լուսավորական աշխատանքների վրա։ Խիստ բազմազան են այդ աշխատանքների ձևերն ու մեթոդները։ Դրանք են՝ քաղաքական ինֆորմացիան, զորամասի, ստորաբաժանման զինծառայողների ընդհանուր ժողովները, զինվորների ու սերժանտների հետ տարվող անհատական դաստիարակչական աշխատանքը, մարքսիզմ-լենինիզմի երեկոյան համալսարանները, գրադարանների և զորամասերի ակումբներին կից ստեղծված ամեն տեսակի խմբակները, կոմերիտական-երիտասարդական լեկտորիումները և այլն։ Բայց բոլոր այդ ձևերի ու մեթոդների նպատակը նույնն է՝ ռազմիկների կոմունիստական դաստիարակությունը, նրանց բարոյական ու մարտական բարձր հատկությունների ձևավորումը, մշտական պատրաստակամությունը՝ զենքը ձեռքին դուրս գալու ի պաշտպանություն հայրենիքի և լիովին խորտակելու ամեն մի ագրեսորի, որը կհանդգնի խանգարել կոմունիզմ ու սոցիալիզմ կառուցողների խաղաղ, ստեղծագործական աշխատանքը։

Զորքերում տարվող գաղափարական աշխատանքի ներկայումս նկատվող բացառիկ վերելքը արդյունք է Վլադիմիր Իլյիչ Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստման մասին ՍՄԿԿ Կենտկոմի որոշման, որը խոր արձագանք է գտել զինվորների, սերժանտների և սպաների սրտում, որոնց համար Վ. Ի. Լենինի անունը շատ թանկ է և անբաժանելիորեն կապված է սովետական զինված ուժերի կեսդարյա հերոսական պատմության հետ։ Այդ որոշումը զորեղ խթան է հանդիսացել սոցիալիստական հայրենիքի պաշտպանության վերա-

բերյալ լենինյան ավանդների օրինակելի կատարման համար ռազմիկներին մոբիլիզացնելու գործում։

Զորամասերում ու ստորաբաժանումներում ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում սոցիալիստական մրցությունն՝ այդ մեծ տարելիցն արժանավայել դիմավորելու համար, ուժեղանում է աշխատանքը բոլոր կոմունիստների մարքս-լենինյան կրթության ասպարեզում, օրեցօր բարձրանում է անձնակազմի քաղաքական ու ստեղծագործական ակտիվությունը։ Դա առանձնապես ցայտուն է դրսևորվում, օրինակ, առաջատար մոտո-հրաձգային այն գնդի ստորաբաժանումներում, որի հրամանատարի քաղաքական մասի գծով տեղակալն է փոխգնդապետ Ա. Իվաշինը։ Այդ զորամասը մեր օկրուգում առաջինը մտավ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի պատվին ծավալված սոցիալիստական մրցության մեջ և արդեն նկատելի հաջողությունների է հասել։ Անձնակազմը պատվով կատարեց լենինյան հերթափոխության առաջին փուլում ստանձնած պարտավորությունները և վստահ քայլեր է անում ուսման ու ծառայության մեջ ավելի բարձր սահմանագծերի հասնելու ճանապարհին։

Բնորոշ է այդ գնդում ծնունդ առած նախահոբելյանական նախաձեռնության սկզբնաղբյուրը։ Մեծ հոբելյանի նախապատրաստման սկիզբն այնտեղ նշանավորվեց լենինյան տեսական ժառանգության պրոպագանդման զգալի ուժեղացմամբ։ Ռազմիկների մեջ առանձնապես մեծ հետաքրքրություն առաջացրեց Վ. Ի. Լենինի «Մեծ նախաձեռնություն» հոդվածը, որի հեղափոխական պաթոսն ու ստեղծագործական ոգին լիովին համապատասխանում են ամբողջ անձնակազմի խոհերին և հայրենասիրական ձգտումներին։ Վլադիմիր Իլյիչի այդ և մյուս աշխատությունների խոր ուսումնասիրությունը բոլոր զինվորների և սերժանտների շրջանում առաջացրին բարձր ոգևորություն, լենինյան հոբելյանը մարտական ու քաղաքական պատրաստության նոր նվաճումներով դիմավորելու ջերմ ձգտում։

Այդ զորամասի հրամանատարների, քաղաշխատողների, կուսակցական ու կոմերիտական ակտիվիստների գործունեության մեջ շատ կարևոր է համոզման մեթոդի հմուտ օգտագործումը։ Զորամասում խորապես հիմնավորվում և բազմակողմանիորեն պարզաբանվում է հոբելյանական սոցիալիստական մրցությունում դրված զանազան խնդիրների հաջող լուծման անհրաժեշտությունը, որի շնորհիվ գիտակցորեն հաղթահարվում են եղած դժվարությունները, մարդիկ իրենց զինվորական պատվի գործն են համարում ստանձնած պարտավորությունների կատարումը։

Զորքերում խիստ նկատելի է մարդկանց հետ տարվող կուսակցական-քաղաքական աշխատանքի այնպիսի նոր ձևեր ու մեթոդներ փնտրելու ձգտումը, որոնք թափանցեն ռազմիկի ոչ միայն սիրտն ու հոգին, այլև արձագանքող մտքեր ու զգացումներ հարուցեն՝ Իլյիչի ծննդյան 100-ամյակը պատվով դիմավորելու համար։

Զորամասերում խորապես է ընթանում լենինյան աշխատությունների պրոպագանդան։ Կանոնավոր տեղի են ունենում պարապմունքները խմբակներում, դասախոսություններ ու զեկուցումներ են կարդացվում, անց են կացվում զրույցներ ու բանավեճեր, կազմակերպվում են լենինյան դասեր և լենինյան ընթերցումներ, հանդիպումներ կուսակցության, քաղաքացիական և Հայրենական մեծ պատերազմների վետերանների հետ, ամենուրեք նորացվել են դիտողական ագիտացիան, գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվների ռեպերտուարները։



Զորքերում տարվող կուսակցական-քաղաքական աշխատանքի գաղափարական մակարդակի բարձրացման համար հարուստ հնարավորություններ են ներկայացնում ռազմիկների մշտապես ամրապնդվող կապերն իրենց ժողովրդի հետ։ Զինված ուժերի անձնակազմը բարձր է գնահատում ժողովրդի սերն ու աջակցությունը, որտեղից վերցնում է իր ուժն ու խանդավառությունը՝ անձնվիրաբար ծառայելու հայրենիքին, օրինակելիորեն կատարելու իր հայրենասիրական պարտքը։

Միասնական են մեր բանակի ու ժողովրդի նպատակները, ընդհանուր են նրանց շահերը։ Դրանով էլ բացատրվում է նրանց օրգանական, անքակտելի միասնությունը։ Կարելի է բերել մեր կարմրադրոշ օկրուգի ռազմիկների ու Անդրկովկասի հանրապետությունների աշխատավորների բարեկամական սերտ կապերի բազմաթիվ օրինակներ։ Այդ կապերը ստեղծվել և ամրապնդվել են օկրուգի ողջ պատմության ընթացքում։ Դրանց ակունքները տանում են դեպի այն բոցաշունչ տարիները, երբ կարմիր բանակը, բանվորներն ու գյուղացիները համատեղ կռվում էին Ադրբեջանում, Հայաստանում և Վրաստանում սովետական իշխանության հաստատման համար։

Կարմիրբանակայինների վարքն ու վարվելակերպն այնպես պետք է լինեն, ասված է Հայաստան մտնող 11-րդ բանակի հրամանատարության մի հրամանում, որ ամբողջ ժողովուրդը սիրով ու հարգանքով համակվի ժողովուրդների ազատության, եղբայրության և հավասարության գաղափարների պաշտպան կարմիր բանակի նկատմամբ։

Ռազմիկները սրբությամբ էին կատարում այդ հրամանը։ Խոսքով ու գործով նրանք Անդրկովկասի աշխատավորներին ոտքի էին հանում նոր կյանքի կառուցման, պատերազմից ավերված ժողովրդական տնտեսության վերականգնման համար, աշխատավոր մասսաներին էին ներարկում մարքսիզմ-լենինիզմի, ժողովուրդների բարեկամության և եղբայրության գաղափարները։ Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի աշխատավորներն իրենց հերթին անում էին ամեն ինչ, որպեսզի զորքերի մարտական ուսուցման համար ստեղծեն անհրաժեշտ պայմաններ։

Այն սերտ կապի օրինակներով, որ Հայրենական պատերազմի առաջին իսկ օրերից ստեղծվել էր զենքը ձեռքին կռվող Անդրկովկասի պաշտպանների և թիկունքում իրենց անձնուրաց աշխատանքով թշնամու ջախջախմանը նպաստողների միջև, կարելի է մի անգամ ևս համոզվել, որ մեր ժողովուրդն ու բանակը կազմում են միասնական մի ընտանիք։

Ետպատերազմյան տարիներին զգալիորեն ընդլայնվեցին և ամրապնդվեցին Անդրկովկասի կարմրադրոշ զինվորական օկրուգի անձնակազմի կապերը անդրկովկասյան հանրապետությունների աշխատավորների հետ։ Զորքերում հաստատ կանոն է դարձել մշտական կապ պահպանել տեղական կուսակցական, սովետական, կոմերիտական ու արհմիութենական մարմինների, ԴՕՍԱԱՖ-ի կազմակերպությունների, արդյունաբերական ձեռնարկությունների ու դպրոցների, կոլտնտեսությունների ու սովխոզների միջև։

Օկրուգի ռազմական խորհուրդը գոհունակությամբ է նշում, որ զորքերին հաճախ են այցելում Հայաստանի կոմկուսի Կենտկոմի առաջին քարտուղար Ա. Ե. Քոչինյանը, Հայկական ՍՍՀ Մինիստրների սովետի նախագահ Բ. Հ. Մուրադյանը, ՀՍՍՀ Գերագույն սովետի նախագահության նախագահ Ն. Ք. Հարությունյանը։ Նրանց կարևոր խորհուրդներն ու ցանկությունները, ան-

շուշտ, զգալի օգուտ են բերում անձնակազմի ուսուցման և դաստիարակության գործին։

Զինվորների, սերժանտների և սպաների առջև պարբերաբար հանդես են գալիս Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի կոմկուսակցությունների կենտրոնական կոմիտեների ու կառավարությունների ղեկավար աշխատողները, հանրապետությունների լավագույն պրոպագանդիստները, որոնք ռազմիկներին ծանոթացնում են կոմունիստական շինարարության գործում ձեռք բերած նվաճումներին, այն շրջանների հետագա զարգացման հեռանկարներին, որտեղ իր ծառայությունն անց է կացնում անձնակազմը։

Զինծառայողներին սովետական հայրենասիրության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու գործում մեծ դեր են խաղում հանդիպումները հին բոլշևիկների՝ Անդրկովկասում սովետական իշխանության հաստատման մարտիկների, քաղաքացիական պատերազմի և Հայրենական մեծ պատերազմի վետերանների հետ։

Ռազմիկների առաջ հաճախ են հանդես գալիս լենինյան գվարդիայի վետերան՝ ադրբեջանցի բոլշևիկ Մուսա Ազաևը, «Հոկտեմբերյան հեղափոխության մարտական ջոկատի» նախկին պետ Փ. Ա. Շավիշվիլին, Սովետական Միության հերոսներ Յա. Կ. Իոսելիանին, Ե. Գ. Գոբերիձեն, Գ. Ա. Միքայելյանը, պահեստի գեներալներ Մ. Մ. Նազարովը և Ն. Ի. Կալաբաձեն, պաշտոնաթող գնդապետ Ա. Ա. Կոտելենկոն և ուրիշ շատերը։

Անկասկած մեծ է այդ հանդիպումների, վետերանների պատմածների ազդեցությունը ռազմիկների վրա։ Դրանք նպաստում են զինվորների ու սերժանտների մեջ բարոյական ու մարտական բարձր հատկությունների դաստիարակմանը, սխրագործության, հայրենիքի հանդեպ պարտքն օրինակելիորեն կատարելու ձգտում են հարուցում նրանց մոտ։

Անդրկովկասյան հանրապետությունների աշխատավորների հետ ռազմիկների կապերի ամրապնդման գործում խիստ կարևոր նշանակություն ունի զինծառայողների ակտիվ մասնակցությունը կուսակցական ու սովետական մարմինների աշխատանքին։ Այսպես, Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի կոմկուսակցությունների կենտրոնական կոմիտեների կազմում կան 11 գեներալներ ու սպաներ, զինծառայողներից 14-ն ընտրվել են գերագույն սովետների դեպուտատներ, սովետական բանակի հարյուրավոր գեներալներ, սպաներ, զինվորներ, սերժանտներ ու զինծառայողներ տեղական սովետների դեպուտատներ են։

Դեպուտատ-ռազմիկները մասնակցում են հանրապետությունների, մարզերի ու շրջանների աշխատավորների կողմից լուծվող հարցերի քննարկմանը, ագիտացիոն-պրոպագանդիստական մեծ աշխատանք են տանում բնակչության շրջանում։

Զինծառայողների դաստիարակման գործում կարևոր տեղ է բռնում նաև Անդրկովկասի արվեստի ու կուլտուրայի գործիչների շեֆությունը Անդրկովկասյան կարմրադրոշ զինվորական օկրուգի զորքերի նկատմամբ։

Այդ կազմակերպություններն առանձնապես մեծ ավանդ են մուծում Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի նախապատրաստման գործում, մշակել են ընդարձակ ծրագիր-միջոցառումներ, որոնք կուլտուրայի աշխատողները կանցկացնեն զորամասերում՝ լենինյան հոբելյանի կապակցությամբ։ Այդ պլանի կատարման ուղղությամբ ակտիվ գործունեություն են ծավալում դասախոսները, հանրապետության գրողների, ժուռնալիստների, կինեմատոգրաֆիստների, նկարիչների և կոմպոզիտորների միությունների անդամները, Հայաստանի թատերական ու երգչախմբային ընկերությունները, ռադիոն ու հեռուստատեսությունը, թատրոններն ու համերգային կազմակերպությունները։



Անդրկովկասյան կարմրադրոշ զինվորական օկրուգի զորքերի կուլտուրական շեֆության կարգով մեծ աշխատանք են կատարում նաև Ադրբեջանի և Վրաստանի կուլտուրայի աշխատողները։

Ռազմիկները բարձր են գնահատում այդ ամենը և աշխատում են պարտքի տակ չմնալ տեղական բնակչության առաջ։ Բանակային լավագույն պրոպագանդիստները դասախոսություններով ու զեկուցումներով հաճախ են հանդես գալիս բանվորների ու կոլտնտեսականների առաջ, կուսակցական և կոմերիտական ակտիվիստները գործուն օգնություն են ցույց տալիս դպրոցներին, զինվորական կոմիսարիատներին՝ երիտասարդների ռազմա-հայրենասիրական դաստիարակության գործում։

Ռազմիկների ակտիվ մասնակցությամբ Ադրբեջանի, Հայաստանի և Վրաստանի շատ դպրոցներում ստեղծվել են ռազմա-տեխնիկական խմբակներ, մարտական փառքի անկյուններ ու սենյակներ, գործում են բանակի պատանի բարեկամների ջոկատները, ռազմա-սպորտային ճամբարները։

Մեր կարծիքով, միանգամայն օգտակար է տեղական ընկերների հետ զորքերի կապի այնպիսի ձևը, ինչպիսին են քաղաքների և կայազորների զորամասերի կոմերիտական ակտիվիստների համատեղ սեմինարները։ Այդ սեմինարներում ակտիվիստները կատարում են երիտասարդությանը կուսակցության, ժողովրդի և զինված ուժերի հեղափոխական, աշխատանքային ու մարտական տրադիցիաներով դաստիարակելու, նրանց հայրենասիրական լավագույն հատկություններ պատվաստելու փորձի փոխանակում։

Տեղական կուսակցական ու սովետական մարմինների հետ սերտ համագործակցությամբ են աշխատում Անդրկովկասի հանրապետությունների, մարզերի ու շրջանների զինվորական կոմիսարիատները։ Նրանք համատեղ քննարկում են երիտասարդներին կցագրելու և բանակ զորակոչելու, պահեստային ռազմիկներին աշխատանքի տեղավորելու հարցերը, հրավիրում են զորակոչիկների ընդհանուր ժողովներ, կազմակերպում նրանց հանդիպումները մարտական ու քաղաքական պատրաստության գերազանցիկների հետ, կազմակերպում են ՍՍՀՄ զինված ուժերի շարքերը զորակոչված երիտասարդների հրաժեշտի հանդիսավոր հավաքներ։

Նշված ձևերով ու մեթոդներով, անշուշտ, չի սահմանափակվում Անդրկովկասի աշխատավորների հետ ռազմիկների բարեկամական կապերի բազմազանությունը։ Ուզում ենք ընդգծել մի բան. Անդրկովկասյան կարմրադրոշ զինվորական օկրուգի անձնակազմի բարեկամությունն իրենց ադրբեջանցի, հայ ու վրացի եղբայրների հետ, ինչպես և ամբողջ սովետական բանակի բարեկամությունը ժողովրդի հետ, աճում և ընդլայնվում է օրեցօր։ Այն անսահման է, ինչպես անսահման է մեր երկրի աշխատավորների սերը դեպի հայրենիքի զինված պաշտպանները և ռազմիկների որդիական մտերմությունը իրենց ժողովրդի հետ։



# ՄԻԱՀԱՄՈՒՌ ՀԱՎԱՆՈՒԹՅԱՆ ՆՇԱՆԱԲԱՆՈՎ

**Վ. Մ. ԹՈՎՄԱՍՅԱՆ**

ՀԿԿ Հոկտեմբերյանի շրջկոմի առաջին քարտուղար

*Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցությունը ընթացիկ տարվա ամենախոշորագույն քաղաքական իրադարձությունն էր ոչ միայն մեր երկրում, այլև ամբողջ աշխարհում։ Դիմելով խորհրդակցության մասնակիցներին, ընկ. Լ. Ի. Բրեժնևը իր բացման ճառում ասաց. «Մեր կուսակցությունը և ամբողջ սովետական ժողովուրդը բարձր են գնահատում այն վստահությունը, որ դուք ցույց եք տալիս կոմունիստների միջազգային համաժողովի մեր մայրաքաղաքում՝ Մոսկվայում, անցկացնելու ձեր որոշումով»։*

*Խորհրդակցության ամբողջ ընթացքը ցույց տվեց, որ ավելի քան ուժեղացել է կոմունիստական ու բանվորական կուսակցությունների համախմբվածությունը, մերձեցել են ընդհանուր նպատակն արտահայտող նրանց հայացքները։*

*Խորհրդակցությունը միաժամանակ անգնահատելի ավանդ մուծեց մարքս-լենինյան տեսության մեջ։ Նրա մասնակիցները խոր և հանգամանորեն վերլուծեցին համաշխարհային զարգացման արդի վիճակն ու հնարավորությունները, օբյեկտիվորեն գնահատեցին նաև սոցիալական հարաբերությունների զարգացման հեռանկարները։*

*Խորհրդակցության քաղաքական վիթխարի նշանակությունը որոշվում է այն պատմական փաստաթղթերով, որոնք ընդունվեցին միջազգային կոմունիստական ու բանվորական շարժման, ամբողջ մարդկության ճակատագրին վերաբերող հրատապ հարցերի առթիվ։* Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի խնդիրներն արդի փուլում և կոմունիստական ու բանվորական կուսակցությունների հակաիմպերիալիստական բոլոր ուժերի գործողությունների միասնությունը *Հիմնական փաստաթղթում արձանագրված է այն անհերքելի փաստը, որ համաշխարհային զարգացման գլխավոր ուղղությունն առավելապես որոշում են հեղափոխության և սոցիալիզմի, խաղաղության և ազգային-ազատագրական ուժերը։ Ելնելով համաշխարհային զարգացման, իմպերիալիզմի ագրեսիվ քաղաքականության էության ու հնարավոր հետևանքների մարքս-լենինյան վերլուծությունից, խորհրդակցությունն ընդգծեց իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում երեք հիմնական հեղափոխական ուժերի՝ սոցիալիզմի համաշխարհային սիստեմի, միջազգային բանվոր դասակարգի, ազգային-ազատագրական շարժման առավել համախմբման անհրաժեշտությունը։*



*Խորամուխ լինելով փաստաթղթի տեսական դրույթներում, համոզվում ես, որ սոցիալիզմի համաշխարհային սիստեմը հակաիմպերիալիստական պայքարի վճռական ուժն է, կապիտալիզմի միջնաբերդում բանվոր դասակարգը հեղափոխական պայքարի, դեմոկրատական հակաիմպերիալիստական ամբողջ շարժման գլխավոր շարժիչ ու մոբիլիզացնող ուժը։ Հակաիմպերիալիստական պայքարի հեռանկարների համար առաջնահերթ նշանակություն ունի սոցիալիստական սիստեմի, բանվորական և ազգային-ազատագրական շարժումների դաշինքի ամրապնդումը։*

*Պատմական և քաղաքական խոշոր նշանակություն ունի նաև խորհրդակցության ընդունած դիմումը* Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի մասին, *որում մի անգամ ևս հաստատվում է կոմունիստների անխախտ հավատարմությունը լենինիզմին, ընդգծվում նրա միջազգային նշանակությունը։ Աշխարհի կոմունիստների, բոլոր խաղաղասեր մարդկանց ցանկությունները արտահայտված են խորհրդակցության փաստաթղթերում, որոնք ամենուրեք լայն արձագանքներ են գտնում։*

*Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցության արդյունքները քաղաքական նոր վերելք առաջ բերին մեր երկրի կոմունիստների և սովետական բոլոր մարդկանց շրջաններում։ Ինչպես միշտ, խորհրդակցության պատմական օրերին ևս մեր ժողովուրդը կրկին իր կուսակցության հետ էր, իր առօրյա գործունեությամբ, քաղաքական և աշխատանքային բարձր կազմակերպվածությամբ նպաստում էր խորհրդակցության բարձր մակարդակով անցկացմանը, իր միասնությունն ու կամքն արտահայտելով միջազգային կոմունիստական և բանվորական շարժման համախմբման և իմպերիալիզմի դեմ ընդհանուր ճակատով պայքարելու համար։*

*Մեր՝ Հոկտեմբերյանի շրջանի աշխատավորները նույնպես մեծ հետաքրքրությամբ հետևում էին կոմունիստական ու բանվորական կուսակցությունների մոսկովյան միջազգային խորհրդակցության ընթացքին։ Յուրաքանչյուր կոլեկտիվ, կուսակցական և սովետական կազմակերպություն հավանություն տալով խորհրդակցությունում ՍՄԿԿ պատվիրակության անգնահատելի գործունեությանը, նոր եռանդով լծվեցին իրենց հայրենանվեր գործերին՝ բարձր պահելով սոցիալիստական մրցության դրոշը։ Կանգնելով լենինյան աշխատանքային հերթափոխի, այժմ արտադրական կոլեկտիվները ընթանում են նոր հաջողությունների նվաճման ճանապարհով։*

*Մեր շրջանի կոմունիստները և բոլոր աշխատավորները քաջ գիտակցում են, որ իմպերիալիզմի դեմ հաղթական պայքար մղելու համար ամենից առաջ անհրաժեշտ է ավելի բարձրացնել ՍՍՀՄ տնտեսական ու պաշտպանական հզորությունը, զարգացնել արդյունաբերությունն ու գյուղատնտեսությունը։*

*Ելնելով դրանից՝ կուսշրջկոմը, ինչպես միշտ, կուսկազմակերպությունների, բոլոր արտադրական կոլեկտիվների ուշադրությունը և ստեղծագործական ջանքերն ուղղում է արդյունաբերական ապրանքների ու գյուղատնտեսական մթերքների արտադրության ավելացմանը, նրանց նպատակամղում լուրջ հաջողությունների։ Մեր 28 կոլտնտեսությունները և 10 սովխոզ-*

ները, որոնք տնտեսապես ամրապնդված են, շարունակում են գործել շա-
հավետ եղանակով։ Այս տարի գարունը ուշացավ։ Հաշվի առնելով այդ,
շրջկոմը և սկզբնական կուսկազմակերպությունները քաղաքական-կազմա-
կերպական լուրջ ջանքեր գործադրեցին գյուղական աշխատավորության
շրջանում, մոբիլիզացնելով նրանց ուժերը գյուղատնտեսական բոլոր աշ-
խատանքները ժամանակին և բարձր որակով կատարելու։ Հունիսի 7-ի տվյ-
յալներով շրջանում հավաքվել է մոտ 72 հազար ցենտներ առվույտ, որի
ցանքատարածությունը, նախորդ տարվա համեմատությամբ, ընդարձակվել է
432 հեկտարով (200 հեկտարը ենթացանքի հաշվին) և հասել 2600 հեկ-
տարի։ Կերի կուտակման աշխատանքը, որ սկսված է առվույտի բերքահա-
վաքով, կշարունակվի մինչև հոկտեմբեր ամիսը ներառյալ։

Հացահատիկային կուլտուրաների մշակման բնագավառում նորությունն
այն է, որ այս տարվանից շրջանի բոլոր կոլտնտեսություններն անցել են
«Բեզոստայա—1» բարձր բերքատու ցորենի ցանքին։ Արդեն հնձված է 310
հեկտար հացահատիկ. յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 30,5 ցենտներ
բերք։ Մենք վստահ ենք, որ հացահատիկի միջին բերքատվությունը շրջա-
նում ավելի բարձր կլինի։

Այս տարի շատ տնտեսություններում պոմիդորի, վարունգի և այլ բան-
ջարաբոստանային կուլտուրաների ցանքը կատարվեց թաղարներով, ավելի
լավ կազմակերպվեց բույսերի սնուցումն ու դաշտերի պարարտացումը։ Այդ
ամենի շնորհիվ սպասվում է բարձր բերք։ Նախորդ տարվա համեմատու-
թյամբ, անշուշտ, զգալիորեն կաճի նաև խաղողի արտադրությունը։

Աչքի ընկնող հաջողություններ են ձեռք բերվել անասնաբուծական
մթերքների արտադրության ավելացման ասպարեզում։ Գյուղատնտեսական
մթերքների արտադրության զգալի ավելացումը հնարավորություն է ընձե-
ռել հաջողությամբ կատարելու դրանց վաճառքի սահմանված պլանները։
Մեր կոլտնտեսություններն ու սովխոզները արդեն պետությանը վաճառել
կամ հանձնել են միս՝ 3744 ց, կաթ՝ 16165 ց, բուրդ՝ 57550 կգ և ձու՝
1528970 հատ։ Չնայած տարվա բնակլիմայական անբարենպաստ պայման-
ներին, մի շարք տնտեսություններ հաջողությամբ են կատարում նաև
պտուղների վաճառքի առաջադրանքները։

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային
խորհրդակցության արդյունքները նոր լիցք հաղորդեցին նաև շրջանի ար-
դյունաբերական ձեռնարկությունների կոլեկտիվներին, որոնք ապահովեցին
արտադրական պլանների կատարումը՝ քանակական և որակական ցուցա-
նիշներով։ Աշխատանքի լավ կազմակերպման տեսակետից՝ուսանելի է պա-
հածոների գործարանի փորձը (դիրեկտոր՝ Կ. Պողոսյան, կուսկազմակեր-
պության քարտուղար՝ Յու. Ստեփանյան)։ Այս գործարանը, որ տալիս է
հանրապետության պահածոների արտադրության շուրջ 50 տոկոսը, տարի-
ներ շարունակ առաջավոր է ՍՍՀՄ սննդարդյունաբերության մինիստրության
սիստեմում։ Այստեղ միշտ գործնական պայքար է ընթանում ինչպես թո-
ղարկվող արտադրանքի ավելացման, այնպես էլ որակի բարձրացման հա-
մար, որը միշտ պսակվում է հաջողությամբ։ Ձեռնարկությունը 1966—1968
թվականներին անընդմեջ արժանացել է ՍՍՀՄ սննդարդյունաբերության
մինիստրության և ճյուղային արհմիութենական կենտկոմի փոխանցիկ կար-
միր դրոշին ու առաջին կարգի դրամական պարգևի։ 1968 թվականի երկրորդ
եռամսյակից մինչև այժմ կոլեկտիվն իր ձեռքում է պահում նաև ՍՍՀՄ Մի-



նիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի փոխանցիկ կարմիր դրոշը։ Այս ամենը
պայմանավորված է նրանով, որ գործարանում արմատավորվել են աշխա-
տանքի կազմակերպման նոր մեթոդներ, գործարկվել են հոսքային նոր գծեր,
մեքենայացվել մի շարք աշխատատար պրոցեսներ, բարելավվել է արտա-
դրության կուլտուրան։ Գործարանի կուսակցական կազմակերպությունն
ավելի մոտիկից է զբաղվում արտադրության հարցերով, սիստեմատիկաբար
վերահսկում է ադմինիստրացիայի գործունեությունը և լուրջ հոգում կո-
լեկտիվի կուլտուրական հանգստի կազմակերպման համար։

Շնորհիվ այս ամենի, պահածոների գործարանը ընթացիկ տարվա կիս-
ամյակի պլանը կատարել է 109 տոկոսով. պլանով նախատեսված 3,9 մի-
լիոնի փոխարեն արտադրվել է 4,35 միլիոն պայմանական տուփ պահածո։

Իրենց արտադրական ցուցանիշներով աչքի են ընկնում նաև կոնյակի,
գինիների, գարեջրի գործարաններն ու ոռմնանյութերի տրեստը, որոնք սիս-
տեմատիկաբար կատարում և գերակատարում են պլանային առաջադրանք-
ները։ Պտուղների և հատապտուղների կոմբինատը միայն անցյալ տարի
յուրացրել է երկու արտադրատեսակներ՝ հաստոցաշինականը՝ մեկ, պահա-
ծոներինը՝ երկու և այլն։ Ընթացիկ տարում պահածոյագործները կյուրաց-
նեն ևս երեք նոր տեսակի արտադրանքի արտադրության տեխնոլոգիան։

Արդյունաբերական ձեռնարկությունների և կառույցների կոմունիստ-
ները, բոլոր աշխատավորները լարում են իրենց ջանքերը՝ արտադրության
հետագա վերելքն ապահովելու համար։ Նրանք վճռել են կատարելագործել
արտադրատեսակները, բարձրացնել դրանց որակը։

Հոկտեմբերյանի շրջանի կոմունիստներին, բոլոր աշխատավորներին
շատ է ոգեշնչում կոմունիստական ու բանվորական կուսակցությունների
միջազգային խորհրդակցության դիմումը, որը նվիրված է մեր կուսակցու-
թյան ու սովետական պետության հիմնադիր, համայն աշխարհի աշխատա-
վորության առաջնորդ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակին։ Այդ դիմումը,
ինչպես նաև Մոսկվայի խորհրդակցության մյուս փաստաթղթերը աշխա-
տանքային նոր վերելք են առաջացրել։ Շրջկոմը և կուսակցական կազմա-
կերպությունները ջանում են ավելի լավ գլխավորել աշխատավորների շր-
ջանում առաջացած քաղաքական և արտադրական աննախընթաց վերելքը,
ամրապնդել և բազմապատկել ձեռք բերված տնտեսական հաջողություննե-
րը։ Իսկ դրան կարելի է հասնել կուսակցական-կազմակերպական և գաղա-
փարական-դաստիարակչական աշխատանքի հետագա ուժեղացմամբ։

Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային
խորհրդակցության և ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի նյութերը մենք
մասսայականացնում ենք նախօրոք մշակված պլանով։ Սկզբում այդ փաս-
տաթղթի հետ ծանոթացրել ենք կուսակցական ակտիվին, բոլոր ղեկավար
աշխատողներին։ Այժմ, երբ արդեն խորհրդակցության և Կենտկոմի հունիս-
յան պլենումի արդյունքները քննարկվել են շրջանի կուսակցական ակտիվի
և, ապա, սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում ու ամե-
նուրեք արժանացել միահամուռ, ջերմ հավանության, մենք ձեռնամուխ ենք
եղել դրանց մասսայականացմանը աշխատավորական լայն մասսաների
շրջանում։ Դրա համար մոբիլիզացված են կուսակցական ամբողջ ակտիվը,
շրջկոմի արտահաստիքային դասախոսները, Գիտելիք ընկերության ան-
դամները, քաղինֆորմատորները, մամուլի և ռադիոյի աշխատողները, ողջ
մտավորականությունը։

Խորհրդակցության նյութերի պրոպագանդումն ու պարզաբանումը նպաստում է բանվորների և կոլտնտեսականների ստեղծագործական ուժերի մոբիլիզացմանը, արտադրական պլանների, Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առթիվ ստանձնած պարտավորությունների կատարմանը։

Կոմունիստական շինարարության արդի էտապում, իմպերիալիզմի և օպորտունիզմի դեմ մղվող գաղափարական պայքարում կարևոր նշանակություն է ստանում քաղաքական ինֆորմացիայի բարելավումը։ Ահա թե ինչու առավել լուրջ ուշադրություն դարձնելով մարդկանց քաղաքական զինման գործին, աշխատանքի նկատմամբ նրանց կոմունիստական վերաբերմունքի ոգով դաստիարակելու հարցերին, շրջանի պրոպագանդիստներն ու ագիտատորները իրենց բեղմնավոր գործունեությամբ օգնում են գյուղի աշխատավորության քաղաքական և արտադրական ակտիվության բարձրացմանը։ Գաղափարական աշխատանքի պրոցեսում հանգամանորեն պարզաբանվում են բարդ հարցերը, մերկացվում բուրժուական պրոպագանդայի կեղծ բնույթը, տեսականորեն բացատրվում իմպերիալիզմի պատմական դատապարտվածությունը։ Հաշվի առնելով այն հանգամանքը, որ կուսակցական ուսուցման ցանցում ուսումնական տարին արդեն ավարտված է, շրջանի կուսկազմակերպություններում ստեղծվել են 100-ից ավելի հատուկ խմբակներ և սեմինարներ, որտեղ կոմունիստները և բոլոր աշխատավորները ուսումնասիրում են կոմունիստական ու բանվորական կուսակցությունների միջազգային խորհրդակցության փաստաթղթերը և ՍՄԿԿ Կենտկոմի հունիսյան պլենումի որոշումը։ Այդ պարապմունքներն անցնում են ունկնդիրների ակտիվ մասնակցությամբ, ներազդում մարդկանց քաղաքական տրամադրությունների վրա, հարուցում հայրենանվեր աշխատանքի, դժվարությունները հաղթահարելու պատրաստակամություն։

Խորհրդակցության նյութերի պրոպագանդումը պրոպագանդիստներից, գաղափարական ճակատի բոլոր աշխատողներից պահանջում է լուրջ պատրաստականություն։ Եվ դա հասկանալի է։ Հիմնական փաստաթղթի տեսական դրույթները լայն մասսաներին հրամցնելը այնքան էլ դյուրին գործ չէ։ Ակամա հիշում ես պրոպագանդիստների մասին Վ. Ի. Լենինի խոսքերի խոր իմաստը։ Նրանք իրենց գիտելիքներով,— ասել է Վլադիմիր Իլյիչը,— պետք է բարձր լինեն ունկնդիրներից, պետք է շատ կարդան, զարգանան և զարգացնեն ուրիշներին, զարգանան քաղաքականապես և այն ժամանակ ամբողջ աշխատանքը հաճելի կլինի։

Գաղափարական ճակատը կոմունիզմի մեծ իդեալների, նոր մարդու ձևավորման համար մղվող պայքարի ճակատ է, իսկ պրոպագանդիստները կուսակցության գաղափարական զինվորներն են, որոնց գործունեությանը կուսշրջկոմը մեծ պահանջներ է ներկայացնում։ Մեր ժամանակներում գաղափարական պայքարը դասակարգային պայքարի ամենասուր ճակատն է,— ասել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ Մոսկվայի քաղաքային կազմակերպության XIX կոնֆերանսում արտասանած իր ճառում։— Այդ պայքարի մեջ չեն կարող լինել քաղաքական անտարբերություն և պասսիվություն, չեզոքություն թշնամու նպատակների հանդեպ։ Մեր կուսակցությունը միշտ նախազգուշացրել է, որ գաղափարախոսության բնագավառում չի կարող լինել խաղաղ գոյակցություն, ինչպես որ չի կարող լինել դասակարգային հաշտություն պրոլետարիատի և բուրժուազիայի միջև։ Հենց դրա համար էլ ՍՄԿԿ Կենտկոմը կուսակցական կազմակերպություններից պահանջում է



անհաշտ պայքար մղել թշնամական գաղափարախոսության դեմ, ուժեղացնել կուսակցության անդամների և բոլոր աշխատավորների կոմունիստական դաստիարակությունը։

Բուրժուական գաղափարախոսությունը միշտ ձգտել ու ձգտում է մթագնել աշխատավոր մարդկանց, հատկապես երիտասարդության գիտակցությունը, նրանց մեջ թուլացնել հեղափոխական ավանդույթները։ Ուստի, այսօր առավել կարևոր խնդիր է՝ բարձրացնել երիտասարդության շրջանում տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքների մակարդակը, լավ օգտագործել պրոպագանդման միջոցները։ Ներկայումս քաղուսուցման բոլոր խմբակների և սեմինարների ամենակարևոր թեման Մոսկվայի խորհրդակցության արդյունքներն են։ Ամենուրեք կոմունիստները և կոմերիտականները, քննարկելով այդ փաստաթղթերը, վերստին ջերմ հավանություն են տալիս ՍՄԿԿ Կենտկոմի և սովետական կառավարության արտաքին քաղաքականության գծին, որը կարևոր դեր է խաղում հակաիմպերիալիստական պայքարում, սոցիալիզմի ուժերի համախմբման գործում։

Երիտասարդության դաստիարակման գործին մեծապես նպաստում են նաև գաղափարապես հագեցած, նպատակային միջոցառումները, որոնց արժանի տեղ է տրվում մեզ մոտ։ Բոլոր գյուղերում և ավաններում, հատկապես Հոկտեմբերի, Բամբակաշատի, Նալբանդյանի, Գետաշենի կոլտնտեսություններում, «Լենուղի», «Նաիրի», Մյասնիկյանի անվան սովխոզներում և այլուր երիտասարդության նախաձեռնությամբ և ուժերով կազմակերպվում են թեմատիկ երեկոներ, հանդիպումներ նշանավոր մարդկանց հետ, բնական և հասարակական գիտություններին նվիրված դասախոսություններ և զրույց-զեկուցումներ։

Խրախուսելի աշխատանք են կատարում հասարակական հիմունքներով գործող Հայ ժողովրդի պատմության, Լենինը հավերժ մեզ հետ է, Լենինը հավերժ ապրում է համալսարանները, որոնց նպատակասլաց և օգտակար գործունեությունը նպաստում է երիտասարդության քաղաքական-գաղափարական դաստիարակությանը, ապահովում նրանց կուլտուրական ժամանցը։

Լենինյան կուսակցության և մեր ժողովրդի հեղափոխական ու աշխատանքային պանծալի ավանդույթները երիտասարդության դաստիարակության հիանալի դպրոց են, նրանց վառ երազների ու ձգտումների, պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության, սխրանքի և հզորացման անսպառ աղբյուր։

Շրջանի արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում ու սովխոզներում մարդիկ կանգնել են լենինյան աշխատանքային հերթափոխի, ձգտում են արժանի գործերով դիմավորել Վ. Ի. Լենինի ծննդյան պանծալի 100-ամյակը։ Կառուցման և ստեղծագործման այն ոգին, որ համակել է աշխատավորության լայն զանգվածներին, հնգամյակի չորրորդ տարվա բոլոր առաջադրանքների հաջող կատարման, տնտեսական և քաղաքական նոր հաջողությունների հուսալի երաշխիքն է։



# ԳԻՏԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ՏՆՏԵՍԱԿԱՆ ՌԵՖՈՐՄԸ

*Գիտատեխնիկական առաջադիմության հիմնական էությունը ձեռքի աշխատանքը մեքենայականով փոխարինելն է, դրա մակարդակի սիստեմատիկ բարձրացումը (կիրառելով կիսաավտոմատ և ավտոմատ մեքենաներ ու սարքեր), արդյունքի ստացման համար նոր, որակյալ նյութերի օգտագործումը, տեխնոլոգիայի և աշխատանքի կազմակերպման արդյունավետ ձևերի կիրառումը։ Գիտատեխնիկական առաջադիմության արդյունավետությունը գործնականում արտահայտվում է հասարակական աշխատանքի տնտեսումով և արտադրողների ֆիզիկական ու մտավոր գործունեության լարվածության նվազմամբ։*

*Տեխնիկական առաջադիմության վրա անմիջական ազդեցություն է ունենում գիտությունը։ Վերջինս ներկա էտապում ունենալով կիրառական խոշոր մասշտաբներ, ավելի մեծ ծավալով է վերածվում արտադրաուժի։ Եթե անցյալում գիտությունը կոչված էր առավել հեշտացնելու ֆիզիկական ծանր աշխատանքը, ապա ներկայումս այն դառնում է լավագույն միջոց նաև թեթևացնելու հար կրկնվող և հոգնեցուցիչ մտավոր աշխատանքը։*

*Երկրի տնտեսական զարգացումը պայմանավորված է գիտատեխնիկական առաջադիմության տեմպերով։ Դրա ազդեցության շնորհիվ փոփոխվում և բարելավվում են նաև ժողովրդատնտեսական ճյուղերի կառուցվածքը, կիրառվող սարքավորումները, օգտագործվող նյութերը, արտադրության տեխնոլոգիան, առաջ են գալիս ու զարգանում արտադրության նոր ճյուղեր և այլն։*

*Մարդկային հասարակության զարգացման բոլոր էպոխաներում տեխնիկական առաջադիմությունը միշտ ունեցել է իր առաջնային տեղը։ Եվ իրոք, այժմ արդյունքի ստեղծման առնչությամբ արդյունաբերության զարգացումը բնութագրվում է ո՛չ թե ծախսված աշխատանքի քանակով, այլ գիտության և տեխնիկայի զարգացման մակարդակով։ ՍՄԿԿ Կենտկոմի սեպտեմբերյան (1965 թ.) պլենումը նշեց, որ ներկայումս մեր արդյունաբերությունը գտնվում է իր զարգացման այնպիսի շրջանում, որի աճի տեմպերն ավելի շատ պայմանավորվում են տեխնիկական առաջադիմության ու գիտության նվաճումներով։ Այժմ դրանք են գլխավոր շարժիչ ուժերը երկրի*



*էկոնոմիկայի բարձրացման գործում և դրանք են հիմնականում որոշում նրա տեղը համաշխարհային էկոնոմիկայում։ Համաշխարհային առկա երկու սիստեմների մրցման բոլոր ոլորտներում որոշիչ դերը պատկանում է գիտատեխնիկական առաջադիմությանն ու դրա զարգացման տեմպերին, որոնք Սովետական Միությունում մի քանի անգամ բարձր են, քան որևէ կապիտալիստական զարգացած երկրում։*

*Մեր երկրում գիտատեխնիկական առաջադիմությունը, վերջին հաշվով, ուղղված է ժողովրդի կենսամակարդակի բարձրացմանը և երկրի պաշտպանության ամրապնդմանը։ Ներկայումս ժողովրդական տնտեսության մեջ նոր տեխնիկայի ստեղծման և ներդրման պրոցեսն առավել արագ է։ Միության մեջ տարեկան ստեղծվում են հազարավոր նոր տիպի մեքենաներ և կատարվում հարյուրավոր գիտական հայտնագործություններ։ Միայն վերջին տասը տարում երկրի գիտահետազոտական ինստիտուտների, նախագծող և կոնստրուկտորական կազմակերպությունների կողմից ստեղծված են ավելի քան 29 հազար նոր տիպի մեքենաներ և սարքավորումներ, 10 հազար սարքեր և այլն։ Յուրաքանչյուր տարի արդյունաբերական ձեռնարկություններում ներդրվում են մոտ 6 հազար տեխնոլոգիական հոսքային գծեր։ Հաշվարկված է, որ մեր երկրում, միջին հաշվով, աշխատանքի արտադրողականության բարձրացման 70 և արդյունաբերական արտադրանքի ինքնարժեքի իջեցման մոտ 50 տոկոսն արդյունք են գիտատեխնիկական առաջադիմության։ Ընդորում, ժողովրդատնտեսական տարբեր ճյուղերում այդ ցուցանիշները տարբեր են։ Դրանից հետևում է, թե ինչպիսի մեծ կարևորություն ունի ժողովրդատնտեսական ճյուղերի գիտատեխնիկական առաջադիմության զարգացման ուղու ճիշտ ընտրումը և երկրի մասշտաբով դրա ներդաշնակ զարգացման գիտական պլանավորումը։*

*Ժողովրդատնտեսական կոնկրետ պահանջներից ելնելով, տեխնիկական բարձր մակարդակով մեքենաների ու սարքավորումների նախագծումը և յուրացումը զգալի չափով խթանում են տեխնիկական առաջադիմության զարգացմանը և երկրի էկոնոմիկայի բարձրացմանը։ Սակայն, գործնականում արտադրության մեջ կարելի է հանդիպել նոր նախագծված և թողարկված շատ մեքենաների ու սարքավորումների, որոնք, այնուամենայնիվ, չեն բավարարում ժողովրդատնտեսական պահանջները և չեն տալիս անհրաժեշտ արդյունավետություն։ Օրինակ, ուսումնասիրված է, որ արդյունաբերության մեջ շատ տարածված ունիվերսալ մետաղահատ հաստոցների սահմանային հնարավորություններն օգտագործվում են զգալիորեն ցածր մակարդակով (ի դեպ, նման հաստոցներ թողարկվում են նաև մեր հանրապետությունում՝ Ձերժինսկու անվան և Հոկտեմբերյանի հաստոցաշինական գործարաններում)։*

*Այսպես, այդ հաստոցների սահմանային պտույտներն օգտագործվում են 50 տոկոսից ոչ ավելի, փոխանցումների թիվը՝ 17, արագություններինը՝ 40—50, հզորությունը 50—60 տոկոսով։ Դրանց վրա կատարվող մետաղների մշակման համար հիմնականում պահանջվում է 3—6 կվտ հզորություն, սակայն գործարանները դրանց թողարկումը շարունակում են 8—10 կվտ հզորության էլեկտրաշարժիչներով։ Կամ՝ դրանց վրա մշակվող բոլոր մասերի մոտ 80 տոկոսն ունի մոտ 100 մմ տրամագիծ և 500 մմ երկարություն, սակայն այդ հաստոցների նշված չափերը մեծ են, շատ դեպքերում երկու անգամ ավելի։*

Մի այլ օրինակ։ Գունավոր մետաղներից առանձին մասեր պատրաստելու անվան տակ թողարկվում են բարդ, թանկարժեք բազմագայլիկոնային ավտոմատ հաստոցներ, որոնց սահմանային պտույտների թիվը մեկ րոպեում հասնում է 2500—3000։ Սակայն, գործնականում այդ ավտոմատների վրա մշակվող գունավոր մետաղներից պատրաստվող մասերի քանակը 1,5 տոկոսից չի անցնում, մնացածը պողպատե մասեր են, որոնց մշակման համար անհրաժեշտ է 300—700 պտույտ և ոչ ավելի։ Այս բոլորը պահանջում են, որպեսզի նոր մեքենաների ու սարքավորումների նախագծման ժամանակ նախ և առաջ հաշվի առնվեն դրա ժողովրդատնտեսական պահանջը և ստացվելիք տնտեսական արդյունավետությունը։

Գիտատեխնիկական առաջադիմության զարգացման ներկայիս բարձր տեմպերն ունեն մի շարք առանձնահատկություններ, որոնք տարբերվում են նախորդներից։ Հիմնականը մեծ թափն է, որն ընդգրկել է երկրի տնտեսական կյանքի ոլորտները։ Զգալի չափով կրճատվել են գիտական հայտնագործությունների և դրանց կիրառման միջև եղած ժամկետները։

Գիտատեխնիկական առաջադիմության բարձր տեմպերի շնորհիվ, այժմ յուրաքանչյուր 5—6 տարվա ընթացքում ստեղծվում են նոր մետաղահատ հաստոցներ, կամ 10—15 տարվա ընթացքում մեքենաների և սարքավորումների արտադրողականությունը բարձրանում է 25—50 տոկոսով։ Այսպիսի տեմպերը ձեռնարկություններին պետք է ստիպեն համապատասխան միջոցառումներ մշակել, որպեսզի օպտիմալ ժամկետներում ֆիզիկապես և բարոյապես մաշված մեքենաները և սարքավորումները փոխարինվեն նորերով։ Բավական է ասել, որ նոր կոնստրուկցիայի 10 մետաղահատ հաստոցներ փոխարինում են հին կոնստրուկցիայի նույն նշանակման 14—15 հաստոցի։ Այդ պատճառով նպատակահարմար է ընթացիկ հնգամյակում գիտատեխնիկական պոտենցիալը՝ դրամանյութային և աշխատանքային ռեսուրսները կենտրոնացնել գործող ձեռնարկությունների տեխնիկական վերազինման համար։ Նշված խնդրի լուծմանը մեծ չափով օգնում է տնտեսական ռեֆորմը, որի պայմաններում ձեռնարկություններն ավելի ինքնուրույն են և տնտեսական լայն հնարավորություններ ունեն տեխնիկական առաջադիմության, աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրության տնտեսական ցուցանիշների բարելավման համար։

Ներկայումս գիտատեխնիկական առաջադիմությունը դրսևորվում է երկու հիմնական ուղղություններով։ Առաջինը, դա ժամանակակից մեքենաների, սարքավորումների, մշակվող նյութերի ստեղծումն է, երկրորդը՝ արտադրության կազմակերպման ու ղեկավարման մեթոդների կատարելագործումը, աշխատանքի մեքենայացման ու ավտոմատացման մակարդակի բարձրացումը, տեխնոլոգիական նոր պրոցեսների մշակումը։ Երկու դեպքում էլ աճում են աշխատանքի ֆոնդատարությունը և էներգազինվածությունը։ Մոտակա տարիներին այդ խնդիրների լուծման համար կարևոր նշանակություն ունի առավել բարձր տեմպերով զարգացնել էներգետիկ բազան, մեքենաշինությունը, սարքաշինությունը, ռադիոէլեկտրոնիկայի և քիմիական արդյունաբերությունը։ Այդ ճյուղերի զարգացման շնորհիվ լայն հնարավորություններ կստեղծվեն թողարկելու այնպիսի մեքենաներ, սարքավորումներ, որոնք իրենց տեխնիկա-տնտեսական ցուցանիշներով կանցնեն համաշխարհային մակարդակից։

Արդյունքի վրա կատարված ծախսումների կրճատման և, ընդհանրապես, ձեռնարկությունների գործունեության տնտեսական ցուցանիշների բարելավման գործում խոշոր դեր է խաղում նոր տեխնիկան։ Այդ տեսակետից ընթացիկ հնգամյակում մեր հանրապետության ժողովրդատնտեսական պլաններում արտադրության տեխնիկական վերազինման նպատակով լուրջ միջոցառումներ են նախատեսված։ Այս հարցում առաջնությունը տրվում է մեքենաշինական ձեռնարկություններին։

Վերջին տարիներին հանրապետության մեքենաշինական գրեթե բոլոր գործարաններում կատարվում են մեքենայական պարկի որակական և քանակական փոփոխություններ, ընդլայնվում և վերակառուցվում է արտադրությունը։ 1968 թ., 1960 թ. համեմատությամբ, այդ ճյուղերի ձեռնարկություններում արտադրական հիմնական ֆոնդերն աճել են մոտ 2,3 անգամ, այդ թվում՝ էլեկտրատեխնիկական ձեռնարկություններում՝ 2, հաստոցաշինականում և գործիքաշինականում՝ 5,2, ռադիոտեխնիկականում՝ 16, սարքաշինականում՝ 3, ավտոմեքենաշինական ձեռնարկություններում՝ 2 անգամ և այլն։ Նման փոփոխության շնորհիվ 1968 թ. հանրապետության մեքենաշինական արտադրության համախառն արտադրանքն արդյունաբերական ընդհանուր արտադրանքի մեջ կազմեց 22 տոկոս։

Սակայն այդ բոլորի հետ մեկտեղ պետք է նշել, որ հանրապետության մեքենաշինության մեջ նվազել են ֆոնդահատույցի տեմպերը. 1967 թ. մակարդակը, 1960 թ. համեմատությամբ, կազմել է 79,8 տոկոս։ Հայտնի է, որ արտադրության հիմնական ֆոնդերի կազմում ակտիվ մասի (ուժային և բանող մեքենաներ, սարքավորումներ և այլն) սիստեմատիկ աճը (դրանց օպտիմալ օգտագործման պայմաններում) բարձրացնում է աշխատանքի արտադրողականությունը, իջեցնում ստեղծվող արդյունքի ինքնարժեքը։ Սակայն այդ ուղղությամբ հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում էական ոչինչ չի արվել։ Ընդհակառակը, արտադրության հիմնական ֆոնդերում ակտիվ մասը եթե 1960 թ. կազմել է 45 տոկոս, ապա 1967 թ. 44 էր, այն դեպքում, երբ Միության մասշտաբով այդ ճյուղում 1967 թ. այն մոտ 60 տոկոս էր։

Գիտատեխնիկական առաջադիմությանը զգալի չափով նպաստում է արդյունաբերական ձեռնարկությունների տնտեսական խթանումը։ Տնտեսական ռեֆորմը նախատեսում է ժողովրդատնտեսական տվյալ ճյուղի և ձեռնարկությունների միատեսակ տեխնիկական քաղաքականության իրականացումը։ Այն լայն հնարավորություններ է բացում գիտատեխնիկական առաջադիմության զարգացման համար։ Ռեֆորմի պայմաններում ձեռնարկություններում ստեղծվում է արտադրության զարգացման ֆոնդ, հնարավոր է դառնում այդ նպատակով պետությունից ստանալ երկարատև վարկեր։ Բացի այդ, մտցված է ֆոնդավճար, որը եղած տեխնիկան արդյունավետ օգտագործելու և առաջավոր տեխնիկա ներդնելու տնտեսական լծակն է։ Ընդհանրապես, ներկա պայմաններում, երբ ձեռնարկությունները տնտեսական լայն հնարավորություններ ունեն, ավելի է բարձրանում դրանց դերը տեխնիկական առաջադիմության գործում։ Սակայն պետք է նշել, որ դեռևս շատ դանդաղ են վերականգնվում գիտատեխնիկական առաջադիմության զարգացման վրա կատարվող ծախսումները, որն իջեցնում է ազգային եկամտի ավելացման տեմպերը, ֆոնդահատույցը և այլն։ Այդ իսկ պատճառով այս հնգամյա պլանում մեծ տեղ է տրված ազգային եկամտի տեմպի և ֆոնդահատույցի բարձրացմանը։ Դրան հասնելու համար հրատապ է՝ զգալի չափով

բարձրացնել գիտատեխնիկական առաջադիմության տնտեսական արդյու-
նավետությունը և կատարելագործել դրա պլանավորումն ու տնտեսական
խթանման եղանակները։
1968 թ. վերջին պլանավորման ու տնտեսական խթանման նոր սիստե-
մով էին գործում հանրապետության 246 ձեռնարկություն կամ ընդհանուր
ձեռնարկությունների մոտ 38 տոկոսը, որոնք տվեցին արդյունաբերական
ողջ արտադրանքի 70, շահույթի՝ 75 տոկոսը։ Ընդ որում, եթե հանրապե-
տության արդյունաբերական բոլոր ձեռնարկություններում արտադրանքի
աճը 7 տոկոս էր, իսկ աշխատանքի արտադրողականությունը՝ 0,9, ապա
տնտեսական նոր սիստեմին անցած ձեռնարկություններում դրանք համա-
պատասխանաբար կազմեցին՝ 9,1 և 2,9 տոկոս։ Գիտատեխնիկական առա-
ջադիմության ուղղությամբ միայն 1968 թ. յուրացվեց և սերիաբար թողարկ-
վեց 60 նոր արտադրատեսակ, որոնք ունեն տեխնիկատնտեսական և շահա-
գործական համեմատաբար բարձր ցուցանիշներ։ Տեխնիկական առաջադի-
մությանը բավական օգնում են նաև գյուտարարներն ու ռացիոնալիզատոր-
ները։ 1968 թ. հանրապետության արդյունաբերական ձեռնարկություննե-
րում արմատավորվել է մոտ 14 հազար գյուտարարական և ռացիոնալիզա-
տորական առաջարկություն, որոնք հնարավորություն են ընձեռում տարե-
կան խնայելու մոտ 18 մլն ռուբլի։
Ժողովրդական տնտեսության մեջ տեխնիկական առաջադիմությունը,
առաջին հերթին, պայմանավորվում է մեքենաշինության արդյունաբերու-
թյան զարգացմամբ։ Այդ տեսակետից հետաքրքրական են մեր հանրապե-
տության մեքենաշինական ձեռնարկությունների ներկայիս տեխնիկական
մակարդակը և դրանց հզորությունների օգտագործման վիճակը։
Անցած 7 տարում հանրապետության մեքենաշինական ձեռնարկու-
թյուններում մետաղամշակման սարքավորումներն աճել են մոտ 2 անգամ,
այդ թվում դարբնոցա-մամլիչային սարքավորումները՝ 2,7 անգամ։ Այդ
ճյուղում ներկայումս էական փոփոխության է ենթարկվում արդյունքների
ստեղծման տեխնոլոգիան. արտադրությունից հանվում է կտրման և տաշ-
ման եղանակներով մասերի մշակումը, դրանք կատարվում են մամլիչների
միջոցով ճնշման, դրոշմման, ձուլման, եռակցման առաջադեմ եղանակնե-
րով։ Օրինակ, ճշգրիտ ձուլման կամ մամլման միջոցով ստացվում են 0,05 մմ
ճշտության մասեր, իսկ առանձին դեպքերում ստացված արտադրանքի ճըշ-
տությունը հասնում է գծագրով նախատեսված ցուցանիշներին։
Հանրապետության բոլոր մեքենաշինական ձեռնարկություններն արդեն
աշխատում են տնտեսական նոր սիստեմով։ Ստեղծվում են անհրաժեշտ
պայմաններ (ինչպես տնտեսական, այնպես էլ աշխատանքի կազմակերպ-
ման առաջադեմ եղանակների կիրառման տեսակետից) արտադրության
տեխնիկական մակարդակը լավագույն համամասնություններով բարձրաց-
նելու և եղած մեքենաներն ու սարքավորումներն արդյունավետ օգտագոր-
ծելու համար։ Սակայն դեռևս շատ անելիքներ կան, որոնց իրականացումը
գրեթե կապված չէ ֆինանսական և աշխատանքային ռեսուրսների խոշոր
ծախսումների հետ։
Մեքենաշինական 60 ձեռնարկությունների գործունեության ուսումնասի-
րությունները ցույց են տալիս, որ դրանց հզորությունների ու տեխնիկայի
օգտագործման տեսակետից գոյություն ունի մեծ խայտաբղետություն։ Ընդ
որում, նման վիճակը հիմնականում բացատրվում է այդ ձեռնարկություն-



ներում աշխատանքի կազմակերպման տարբեր մակարդակներով։ Օրինակ,
ուսումնասիրված ձեռնարկությունների 30 տոկոսն անցած ութ տարիներին
արտադրական հզորություններն օգտագործել է 60—70 տոկոսով (Երևանի
էլեկտրասարքատների, «Հիդրոհաղորդակ», ամրակների, Կիրովականի
«Ավտոգենմաշ» գործարանները և այլն)։ Կան նաև ձեռնարկություններ (ու-
սումնասիրվածի 17 տոկոսը), որոնց մոտ արտադրական հզորությունները
նշված ժամանակաշրջանում օգտագործվել են 30—45 տոկոսով (Երևանի
ավտոբեռնիչների, Լենինականի սառնարանային կոմպրեսորների, Արթիկի
փորձարարական-գործիքաշինական գործարանների և այլն)։
Արտադրական կարողությունների օգտագործման նման ցածր մակար-
դակը հիմնականում բացատրվում է նրանով, որ այդ ձեռնարկություններում
մեծ թիվ է կազմում ռեզերվային և տվյալ արտադրության համար ոչ պի-
տանի, սակայն սարքին տեխնիկան։ Հանրապետությունում շատ ցածր մա-
կարդակի վրա է գտնվում մետաղամշակման հաստոցների հիմնական նո-
րոգման կազմակերպումը։ Միայն այդ պատճառով պլանից դուրս մեքենա-
ների և սարքավորումների պարապուրդները կազմում են 4—8 տոկոս։ Այդ
գլխավորապես հետևանք է այն բանի, որ բարդ կոնստրուկցիայի մեքենանե-
րի և սարքավորումների հիմնական նորոգումների մեծ մասը կատարվում է
ձեռնարկությունների նորոգման արտադրամասերում, որոնք ինչպես իրենց
տեխնիկական մակարդակով, այնպես էլ հզորությամբ հարմարեցված չեն
այդ նպատակին։
Արտադրական կարողությունները ցածր մակարդակով օգտագործելու
պատճառներից են մասնագետ բանվորների պակասն ու զգալի չափերի
հասնող հոսունությունը։ Միայն այդ պատճառներով մեքենաների ու սար-
քավորումների պարապուրդները, միջին հաշվով, կազմում են 26 տոկոս։
Օրինակ, հանրապետության հաստոցաշինական, ավտոպահեստամասերի ու
ավտոբեռնիչների գործարանները վերջին 5—6 տարիներին խառատների,
փականագործների, հարմարաբերողների և վերանորոգողների մշտական
պակաս են զգում, որը թույլ չի տալիս մեծացնելու արտադրական ծրագիրը
և բարձրացնելու հերթափոխայնության գործակիցը։ Մասնագետ բանվորնե-
րի պակասը լրացնելուն մեծ օգնություն ցույց կտա ՍՄԿԿ Կենտրոնական
կոմիտեի և ՍՍՀՄ Մինիստրների սովետի 1969 թ. ապրիլ ամսին մշակած
միջոցառումների ճիշտ կիրառումը՝ «Պրոֆեսիոնալ-տեխնիկական կրթու-
թյան սիստեմի ուսումնական հաստատություններում որակյալ բանվորների
պատրաստումը է՛լ ավելի բարելավելու մասին»։
Արտադրական կարողությունների արդյունավետ գործադրմանը զգա-
լի չափով նպաստում է մեքենաների ու սարքավորումների օգտագործման
հերթափոխայնության գործակցի բարձրացումը։ Ի դեպ, ուսումնասիրված
ձեռնարկություններում այն դեռևս ցածր մակարդակի վրա է գտնվում՝ տա-
տանվում է 1,1—1,5 սահմաններում (հնարավոր 2-ի փոխարեն)։ Եթե նըշ-
ված ձեռնարկություններում այդ գործակիցը հասնի 1,7—1,8-ի, որը միան-
գամայն հնարավոր է, ապա դա հավասարազոր կլինի եղած մեքենայական
պարկը մոտ 3800 միավորով կամ 27 տոկոսով կրճատելուն։
Տեխնիկական առաջադիմության տեմպերի և ձեռնարկությունների
տնտեսական ցուցանիշների բարձրացմանը զգալի չափով նպաստում են նոր
մեքենաների, սարքավորումների, հոսքային և ավտոմատ գծերի ժամանա-
կին ստացումը, տեղակայումն ու արդյունավետ օգտագործումը։ Սակայն

այս ուղղությամբ հանրապետության մեքենաշինական ձեռնարկություններում գործը բարվոք չէ։ Այսպես, անցած ութ տարիների ընթացքում ուսումնասիրված ձեռնարկություններում ստացված, բայց չտեղակայված մեքենաների ու սարքավորումների քանակն ավելացել է 1,45 անգամ. Երևանի էլեկտրաճշգրիտ սարքերի, ալմաստների, Լենինականի էլեկտրատեխնիկական, Սևանի գործադիր մեխանիզմների գործարաններում չտեղակայված տեխնիկան կազմում է ընդհանուրի 7 տոկոսից ավելին։

Արտադրության տեխնիկական մակարդակի ցուցանիշների բարձրացման գործում զգալի տեղ է տրվում աշխատունակ հին տիպի մեքենաների ու սարքավորումների մոդեռնացմանը։ Սակայն նշված աշխատանքների ծավալը, ուսումնասիրված ձեռնարկություններում, անցած ութ տարիներին կրճատվել է 1,22 անգամ։ Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմի պայմաններում մոդեռնացման աշխատանքների ծավալի ընդլայնման տնտեսական արդյունավետությունն ակնառու է, միայն անհրաժեշտ է, որ ձեռնարկությունները սիստեմատիկ ուշադրություն նվիրեն այդ կարևոր գործին։

Կուսակցությունը և կառավարությունը ներկայումս առանձնակի ուշադրություն են նվիրում գիտության և տեխնիկայի ճիշտ պլանավորմանը. այդ ուղղությամբ բավականին աշխատանք է կատարված։ Սակայն գործն ավելի կշահեր, եթե պլանավորման սիստեմում որոշ լրացումներ կատարվեին։ Բանն այն է, որ գիտության և տեխնիկայի պլանավորման ներկայիս կարգը հնարավորություն չի տալիս ձեռնարկության, վարչության, կամ ճյուղի մասշտաբով ճիշտ կանխատեսել դրանց հետագա զարգացումը և ազդեցությունը հասարակական արտադրության տնտեսական ցուցանիշների առումով։ Օրինակ, պլանավորման բոլոր օղակներում նոր տեխնիկայի պլանավորումը սահմանափակվում է միայն մի խումբ միջոցառումների թվարկմամբ և դրանց կիրառումից ստացվելիք պայմանական տնտեսական արդյունքի հաշվարկմամբ։ Սակայն հայտնի է, որ գիտության և նոր տեխնիկայի ներդրումը հանգեցնում է կենդանի և առարկայացված աշխատանքի արտադրողականության բարձրացման, արդյունքի ինքնարժեքի իջեցման, շահույթի ու ֆոնդահատույցի ավելացման ու այլ տնտեսական ցուցանիշների լավացման։ Իսկ թե գիտության և նոր տեխնիկայի զարգացումն ինչպիսի՞ չափերով է ազդում նման կարևոր ցուցանիշների վրա, այդ ներկայիս պլանավորման կարգի պայմաններում անհնար է հաշվել և պլանավորել։ Պլանավորման և տնտեսական խթանման նոր պայմաններում խիստ անհրաժեշտություն է տեխնիկական առաջադիմության համար կատարվող դրամանյութային ծախսերի հաշվարկումը և տնտեսական ցուցանիշներում դրանց արդյունավետության մակարդակի որոշումը։ Այս կարևոր հարցի լուծման համար նպատակահարմար է, որպեսզի յուրաքանչյուր գերատեսչություն և ձեռնարկություն, ելնելով իր գործունեության առանձնահատկություններից, մշակի ցուցանիշների այնպիսի սիստեմ, որի միջոցով հնարավոր լինի տեխնիկական առաջադիմության վերաբերյալ ներկայումս մշակվող միջոցառումները արտահայտելու նաև տնտեսական ցուցանիշներով։ Օրինակ, ընդունենք, թե որևէ էլեկտրասարքաշինական ձեռնարկությունում նոր տեխնիկայի կիրառման նպատակով մշակված և պլանավորված են մի շարք միջոցառումներ, որոնց որոշակի մասը միտում է խնայելու թանկարժեք էլեկտրապղպատը։ Պարզ է, որ անհրաժեշտ է հաշվարկել և պլանավորել, թե



այդ խնայողությունը որքանո՞վ կիջեցնի թողարկվող արդյունքների ինքնարժեքը և կավելացնի ձեռնարկության շահույթը։ Նույն ձևով նոր տեխնիկայի պլանավորումը ձեռնարկություններին և գերատեսչություններին հնարավորություն կտա առավել արդյունավետ ուղղություններով օգտագործելու նորագույն տեխնիկայի համար տրամադրվող միջոցները։ Ի դեպ, տեխնիկատնտեսական ցուցանիշների այդ սիստեմը հնարավորություն կտա նաև առավել ճիշտ պատկերացնել և պլանավորել ստեղծվող արդյունքի և դրա արտադրության տեխնիկական ու տնտեսական մակարդակները։ Ընդ որում, ձեռնարկություններից վերցնելով և ընդհանրացնելով տեխնիկատնտեսական այդ ցուցանիշները, հեշտությամբ կարելի է որոշել նաև տվյալ գերատեսչության կամ ժողովրդատնտեսական ճյուղի տեխնիկատնտեսական մակարդակը և առավել ճիշտ պլանավորել դրանց համաչափ զարգացումը։

Ինչպես հայտնի է, տնտեսական ռեֆորմի ճիշտ իրականացումը գլխավորապես հիմնված է ձեռնարկությունների և գերատեսչությունների արտադրական գործունեության ինքնուրույնության ընդլայնման վրա, որի շնորհիվ արտադրության պրոցեսում առավել ակտիվ են գործի դրվում արտաքին և ներքին ռեզերվները, բարձրացնում հասարակական արտադրության արդյունավետությունը։ Սակայն տնտեսական ռեֆորմի պայմաններում գիտատեխնիկական առաջադիմության գործում ձեռնարկությունների ինքնուրույնության հարցը սահմանափակ է։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ ձեռնարկություններում նոր տեխնիկայի ներդրմամբ ավելանում են հիմնական ու շրջանառու ֆոնդերը։ Դրա հետևանքով ժամանակավորապես իջնում է ձեռնարկության շահութաբերության ցուցանիշի մակարդակը պլանայինի նկատմամբ։ Ընդունենք, որ նոր արտադրանքի մշակման և յուրացման պրոցեսը տևում է երեք տարի, ապա այդ ժամանակամիջոցում անընդհատ ավելանում է հիմնական և շրջանառու ֆոնդերի ծավալը, իսկ նոր արտադրանք չի թողարկվում։ Քանի որ ձեռնարկության շահութաբերության մակարդակը որոշելու համար ընդհանուր շահույթը առնչվում է հիմնական և շրջանառու ֆոնդերին, ապա պարզ է, որ այդ մակարդակը կարող է ցածր լինել։ Թերակատարել շահութաբերության պլանային ցուցանիշը, նշանակում է չկատարել պետական առաջադրանքը. այն բացասաբար է անդրադառնում նաև ձեռնարկության նյութական խրախուսման ֆոնդի ստեղծման վրա։

Այստեղից կարելի է եզրակացնել, որ վերադասի կողմից շահութաբերության ցուցանիշի պլանավորումը ձեռնարկություններին ստիպում է ձեռնպահ մնալ նոր տեխնիկայի յուրացման գործում, որը և արգելք է հանդիսանում գիտատեխնիկական առաջադիմությանը։ Ելնելով այս բոլորից, նպատակահարմար է, որ շահութաբերության ցուցանիշի պլանավորման գործը թողնվի իրենց՝ ձեռնարկություններին։

Մեր երկրում գիտատեխնիկական առաջադիմության գործում կարևոր լծակ է նյութական շահագրգռվածության սիստեմի նպատակայնությունը և ուժը։ Սակայն տնտեսական ռեֆորմի պայմաններում գիտատեխնիկական առաջադիմությունը կաշկանդում է նաև այդ նպատակին ուղղված նյութական խրախուսման չափի հաշվարկման և վճարման գործող մեթոդի թերի լինելը։ Բանն այն է, որ այդ մեթոդի համաձայն, նոր տեխնիկայի մշակման ու յուրացման համար նյութական խրախուսման չափը որոշվում է ձեռնարկության աշխատավարձի ֆոնդի չափից (0,3-ից մինչև 1 տոկոս)։ Բայց

Հայտնի է, որ նոր տեխնիկայի ներդնումը հիմնականում ուղղված է աշխատանքի արտադրողականության բարձրացմանը և աշխատավարձի ֆոնդի կրճատմանը։ Կիրառվող հաշվարկման մեթոդի համաձայն, նոր տեխնիկայի ներդնումը հանգեցնում է առանձնացվող նյութական խրախուսման ֆոնդի բացարձակ կրճատմանը և, վերջին հաշվով, կաշկանդում տեխնիկական առաջադիմության զարգացումը։ Այդ գործում ձեռնարկություններին տրնտեսապես խթանելու համար նպատակահարմար է նոր տեխնիկայի մշակման և յուրացման նյութական խրախուսման ֆոնդը հաշվարկել՝ ելնելով ոչ թե աշխատավարձի ֆոնդից, այլ այն առանձնացնել (տոկոսային հարաբերությամբ) ձեռնարկության շահույթից։

Հայտնի է, որ շահույթի ստեղծման գործում մեծ տեղ ունի նոր տեխնիկայի արդյունավետությունը։ Սակայն տնտեսական ռեֆորմի պայմաններում այդ շահույթից առանձնացվող նյութական խրախուսման ֆոնդից ստանում են ձեռնարկության կոլեկտիվի բոլոր անդամները, այսինքն՝ նաև նրանք, ովքեր չեն մասնակցել նոր տեխնիկայի մշակման կամ ներդրման գործին։ Նման վիճակը զգալի չափով թուլացնում է տեխնիկական առաջադիմության տեմպերը։ Այդ հարցը կարգավորելու նպատակով անհրաժեշտ է ձեռնարկություններում առանձին հաշվարկ կատարել և նյութապես խրախուսել նոր տեխնիկայի մշակման և ներդրման աշխատանքներին մասնակցողներին։

Տ. Հ. ՏԻԳՐԱՆՅԱՆ
ՍՍՀՄ պետպլանին կից պլանավորման և նորմատիվների
գիտահետազոտական ինստիտուտի հայկական մասնաճյուղի
բաժնի պետ, տնտեսական գիտությունների թեկնածու

# ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ, ՈՐԱԿԸ ԵՎ ՍՏԱՆԴԱՐՏԸ*

ՍՄԿԿ Կենտկոմի հոկտեմբերյան (1968 թ.) պլենումն անհրաժեշտ համարեց մշտական հոգատարություն ցուցաբերել արտադրանքի որակի բարելավման նկատմամբ, կոլտնտեսություններին և սովխոզներին շահագրգռել վաճառելու ավելի բարձրորակ գյուղատնտեսական մթերքներ։ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը հատուկ որոշմամբ միջոցառումներ նախատեսեցին գյուղատնտեսության բնագավառում գիտահետազոտական աշխատանքների հետագա բարելավման համար։

Արտադրանքի որակը կարգավորում է ստանդարտը։ Արդի պայմաններում ստանդարտացումը չի կարող սահմանափակվել հնացած տվյալների օգտագործմամբ կամ որակի ձեռք բերված մակարդակի սևեռմամբ ու կատարելագործման պլանների անտեսմամբ։ Ընդհակառակը, հաշվի առնելով գյուղատնտեսական փորձնական տնտեսությունների ձեռք բերած հաջողությունները, ստանդարտացումը պետք է կոլտնտեսություններին ու սովխոզներին կողմնորոշի ապահովելու արտադրանքի որակի նոր, ավելի բարձր մակարդակը։

Բայց դրա համար անհրաժեշտ է ոչ միայն զարգացնել գիտությունն ու տեխնիկան, այլև կատարելագործել ստանդարտացումը, դրա մեթոդոլոգիական հիմքերը և որակի հարցերի լուծմանը ցուցաբերվող մոտեցման մեթոդները։

* Տպագրվում է հարցադրման կարգով։ Խմբ.:



Բանջարեղենի պետական ընդհանուր միութենական ստանդարտներն առաջին անգամ մշակվեցին 1930—31 թվականներին։ Դրանք, բնականաբար, չէին կարող հաշվի առնել գյուղատնտեսական արտադրության զոնալ պայմանները։ Հետագայում, 1957 թ., գործի դրվեցին զոնալ ստանդարտները՝ հանրապետական տեխնիկական պայմանները, այդ թվում նաև Հայկական ՍՍՀ-ում։ Դա ստանդարտները մոտեցրեց կոնկրետ պայմաններին, թույլ տվեց պետական ստանդարտների համեմատ ընդլայնել արտադրանքի ընդգրկումը։ Ներկայումս հանրապետական տեխնիկական պայմանները փոխարինվում են պետական միասնական ստանդարտներով (ԳՈՍՏ), որոնք ընդգրկում են բանջարեղենի հիմնական տեսակները։ Արդյոք, դա համապատասխանո՞ւմ է մեր հանրապետության բանջարաբուծության շահերին։ Մեր կարծիքով, ոչ։ Ահա թե ինչու։ Արտադրանքի որակը պայմանավորված է ոչ թե նորմատիվ փաստաթղթերի բնույթով՝ որակի նկատմամբ ներկայացվող պահանջների միասնությամբ կամ զանազանությամբ, ոչ թե ստանդարտի կամ այն հաստատած հիմնարկության անունով, այլ գյուղատնտեսական արտադրության և դրա տեխնիկական զինվածության վիճակով։ Այդ կապակցությամբ տեղին է հիշեցնել Վ. Ի. Լենինի հետևյալ խոսքերը. «Հողագործությունը Կալուգայի նահանգում նույնը չէ, ինչ Կազանի նահանգում։ Նույնը վերաբերում է ամբողջ արդյունաբերությանը։ Նույնը վերաբերում է վարչարարությանը կամ կառավարմանը։ Բոլոր այս հարցերում հաշվի չառնել տեղական առանձնահատկությունները՝ կնշանակեր ընկնել բյուրոկրատական ցենտրալիզմի մեջ և այլն, կնշանակեր խանգարել տեղական աշխատողներին տեղական տարբերությունների այն հաշվառման գործում, որը հանդիսանում է խելացի աշխատանքի հիմքը» (ПСС, т. 45, стр. 198)։

Ամեն մի հանրապետություն ունի իր բնական և տնտեսական առանձնահատկությունները, ազգային ճաշակը, տնտեսության վարման ստեղծված ավանդույթները, իր ինստիտուտները, լաբորատորիաները, կայանները։ Վերջին տարիներս ստեղծվել են հանրապետական այնպիսի կարևոր մարմիններ, ինչպիսիք են ստանդարտների, չափերի ու չափիչ սարքերի լիազոր կոմիտեի վարչությունը, գների կոմիտեն։ Ուստի, տեղական պայմանների իմացությունը, գիտության ու տեխնիկայի նվաճումների, ինչպես նաև այնպիսի լծակների օգտագործումը, ինչպիսիք են՝ ստանդարտը և գինը (հիմնըվելով հանրապետությանը վերապահված իրավունքների վրա, ելնելով ժողովրդատնտեսական պլանի խնդիրներից), լավագույն պայմաններ են ստեղծում տնտեսության ղեկավարումը բարելավելու և գյուղատնտեսության արտադրության արդյունավետությունը բարձրացնելու համար։

Ստանդարտացման հիմնարար մեթոդոլոգիական սկզբունքը բանջարեղենի արտադրության և սպառման համասարեցումն է, այսպես կոչված, ստանդարտ որակին։ Դժբախտաբար, ո՛չ տեսությունը, ո՛չ էլ պրակտիկան մեզ չեն տալիս մի բնորոշում, թե ինչ է ստանդարտ բանջարեղենը։ Իսկ դա հարկավոր էր անել, քանի որ ստանդարտ բանջարեղեն չկա։ Դրանք տարբերվում են տեսակային բազմազանությամբ։ Բանջարեղենի արտադրության մեջ շարունակվում են կենսագործունեության բիոքիմիական պրոցեսները, արտաքին պայմանների ազդեցության տակ փոխվում է քիմիական կազմը։ Ստանդարտը ենթադրում է միատարրություն, բայց միատարր բանջարեղեն

նույնպես չկա. բանջարեղենները տարբերվում են քաշով, չափով, ձևով, արտաքին տեսքով, հասունության աստիճանով, համով։ Կարևոր դեր են խաղում տնտեսական տարբերությունները և այնպիսի հատկություններ, ինչպիսիք են՝ դիմացկունությունն ու փոխադրահարմարությունը։ Ի տարբերություն արդյունաբերական արտադրանքի, մենք այստեղ գործ ունենք որակի փոփոխականության, դրա դինամիզմի հետ, որն անհարիր է «ստանդարտ որակ» հասկացողությանը։ Բանջարեղենի բնական և տնտեսական բազմազանությունը մի էտալոնի ենթարկելու ցանկությունը չի կարող դրական արդյունքներ տալ։ Այսպիսի սկզբունքը միայն հող կստեղծի տնտեսական կոնֆլիկտների համար, քանի որ միշտ չէ, որ կարելի է կոնդիցիոն արտադրանքը զանազանել ոչ ստանդարտից։

Ստանդարտը կոչված է կարգավորելու որակը։ Բայց ինչպե՞ս հաշվի առնել որակի փոփոխությունները։ Ըստ երևույթին պետք է լինի որակի ինչ-որ մի աստիճան, սանդղակ, որի համաձայն հնարավոր լինի նշել փոփոխությունները դեպի լավը, խոսել առաջադիմության մասին կամ ընդհակառակը։ Շերտավորում՝ սա էլ հենց որակի կարգավորումն է ստեղծագործական իմաստով, դա էլ հենց ստեղծում է վերահսկողության հնարավորություն, բայց որակի ոչ մի բարելավման մասին խոսք չի կարող լինել, եթե ստանդարտը սահմանափակվում է անփոփոխ պահանջների նկարագրությամբ, «ստանդարտ» որակի ձևավորմամբ։

Դժբախտաբար, բանջարեղենի 1968—1969 թթ. նոր պետական ստանդարտները ևս, որոնց նախապատրաստման մասին շատ է գրվել, ելնում են նույն մեթոդոլոգիական հիմքից՝ մեկ ապրանքային սորտից կամ ստանդարտ որակից։ Միևնույն ժամանակ, 1968 թ. մարտի 1-ից, երկրի մի քանի շրջաններում անցկացվեց կաթի նոր ստանդարտի պրակտիկ ստուգման փորձ։ Առաջին անգամ կովի սովորական կաթը բաժանվեց երկու ապրանքային սորտի և ոչ սորտայինի։ Բայց ինչո՞ւ կաթը կարելի է շերտավորել ըստ որակի, իսկ բանջարեղենը, որի մեջ որակի տարբերությունները միանգամից աչքի են զարնում, չի կարելի։ Բացատրությունը մեկ է. չի մշակված մեթոդիկան։

Բանջարեղենի նոր ստանդարտները մշակելիս հաշվի չի առնված նախապատերազմյան տարիների փորձը, երբ բանջարեղենը բաժանվում էր տնտեսական-բուսաբանական և ապրանքային սորտերի։ Ուշադրության չի առնվել սոցիալիստական երկրների փորձը։ Թե՛ Ռումինիայում, թե՛ Բուլղարիայում կիրառվում են սորտային տարբերությունները։ Օրինակ՝ Բուլղարիայում պահածոյի համար թարմ վարունգի ստանդարտը նախատեսում է երեք ապրանքային սորտ՝ էքստրա, առաջին և երկրորդ։ Իրենց հաջողություններով բուլղար բանջարաբույծները շատ բանով պարտական են առաջադիմական ստանդարտներին։

ՍՄԿԿ Կենտկոմի անցյալ տարվա հոկտեմբերյան պլենումն անհրաժեշտ համարեց կարգավորել բանջարեղենի գները։ Ներկայումս մշակվում է Հայկական ՍՍՀ-ում բանջարեղենի նոր գնացուցակ։ Սակայն բանջարաբուծության շահութաբերության պրոբլեմներն ավելի խոր են և բարդ։ Փորձենք այդ ցույց տալ օրինակներով։ Ստանդարտ բանջարեղենը վճարահատուցվում է ըստ գնացուցակի, իսկ ոչ ստանդարտը՝ 25 տոկոս զեղչով։ Սակայն Հայկական ՍՍՀ-ում սահմանված է ավելի բարձր զեղչ՝ 40 տոկոս։ Ինչո՞վ բացատրել այդ տարբերությունը։ 25 տոկոս զեղչը մոտավորապես համապա-



տասխանում է երկու տարբեր ապրանքային սորտերի վճարահատուցման պրակտիկային։ Իսկ 40 տոկոս զեղչն արդեն տուգանք է, որը նվազեցնում է շահութաբերությունը։ Մանավանդ որակի գնահատման մեթոդները հեռու են կատարելությունից և օգտագործվում են հօգուտ մթերողի։

Ուստի, հարկ չկա զարմանալու, որ Արարատյան հարթավայրում բամբակենուց ազատվող հողատարածություններում կոլտնտեսությունները գերադասում են հացահատիկային կուլտուրաներ ցանել, բայց ոչ բանջարեղեն։ Ուրեմն, չհիմնավորված զեղչի չափը հարկավոր է անպայման իջեցնել։ Չէ՛ որ այդ իրավունքը վերապահված է միութենական հանրապետությանը։

Կարևոր նշանակություն ունի ստանդարտի գործողության ոլորտը։ Ինչպես անցյալում ՀՏՊ (հանրապետական տեխնիկական պայմաններ), այնպես էլ նոր պետական ստանդարտներում նշված է, որ ստանդարտը տարածվում է մթերվող, գնվող և իրացվող բանջարեղենի վրա։ Հետևաբար, որտեղ էլ գտնվի բանջարեղենը՝ կոլտնտեսությունում թե սովխոզում, մթերակայանում, ճանապարհին, պտուղբանջարեղենի բազայում, թե մանրածախ խանութում, դրա որակի պահանջները նույնն են և անփոփոխ, ինչպես արդյունաբերական ապրանքներինը։ Բայց բանջարեղենի որակը փոփոխվում է, փչանում է և այդ մասին, ըստ երևույթին, մոռանում են։ Ահա թե ինչի է հանգեցնում այն։ Եթե Հայկական ՍՍՀ բանջարաբուծական սովխոզն իր ստանդարտ բանջարեղենը հանձնի պտուղբանջարառի տեղական կազմակերպությանը, ապա լրիվ կստանա այն, ինչ նախատեսված է գնացուցակով։ Իսկ եթե սովխոզը նույն ստանդարտ բանջարեղենը երկաթուղով ուղարկի Մոսկվայի պտուղբանջարառի բազային, ապա կստանա ռեկլամացիա, քանի որ բանջարեղենի մի մասը ճանապարհին կփչանա, մի որոշ մասն էլ կհամարեն ոչ ստանդարտային։

Բավական չէ, որ բանջարեղենի ստանդարտի անկատարելության հետևանքով կոլտնտեսություններն ու սովխոզները ստիպված են վնասները վերցնել իրենց վրա, նրանց մասին ստեղծվում է նաև բացասական հասարակական կարծիք։ Մի խոսքով, դա միանգամայն ձեռնտու է իրացման ոլորտի ձեռնարկություններին։ Բայց չէ՛ որ առանց բանջարեղենի որակի համար տնտեսական պատասխանատվության, չի կարելի բարձրացնել շահութաբերությունը և բարելավել բնակչությանը թարմ բանջարեղեն ու միրգ մատակարարելու գործը։ Ընդ որում, այդ պատասխանատվությունը պետք է իրագործվի ապրանքի շարժման բոլոր փուլերում՝ սկսած արտադրողից մինչև սպառողը։

Մեր կարծիքով, նպատակահարմար է անցնել երկու ստանդարտի սիստեմին՝ զոնալ բնույթի արտադրա-մթերային և միասնական առևտրական։ Այդ ստանդարտների պահանջների տարբերությունը գործողության ծրագիր կլինի մթերող կազմակերպությունների, պտղաբանջարային բազաների և առևտրական կազմակերպությունների համար, որոնք շահագրգռված կլինեն պահպանելու բանջարեղենի ու մրգի որակը և այն հասցնելու առևտրական կոնդիցիաների։ Դա, անտարակույս, կաշխուժացնի վաճառահանման ոլորտի ձեռնարկությունների տնտեսական գործունեությունը։

Ասում են, թե ստանդարտը կառավարում է արտադրությունը։ Այդ կողմը նույնպես ուսումնասիրություն է պահանջում։ Ինչպիսի՞ ազդեցություն է թողնում ստանդարտացումն արտադրության, դրա մասնագիտացման, օժանդակ արտադրությունների զարգացման վրա։ Ներկայումս գյուղում արդյունաբերական շինարարության երկու հիմնական տենդենց է նկատվում՝ բան-

ջարեղենի և մրգի վերամշակման օժանդակ ձեռնարկությունների զարգա-
ցումը կոլտնտեսություններում, միջկոլտնտեսային կազմակերպություննե-
րում, սովխոզներում և սպառողական կոոպերացիայի սիստեմում (չոր միրգ-
աղ դրած և թթու դրած բանջարեղեն, հյութեր, պահածոներ)։ Այդօրինակ
ձեռնարկությունների շինարարությունը պայմանավորված է արտադրության
ծավալի մեծացմամբ և բանջարեղենի ու մրգի այն ապրանքային ավելցուկ-
ների աճով, որոնք մնում են կոլտնտեսություններում և սովխոզներում մթե-
րումների պետական պլանը կատարելուց հետո։ Դա թելադրվում է բերքը
պահպանելու, կորուստները նվազեցնելու, շահույթը մեծացնելու ցանկու-
թյամբ։ Երկրորդ տենդենցը, որը դեռևս բավարար չի զարգացել, արտա-
հայտվում է բնակչության՝ թարմ բանջարեղենի պահանջմունքն ավելի լրիվ
բավարարելու, սպասարկման որակը բարելավելու ցանկությամբ։ Դրա հա-
մար կառուցվում են բանջարեղենի, կարտոֆիլի, մրգի պահեստներ և բան-
ջարեղենի ապրանքային մշակման հատուկ ձեռնարկություններ (լվացում,
չորացում, տեսակավորում, տրամաչափում, դասավորում, փաթեթավորում)։
Զարգացման ուղիների տարբերությունը բավական էական է։ Բնակչու-
թյան թարմ բանջարեղենի և մրգի պահանջմունքը չի բավարարվում (պա-
հանջարկը հսկայական է), իսկ ձեռնարկվող միջոցառումներն առայժմ շո-
շափելի արդյունքներ չեն տալիս։ Գյուղում թառամում ու փչանում է զգալի
քանակությամբ չիրացված բանջարեղեն ու միրգ, իսկ առևտրական ցանցում
դրանց պակասը զգացվում է։ Պահածոների հարցում դրությունը հակառակն
է։ Չնայած իրացման դժվարություններին, պահածոների թողարկումն ավե-
լացվում է։ ՍՍՀՄ առևտրի մինիստր Ա. Ի. Ստրուևը նշում է, որ այժմ պըտ-
ղի ու բանջարեղենի պահածոների արտադրությունն արագ է աճում, քան
դրանց սպառումը։ Բայց չէ՞ որ գյուղում պահածոների գործարանի շինարա-
րությունը, ըստ էության, նոր է ծավալվում։ Եթե կոլտնտեսությունների
սարքավորումների, տարայի և այլ նյութերի պահանջմունքը բավարարվի,
պատրաստվեն պահածոյագործ մասնագետների կադրեր, ապա պահածոնե-
րի արտադրության տեմպերը, ըստ երևույթին, խիստ կարագանան։ Կաճեն
նաև պահածոների իրացման հետ կապված դժվարությունները։ Այս տեսա-
կետից ուսանելի է Դաղստանի փորձը։
Դաղստանը հասել է պահածոյի արդյունաբերության զարգացման բար-
ձըր մակարդակի։ Այստեղ պահածոյացվում է բանջարեղենի և մրգի 90—95
տոկոսը և միայն 5—10 տոկոսն է սպառվում թարմ վիճակում։ Ըստ երևույ-
թին, պտղաբանջարային հումքի այդպիսի օգտագործումն այնքան էլ ճիշտ
չէ, և արտադրական կառուցվածքի մեջ մտցվում են ճշգրտումներ։ Նախա-
տեսվում է մինչև 1970 թ. կառուցել թարմ պտուղների և բանջարեղենի տե-
սակավորման, տրամաչափման և փաթեթման վեց ֆաբրիկա՝ երեք հազար
տոննա արտադրական կարողությամբ։ Եթե պետական արդյունաբերության
պայմաններում ճյուղային համամասնությունները կարգավորվում են պլա-
նով, ապա ի՞նչն է պայմանավորում գյուղական շինարարության բնույթը։
Ինչո՞ւ է գերադասություն տրվում պահածոյի գործարաններին։
Կոլտնտեսություններն իրավասու են կառուցելու օժանդակ և արտա-
դրական օբյեկտներ։ Բայց միևնույն ժամանակ նրանք հարկադրված են հա-
մակերպվել գնումների պայմաններին, ստանդարտի պահանջներին և գների
բնույթին։ Պետական այս լծակներն էլ որոշում են գյուղի արդյունաբերա-
կան շինարարության բնույթը։



Կոնտրակտացիայի պայմանագրի մի դրույթում ասված է, որ մթերողը (կոնտրակտանտը) նյութական պատասխանատվություն է կրում այն դեպքում, երբ հրաժարվում է ընդունել կոնտրակտացիայի պայմանագրով նախատեսված կոնդիցիոն, շուտ փչացող արտադրանքը։ Հետևաբար, մթերողը կարող է հրաժարվել կոլտնտեսություններից ու սովխոզներից ոչ կոնդիցիոն (ոչ ստանդարտ) արտադրանք գնելուց. շատ մթերողներ այդպես էլ անում են։

Դրան չի նպաստում նաև գների հավասարությունը։ Կոնդիցիոն կամ ստանդարտ արտադրանքը պետությանն է հանձնվում պլանով և, որպես կանոն, վճարահատուցվում է նույնպես ստանդարտ, միևնույն գնով։ Օրինակ, Հայկական ՍՍՀ-ում պոմիդորի մասսայական բերքահավաքի սեզոնում կոլտնտեսություններին մեկ տոննայի համար վճարվում է 57 ռուբլի (1967 թ. գնացուցակ)։ Եթե կոլտնտեսությունը մթերողին հանձնի տեսակավորված կամ ավելի լավորակ պոմիդոր, ապա դարձյալ կստանա 57 ռուբլի։ Ուստի, շահավետ է պոմիդորը հանձնել խառը վիճակում։ Եվ, ուրեմն, ի՞նչ անհրաժեշտություն կա միջոցներ ներդնել բանջարեղենի և մրգի պահեստներ, դրանց ապրանքային մշակման ձեռնարկություններ կառուցելու գործում։

Տնտեսական փոխհարաբերությունների այդպիսի սիստեմը, բնականաբար, կոլտնտեսություններին և սովխոզներին դրդում է կառուցել բանջարեղենի և մրգի վերամշակման ձեռնարկություններ, մանավանդ որ դա հնարավորություն է ընձեռում օգտագործելու գյուղատնտեսական արտադրության մնացուկները։ ՍՄԿԿ Կենտկոմի 1968 թ. հոկտեմբերյան պլենումը խրախուսեց բանջարեղենի, մրգի և գյուղատնտեսական այլ հումքի վերամշակման ձեռնարկություններ կառուցելու՝ կոլտնտեսությունների և սովխոզների նախաձեռնությունը։ Բայց դա չի ժխտում բանջարեղենի և մրգի ապրանքային մշակման ձեռնարկություններ և մասնագիտացված պահեստներ կառուցելու անհրաժեշտությունը։ Մինչդեռ դրա համար հարկավոր է ստեղծել տնտեսական անհրաժեշտ պայմաններ։

Ստանդարտ որակի կողմնորոշման դեպքում տնտեսական նորմալ շրջանառությունից դուրս է մնում զգալի քանակությամբ լավորակ, այսպես կոչված, ոչ ստանդարտ բանջարեղեն։ Պլանային իրացման ոլորտից դուրս է մնում ապրանքային ռեսուրսների մոտ 30 տոկոսը։ Բայց էկոնոմիկայի շահերին համապատասխանում է մի այլ, ավելի ճիշտ ուղի՝ լավորակ բանջարեղենը մթերելու, ապրանքային արտադրանքը պահանջարկի համաձայն պլանային հունի մեջ ներգրավելու կողմնորոշումը։ Դա, անտարակույս, կավելացնի երկրի պարենային ռեսուրսները։ Բայց դրա համար հարկավոր է սահմանել ու կիրառել բանջարեղենի որակի շերտավորում, ըստ տնտեսական-բուսաբանական և ապրանքային սորտերի։ Այդ սկզբունքին անցնելը թույլ կտա բանջարեղենի ռեսուրսներն օգտագործել պահանջարկի ուղիներով, կապահովի ընտրությունը, ասորտիմենտը, վճարն ըստ արժեքի։

Հենվելով կյանքի ռեալ պայմանների՝ որակի առկա տարբերություններին վրա, ընդգծելով այդ տարբերությունները և ըստ ամենայնի խթանելով որակի բարելավումը, ստանդարտացումը, գնագոյացման հետ միասին, կարող է Հայկական ՍՍՀ գյուղատնտեսության առաջատար ճյուղերը՝ բանջարաբուծությունը, կարտոֆիլաբուծությունը, բոստանաբուծությունը, պտղաբուծությունը և խաղողագործությունը մղել տեխնիկական արագ առաջադիմության ուղին։ Օրինակ, այդպիսի առաջադիմության մասին է ասում ՍՍՀՄ

առևտրի մինիստր Ա. Ի. Ստրուևը. «Եթե հնգամյակի սկզբին փաթեթված
պտուղների և բանջարեղենի առևտուր էր կատարվում միայն Մոսկվայում,
Լենինգրադում և Կիևում, ապա մինչև 1970 թ. նախատեսվում է բազմապա-
տիկ ավելացնել այն և կազմակերպել ինչպես միութենական հանրապետու-
թյունների բոլոր մայրաքաղաքներում, այնպես էլ երկրի հիմնական արդյու-
նաբերական կենտրոններում»: Ինչպես տեսնում ենք, կյանքը առաջ է գնում:
Գիտության խնդիրն է՝ տնտեսական ռեֆորմի ոգով մշակել այդ պրոբլեմի
լուծման արդյունավետ խթաններ:

ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը պահանջում են՝ ուժե-
ղացնել պլանային հիմունքը, կանխորոշել տևական ժամանակաշրջանների
գիտատեխնիկական բոլոր կարևորագույն ժողովրդատնտեսական պրոբլեմ-
ները: Այն հաշվով, որ այդպիսի պրոգնոզները դառնան վաղվա ձեռնարկու-
թյունների նախագծման հիմքը: Հայկական ՍՍՀ-ում կատարվում է բանջա-
րեղենի և կարտոֆիլի ձմեռային պահպանման զանազան պահեստների բա-
վական խոշոր շինարարություն: Մինչև 1970 թ. նախատեսվում է կառուցել
76 հազար տոննա տարողությամբ բանջարեղենի և կարտոֆիլի պահեստներ:
Պահեստների շինարարություն է սկսվում երկրի նաև այլ շրջաններում: Այդ
պահեստների նշանակությունը հսկայական է, դրանք կոչված են խիստ կըր-
ճատելու կորուստները և ապահովելու թարմ բանջարեղենի ու կարտոֆիլի
մատակարարումը բնակչությանը՝ տարին բոլոր: Բայց պահեստների հին
նախագծերը հնացել են, իսկ նորերում լուծվում են միայն տեխնիկական
խնդիրները՝ օդափոխման բնույթը, պահպանման եղանակները: Ոմանք գե-
րադասում են բանջարեղենը պահպանել հենց գետնին թափված վիճակում,
ուրիշներն առաջարկում են կոնտեյներային եղանակը:

Հայկական ՍՍՀ-ում բանջարեղենի, կարտոֆիլի և մրգի պահեստների
շինարարությունը կատարվում է ինչպես մթերման և իրացման վայրերում՝
Հայկոոպի և առևտրի մինիստրության միջոցով, այնպես էլ արտադրության
վայրերում: Այսպես, գյուղատնտեսության մինիստրության սովխոզներում
ենթադրվում է մոտակա տարիներին կառուցել 103 բանջարեղենի պահեստ՝
34,5 հազար տոննա տարողությամբ: Պտղի և բանջարեղենի խոշոր բազա-
ներ են ստեղծվում Երևանում, Լենինականում, Կիրովականում:

Հունգարիայում գտնում են, որ խնայողականությունը և բանջարեղենի
ու մրգերի պահեստների վերամշակման կետերի համար լավագույն պայ-
մաններն ապահովվում են մեծածախ առևտրի բնագավառում և պետական
տնտեսությունների խոշոր ձեռնարկություններում: Այս բոլոր հարցերն ու-
սումնասիրություն են պահանջում: Հայկական ՍՍՀ-ում նույնպես հարկա-
վոր է նոր մոտեցում: Անհրաժեշտ է կենտրոնացնել պահեստները, դրանք
վերածել արդյունաբերական ձեռնարկությունների և ապահովել տնտեսա-
պես հիմնավորված տեղաբաշխումը հանրապետության տերիտորիայում:
Ուժերի և միջոցների փոշիացումն օգուտ բերել չի կարող:

Հայկական ՍՍՀ պայմաններում կոմպլեքսային ստանդարտացման ան-
հրաժեշտությունն առանձնապես սուր կերպով է զգում գինեգործական ար-
դյունաբերությունը: Խաղողագործությունն ու գինեգործությունն օրգանապես
կապված են գինու և կոնյակի արտադրության հետ: Խաղողի որակով, դրա
սորտային կազմով է պայմանավորված գինիների և կոնյակների առանձին
տեսակների ասորտիմենտն ու որակը:

Եթե գոյություն ունեն պահածոյի արդյունաբերության պտղաբանջարա-



յին հումքի և գինիների ու կոնյակների ստանդարտներ, ապա այդպիսիք
չկան ելակետային հումքի՝ արդյունաբերական վերամշակման տրվող խա-
ղողի համար: Այդ պատճառով խաղողագործությունը ստանդարտացման
ներգործության ոլորտից, պետական վերահսկողությունից դուրս է: Ճիշտ է,
խաղողի շաքարայնությունը, որպես հաշվարկային մեծություն, գոյություն
ունի գնման-հանձնման գնացուցակում, բայց խաղողի որակի, դրա տեխնի-
կական հասունության, թույլատրելի նվազագույն շաքարայնության, մաք-
րասորտության, սանիտարիայի ու հիգիենայի և ստուգման մեթոդների նը-
կատմամբ այլ պահանջներ չկան: Կարճ ասած, օբյեկտիվ հիմքեր չկան ար-
դյունաբերական խաղողի պիտանիությունը որոշելու համար:

Երբ Հայաստանի խաղողագործական սովխոզները մտնում էին «Արա-
րատ» տրեստի և «Հայշամպայն» կոմբինատի սիստեմի մեջ, խաղողի ստան-
դարտների առանձին անհրաժեշտություն չկար, կարելի էր խոսել միայն կոլ-
տնտեսությունների մասին: Միանգամայն այլ դրություն է ստեղծվել խա-
ղողագործական սովխոզները հանրապետության գյուղատնտեսության մի-
նիստրությանը հանձնելուց հետո: Տարբերություններ են երևան եկել տնտե-
սական շահերի մեջ, ստեղծվել է գերատեսչական պատնեշ: Սակայն այդ
հանգամանքը հաշվի չառնվեց, արդյունաբերական խաղողի համար ստան-
դարտ չստեղծեցին:

Ինչպե՞ս գնահատել այս փաստը տնտեսական տեսակետից: Ըստ երև-
ույթին, դա հարկավոր է դիտել որպես գինեգործական արդյունաբերության
պարտականությունը՝ ընդունելու և վերամշակելու խաղողի հավաքված բեր-
քը, անկախ որակից: Ճի՞շտ է արդյոք դա: Ճիշտ չէ: Առանց որակական չա-
փանիշների, բացասական արդյունքներ են ստացվում: Նվազում է խաղողի
շաքարայնության միջին մակարդակը, վատանում է հայկական գինիների
որակը, կորսվում են գինու մի քանի արժեքավոր մակնիշներ, ինչպես, օրի-
նակ, «Մուսկատը»:

Ընթացիկ տարում Հայկական ՍՍՀ-ում արդյունաբերական վերամշակ-
ման համար տրվող խաղողի մթերման գները (մեկ տոննայի համար) 320
ռուբլուց, միջին հաշվով, հասցվում է 370 ռուբլու կամ բարձրանում է 15,6
տոկոսով, որը կխթանի կոլտնտեսությունների և սովխոզների շահագրգռվա-
ծությունը խաղողագործության զարգացման գործում: Սակայն մեծացնելով
խաղողի գնման ծախսերը, պետությունը հոգ է տանում նաև որակի, արտա-
դրության արդյունավետության բարձրացման մասին:

Գինեգործարանների հետ՝ կոլտնտեսությունների և սովխոզների տնտե-
սական փոխհարաբերությունների զարգացման նպատակով, տնտեսական
ռեֆորմի և խաղողագործության ու գինեգործության որակական ցուցանիշ-
ների բարելավման միջոցով, հարկավոր է մշակել արդյունաբերական վե-
րամշակման տրվող խաղողի ստանդարտ: Ստանդարտացմամբ միայն հնա-
րավոր կլինի հասնել գինեգործության բարձր մակարդակի:

Հայկական ՍՍՀ-ում բարձրացվում են նաև թարմ վիճակում վաճառվող
խաղողի մթերման գները՝ տոննայի համար, միջին հաշվով, 350 ռուբլուց
հասցնելով 450 ռուբլու կամ 28,6 տոկոսի: Հոգալով բնակչությանը խաղող
մատակարարելու գործի բարելավման համար, պետությունը չի կարող այդ
միջոցառումը չկապել որակի հետ: Մեր հանրապետությունում, ըստ էության,
սեղանի խաղողի մշակությանը դեռևս արժանի ուշադրություն չի նվիրվում:
Խաղողը բնակչությանն է վաճառվում խառը վիճակում, այն էլ գլխավորա-

պես արդյունաբերական սորտերը։ Որպես այդպիսի պրակտիկայի հիմնավորում, երևան է եկել նույնիսկ «ունիվերսալ» սորտ տերմինը։ Մինչդեռ Ֆրանսիայում, օրինակ, արգելված է բնակչությանը վաճառել տեխնիկական սորտեր, քանի որ ամեն մի սորտ ունի իր նշանակությունը։

Թարմ խաղողի Հայկական ՍՍՀ 232—62 հանրապետական տեխնիկական պայմանի գործող ստանդարտը հնացել է. այն հարկավոր է վերանայել։ Եվ եթե ելնենք էկոնոմիկայի պահանջներից, ապա նոր ստանդարտը պետք է նպաստի հանրապետությունում սեղանի խաղողի մշակության զարգացմանը։ Դրա համար նախ և առաջ անհրաժեշտ է տեխնիկական պահանջների և հանձնարարականների մեջ նախատեսել սեղանի խաղողի սորտեր՝ ըստ հասունացման ժամկետների՝ սկսած ամենավաղահաս սորտերից մինչև ամենաուշահասը, և ըստ ձմեռային պահպանման ժամկետների, նպատակ ունենալով ապահովել թարմ խաղողի վաճառքը բնակչությանը տարեկան մոտավորապես տասը ամիս։ Այս ամենի շնորհիվ կբարելավվի բնակչության մատակարարումը, աշխատուժի օգտագործումը գյուղում, կբարձրանա խաղողագործության շահութաբերությունը։

Գյուղատնտեսության և դրա առանձին ճյուղերի հետագա զարգացման պրոգնոզումը, փորձնական տնտեսությունների ստեղծումը, որոնք արտադրության մակարդակով առաջ են անցնում մյուս տնտեսություններից, ինչպես նաև դրա հիման վրա պլանային օրգանների և գիտահետազոտական հիմնարկությունների գործունեության կոորդինացումը թույլ կտա ստեղծել գիտականորեն հիմնավորված, հիրավի, առաջադիմական ստանդարտներ։
Ստանդարտացումը պետք է արտադրությունից առաջ անցնի և նպաստի հանրային արտադրության տնտեսական արդյունավետության բարձրացմանը։

Ս. Մ. ՄԵԼՔՈՄՈՎ

ՀՍՍՀ պետպլանի էկոնոմիկայի և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտի գների խմբի ղեկավար

# ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԱՌԱՋԱԴԻՄՈՒԹՅԱՆ ՃԱՆԱՊԱՐՀԻՆ

Սովետական Միության կոմունիստական կուսակցության ծրագրային հիմնական խնդիրներից մեկը բնակչության բարեկեցության սիստեմատիկ բարձրացումն է, նրա հարաճուն պահանջմունքների բավարարումը։ Այս բնագավառում վճռական նշանակություն ունի սննդի արդյունաբերությունը, որի զարգացման համար մեծ միջոցներ են ներդրվում։

Մինչև Հայրենական մեծ պատերազմը Հայաստանն արդեն ուներ խոշոր սննդարդյունաբերություն։ Պատերազմի տարիներին հանրապետությունում ստեղծվեցին սննդարդյունաբերության նոր ճյուղեր՝ ծխախոտի ֆերմենտացիոն, ձեթ-օճառի, մակարոնի-հրուշակեղենի. կազմակերպվեցին արտադրության նոր տեսակներ՝ հանքային ջրերի լցման, խորդենու յուղի գործարանային և հացաբուլկեղենի նոր արտադրությունը։ Սննդարդյունաբերությունն ավելի մեծ չափերով զարգացավ ետպատերազմյան տարիներին։ Գործող ձեռնարկությունների ընդլայնման հետ միասին մեծ թափ ստացավ նոր ճյուղերի ու ձեռնարկությունների շինարարությունը, այդ թվում՝ շաքարի, սննդաթթուների (լիմոնի և գինու), աղաթթուների ձեռնարկությունների կառուցումները, կազմակերպվեց մարգարինի, սալամասի, շամպայնի, օղու, լիկյորի, կվասի, թթվածնի արտադրությունը։



Ներկայումս հանրապետության սննդարդյունաբերության մինիստրության սիստեմում գործում են 90 ձեռնարկություն, իսկ 1970 թ. գործող ձեռնարկությունների շարքը կմտնի տարա-պիտակային կոմբինատը, որը կպատրաստի թիթեղյա տարաներ, պիտակներ, քրոմակեղևիկներ, կափարիչներ, պահածոների տուփերի խցանիչներ։ Առաջիկա երկու-երեք տարում կսկսվի երկու նոր հանքային ջրատեսակների արտադրությունը։ Ընդ որում, «Ջերմուկն» ու «Արզնին» հայտնի են ոչ միայն մեր հանրապետությունում։

ՍՄԿԿ XXIII համագումարի դիրեկտիվներում նշված է. կուսակցությունը հնգամյակի գլխավոր տնտեսական խնդիրն է համարում՝ գիտության ու տեխնիկայի նվաճումների ըստ ամենայնի օգտագործման, ամբողջ հանրային արտադրության ինդուստրիալ զարգացման, նրա արդյունավետության և աշխատանքի արտադրողականության բարձրացման հիման վրա ապահովել արդյունաբերության արտադրության նշանակալի աճ։ Իրագործելով կուսակցության համագումարի որոշումները, մեր հանրապետության սննդարդյունաբերության մինիստրության ձեռնարկությունների կոլեկտիվները վերջին տարիներին մեծ աշխատանք են կատարել արտադրության կոմպլեքսային մեքենայացման, հոսքային գծերի ստեղծման, նորագույն սարքերի տեղակայման համար։ Այսպես, գինու, օղու, կոնյակի, գարեջրի, հանքային ջրերի, ալկոհոլազուրկ խմիչքների լցման պրոցեսները (լվացում, լցում, խցանում, պիտակների փակցնում) մեքենայացված են։ Վերացվել են պրիմիտիվ փռերը։ Հացը մեծ մասամբ թխվում է մեքենայացված գործարաններում և աննշան մասը՝ փռերում։ Հանրապետության հացի գործարաններում մեքենայացված են խմորի շաղախման, հունցման պրոցեսները, վերջնական գնդումը, թխումը, ներարտադրամասային առաքումները։ Այդ միջոցառումների արմատավորմամբ տարեկան տնտեսական օգուտները հասնում են հարյուր հազարավոր ռուբլիների։

Երևանի հրուշակեղենի-մակարոնի կոմբինատում տեղակայված են մեքենայացված գիծ՝ ինֆրակարմիր ճառագայթներով խմորը տաքացնելու և պեչենի արտադրելու, հոսքային գծեր՝ վաֆլի, բատոններ, շոկոլադի սալիկներ թողարկելու, ավտոմատ սարքեր՝ կարամելն ու թխվածքները փաթեթելու համար։ Այդ ամենը նպաստեց մի շարք աշխատատար պրոցեսների մեքենայացմանը, ազատեց ավելի քան 20 բանվորական ձեռք, զգալիորեն բարձրացրեց արտադրության կուլտուրան, նվազեցրեց կորուստները, իսկ գլխավորը՝ բարելավեց արտադրանքի որակը և տնտեսական տարեկան արդյունավետությունը անցավ 150 հազար ռուբլուց։

Տեխնիկական շատ նորամուծություններ ի հայտ եկան Երևանի ձեթ-օճառ գործարանում։ Այստեղ շահագործման են հանձնվել երկու սարք՝ վակուումի ներգործությամբ օճառի անընդհատ մեխանիկական մշակման համար, ճարպի ոչ ռեակտիվ մանրատման արտադրամասը, բամբակի սերմերի մեքենայացված պահեստի առաջին հերթը, մեքենայացված գիծ՝ բուսական յուղի կշռաբաշխման համար, բամբակի սերմերի պնևմատիկ բեռնաթափիչներ։ Մինչ օճառի մեխանիկական մշակման նպատակով ներդրված սարքերի տեղակայումը, օճառը մշակում էին 55 բանվոր, իսկ այժմ՝ 25։ Բացի այդ, 12 անգամ պակասել են օճառի թափոնները (կտրվածքները)։ Ճարպի ոչ ռեակտիվ մանրատման արտադրամասը շահագործման հանձնելու շնորհիվ ձեռքի աշխատանքը միանգամայն վերացված է. այն մնում է միայն մեխանիզմնե-

րի կարգավորման և ակտիվ դիտարկման համար։ Այդ հնարավորություն տվեց նույնորակ հումքից տարեկան լրացուցիչ ստանալ մոտ 80 տոննա գլիցերին կամ, դրամական արտահայտությամբ, 60 հազար ռուբլի։ Զգալի չափով բարելավվել է արտադրանքի որակը, պակասել են կորուստները։ Ներդրված միջոցառումների տնտեսական արդյունավետությունը տարեկան անցնում է 300 հազար ռուբլուց։

Նպիտակի շաքարի գործարանը, լիովին իրագործեց ճակնդեղը ավտոմեքենաներից բեռնաթափելու և հատուկ սարքավորումների միջոցով այն կույտավորելու պրոցեսների մեքենայացումը։ Մինչ այդ մեկ մեքենա բեռնաթափելու համար երկու բանվոր ծախսում էին 25—30, իսկ այժմ՝ 3—4 րոպե։ Այստեղ շաքարով լի պարկերի դարսման աշխատատար պրոցեսը կատարում են դարսիչները, որոնց շնորհիվ երեք անգամ բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, զգալի չափով նվազել են շաքարի կորուստները։

Խորդենու վերամշակման ձեռնարկություններում (յուղ ստանալու նպատակով) տեխնիկական հեղափոխություն է կատարվել։ Նախկինում կիրառվում էին, այսպես կոչված, պարբերական գործողության թորիչ կաթսաներ։ Խորդենու կանաչ զանգվածն այդ կաթսաներն էին լցվում ձեռքով, ապա տրորում ոտքերով, կաթսայի կափարիչը նույնպես ձեռքով էր պտտակվում և սկսվում էր յուղի թորումն ու մշակված ամբողջ զանգվածը կաթսաներից դուրս էր բերվում նույնպես ձեռքով։ Օրական մեկ կաթսան վերամշակում էր ընդամենը 2—2,5 տոննա կանաչ մասսա։ Ներկայումս տեղակայված են ամենաարդիական, անընդհատ գործող ապարատներ, որոնք օրական մոտ 50 տոննա խորդենու կանաչ զանգվածի վերամշակման արտադրողականություն ունեն։ Այսպիսով, խորդենու վերամշակման և եթերայուղի ստացման պրոցեսը լիովին մեքենայացված է (բացի հումքը ապարատին հանձնելը) և այդ ապարատների օգտագործումը տարեկան տալիս է ավելի քան 100 հազար ռուբլու տնտեսական արդյունավետություն, ազատում է տասնյակ բանվորական ձեռքեր։

Նոր տեխնիկայի արմատավորման ուղղությամբ քիչ աշխատանք չի կատարվել գինու նախնական վերամշակման ձեռնարկություններում։ Խաղողի վերամշակման համար յուրացված են ՎՊԼ—20 մեքենայացված գծերը։ Բարձր արտադրողական այդ գծերը 15—20 տոկոսով նվազեցնում են հումքի կորուստները, յուրաքանչյուր ագրեգատում ազատում 10 բանվորական ձեռք։

Տնտեսական մեծ արդյունք է տալիս հերմետիկական էմալապատ խոշոր տարողությունների օգտագործումը կոնյակի սպիրտների պահպանման համար։ Սովորաբար կոնյակի սպիրտը պահպանվում է կաղնե տակառներում, ուր սպիրտի կորուստն ավելի քան 4 տոկոսի է հասնում, իսկ էմալապատ տարողություններում, որոնք ծածկվում են կաղնե տակառատախտակով, սպիրտի կորուստը գրեթե երեք անգամ պակաս է։ Բացի դրանից, խոշոր տարողությունների օգտագործումը պայմաններ է ստեղծում կոնյակի սպիրտը պոմպերով տեղափոխելու և լցման պրոցեսները մեքենայացնելու համար։ Տեխնիկական մակարդակի բարձրացման գործում արժեքավոր ավանդ են մուծել գյուտարարներ Պ. Միրզոյանը և Խ. Գևորգյանը։ «Անընդհատ գործողության թորիչ կաթսայի» վերաբերյալ նրանց գյուտի գործադրմամբ մեքենայացվում է սպիրտի ստացման պրոցեսը, երկու անգամ ավելանում աշխատանքի արտադրողականությունը և 1,5 անգամ նվազում կորուստները.



այդ կաթսաների օգտագործման տնտեսական արդյունավետությունը կազմում է 100 հազար ռուբլի։

Գյուտարարներ Է. Մնջոյանը, Ֆ. Մալիկը, Ռ. Պետրոսյանը և Մ. Սեդրակյանն արմատավորել են մի մեթոդ, որով թորման պրոցեսում նոր կոնյակի անգույն սպիրտը հարստանում է կաղնու բնափայտի մզվածքի նյութերով։ Այդ միջոցառումը նպաստում է փնջի բուրավետությանը և կոնյակի սպիրտի արագ հասունացմանը։

Երևանի ծխախոտի փորձնական կոմբինատը, որն արդեն մի քանի տարի առաջ իր ուժերով ստեղծել էր սիգարեթների ու գլանակների արտադրության մեքենայացված հոսքային սիստեմ, հագեցվեց ժամանակակից մեքենայացված երկու գծերով՝ ֆիլտր ունեցող բարձրորակ սիգարեթների արտադրության համար՝ ինչպես փափուկ, այնպես էլ կոշտ փաթեթավորմամբ։ «Արինբերդ», «Սալյուտ», «ՀՏ», «Էրեբունի» անունները կրող այդ արտադրանքները մեծ պահանջարկ ունեն և համամիութենական համտեսի ժամանակ արժանացել են բարձր գնահատականի։ Ներկայումս գյուտարարների մի խումբ, ծխախոտի փորձնական կոմբինատի դիրեկտոր Ա. Փիրվերդյանի ղեկավարությամբ, իրագործում է մի կարևոր միջոցառում (սիգարեթների համար հայրենական հումքից ֆիլտր պատրաստելու տեխնոլոգիան), որը մեզ կազատի արտասահմանից ֆիլտրեր ներմուծելու հոգսից։ Այս տարի փորձնական լաբորատոր տեղակայանքում թողարկվելու է 100 մլն ֆիլտր վեցապատիկ երկայնքով, իսկ հաջորդ տարիներին կառուցվելու է ֆիլտրերի հատուկ ֆաբրիկա՝ 3000 մլրդ ֆիլտր կարողությամբ, որը հնարավորություն կտա զգալի չափով ապահովելու Միության կարիքները և հրաժարվելու ներմուծումից։

Երևանի ծխախոտի ֆերմենտացիոն գործարանը նշանակալի աշխատանք է կատարել «Տոնգո» մեթոդով ծխախոտի մշակման համար ագրեգատներ արմատավորելու գործում։ Դրանց գործադրումը 4 անգամ մեծացնում է աշխատանքի արտադրողականությունն այնպիսի աշխատատար պրոցեսներում, ինչպիսին ծխախոտի դասավորումն է հակերում, շեշտակիորեն ավելացնում է «Տոնգո» մեթոդով մշակված ծխախոտի թողարկումը, որի պահանջարկը մեծ է ո՛չ միայն Սովետական Միությունում, այլև նրա սահմաններից դուրս։

Թե ինչպես են պահածոների արդյունաբերության ձեռնարկությունները տեխնիկապես վերազինվում, կարելի է ցույց տալ Հոկտեմբերյանի պահածոների գործարանի օրինակով։ Այստեղ լիովին մեքենայացված են տոմատի մածուկի, մրգահյութի ստացման պրոցեսները։ Դա նվաճված է հատուկ մեքենայացված գծերի տեղակայումների հաշվին, այդ գծերը սպասարկող բանվորների դերը սոսկ հանգում է նրան, որ նրանք ակտիվորեն դիտեն ու կանոնավորեն վերահսկող սարքը։ Այդ նույն գործարանում արմատավորված է խաղողի հյութի ստացումը արագացված մեթոդով, որ առաջարկել է տեխնիկական գիտությունների թեկնածու Վ. Այզենբերգը. այժմ հյութի ստացման պրոցեսը, նախկին մի քանի ամսվա փոխարեն, տևում է ընդամենը մեկ օր։

Գործարանում միջարտադրամասային և ներարտադրամասային բոլոր փոխադրումները կատարվում են էլեկտրասայլակներով։ Այդ միջոցառումների արմատավորման տնտեսական արդյունավետությունը տարեկան 200

հազար ռուբլուց ավելի է. շեշտակիորեն բարձրացել է արտադրության կուլտուրան և նկատելիորեն բարելավվել արտադրանքի որակը։

Երևանի և Այրումի պահածոների գործարաններն արմատավորել են թխթեղատուփերի պատրաստման մեքենայացված գծեր։ Դրանք լիովին մեքենայացնում են տուփերի պատրաստման պրոցեսը, վերացնում ապակեբանկաների ջարդվածքը, որը խցանման տեղամասում բարելավում է սանիտարական դրությունը և բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը։ Այդ միջոցառման տնտեսական արդյունավետությունը 50 հազար ռուբլուց ավելի է։

ՀՍՍՀ սննդարդյունաբերության մինիստրության սիստեմում նոր տեխնիկայի գծով տարեկան արմատավորվում են 70—80 կարևոր միջոցառում՝ 900—1000 ռուբլու տնտեսական արդյունավետությամբ։ 1968 թ. իրագործված է ավելի քան 80 միջոցառում, մեկ մլն ռուբլուց ավելի արդյունավետությամբ։ Պակաս ջանքեր չեն թափված նաև թողարկվող արտադրանքի ասորտիմենտի ընդլայնման ուղղությամբ։ Վերջին երկու տարում յուրացվել և թողարկվել են ավելի քան 100 նոր և բարելավված արտադրանք՝ «Նաիրի» և կոնյակը՝ 20 տարվա, «Արտենի», «Արագած», «Նորք», «Եղվարդ», «Նեկտարենի» գինիները, «Անի» և «Լենինական» գարեջրերը, «Արարատ», «Էրեբունի» ալկոհոլ չպարունակող խմիչքները, «Բալենի» լիկյորը, «Երևան» և «Նաիրի» շոկոլադե վաֆլիի, «Ուրարտու» տորթերը, «Վաղե տերևներ», «Թթի դոշաբ», «Տնային ջեմ», «Տոմատի մածուկ կարմիր բիբարով» պահածոները, «Բջնի» հանքային ջուրը, որը համանման է «Բորժոմին»։

Չի կարելի չնշել նաև այն մեծ ավանդը, որ ձեռնարկությունների տեխնիկական մակարդակի բարձրացման բնագավառում ներդնում են արտադրության նորարարներն ու առաջավորները։ Յուրաքանչյուր տարի արմատավորվում է 650—700 նորարարական առաջարկություն, որոնք մոտ 1 մլն ռուբլու տնտեսական արդյունավետություն ունեն։ Միայն 1968 թ. արմատավորված է 731 նորարարական առաջարկություն, 1,3 մլն ռուբլու արդյունավետությամբ։ Դրանցից են Երևանի պահածոների գործարանի փականագործներ Կ. Կատոյանի և Մ. Մեսրոբյանի «Վակուում—գոլորշիացնող ապարատների վերակառուցումը՝ դրանց կարողությունները բարձրացնելու համար» և «Բանջարեղեն կտրատող նոր կառուցվածքի մեքենաների ստեղծման» առաջարկությունները։ Արտաշատի պահածոների գործարանի մեխանիկական արտադրամասի պետ Հ. Թորոյանը հնարել է հնգասայր դանակներ՝ վարունգ ու բադրիջան կտրատելու համար։ Երևանի կոնյակի գործարանի մեխանիկ Ֆ. Մալիկը ստեղծել է լվացող մեքենա՝ 0,35 լիտր տարողությամբ հատուկ տեսք ունեցող շշերի լվացման համար. մինչ այդ շշերը լվացվում էին ձեռքով։ Նա պատրաստեց նաև շշեր խցանող հատուկ մեքենա։ Երևանի գինեքարային թթուների գործարանի մեխանիկ Հ. Բաբայանը ստեղծել է գինեքարային թթուն չորդելու սարք և վերակառուցել վակուում-ապարատը՝ դրա արտադրողականությունը բարձրացնելու նպատակով։

Մասիսի պահածոների գործարանում ներդրվել են գլխավոր ինժեներ Վ. Ավագյանի և գլխավոր մեխանիկ Ս. Վարդանյանի՝ «Տոմատ-մածուկի և տոմատի հյութի մշակման կարողություններն ավելացնող օժանդակ հումքային հարթակների օգտագործումը» (տարեկան 38,27 հազար ռուբլու տնտեսական արդյունավետությամբ) և «Քաղցրաջուր ու թթվաջուր պատրաստելու համար հիդրավլիկ փոխադրման վերակառուցումը գծի մոնտաժումով» (տարեկան 42,2 հազար ռուբլի տնտեսական արդյունավետությամբ) առաջարկությունները։ Վերջին երկու տարում սննդարդյունաբերության ձեռնարկություններում նոր տեխնիկայի արմատավորմամբ ավելի քան 5 մլն ռուբլով իջավ արտադրանքի ինքնարժեքը։



Բայց ձեռք բերվածը սահման չէ։ Դեռևս շատ բան է մնում անելու հետագա տեխնիկական առաջադիմության ճանապարհին։ Երևանի ձեթ-օճառ կոմբինատում պետք է գործադրվեն օճառի անընդհատ եռացման մեթոդը, մարգարին, ձեռքի օճառ արտադրելու, ճարպոտ թթուները թորելու մեքենայացված գծերը։ Երևանի և Սևանի ծխախոտի-ֆերմենտացիոն գործարաններում կօգտագործվեն ծխախոտի ֆերմենտացիայի անընդհատ գործողության մեքենայացված գծերը, որոնք հնարավորություն կընձեռեն ֆերմենտացիոն խցերում լիովին վերացնելու ծխախոտի բեռնման ու բեռնաթափման ֆիզիկական ծանր աշխատանքը, նվազեցնելու բանվորների թիվը և նկատելիորեն բարելավելու ծխախոտի որակը։ Առանց տարայի ալյուրի փոխադրման, պահպանման, մրգերի՝ խոր սառեցման մեթոդի կիրառմամբ, հետագայում դրանք բնակչությանը վաճառելու և միջսեզոնային ժամանակաշրջանում քաղցրաջրեր պատրաստելու համար ո՛չ միայն կերկարի աշխատանքի սեզոնը պահածոների գործարաններում, այլև կլոր տարին բնակչությանը կապահովի մրգերով։ Ածիկ արտադրելիս կօգտագործվեն անընդհատ գործողության հարմարանքներ։ Կկիրառվեն արտադրողական լցնող գծեր, որոնք ժամում կլցնեն 24 հազար շիշ, ներկայիս 6 հազար շիշ լցնող գծերի փոխարեն։ Խմորի պատրաստման նոր տեխնոլոգիայի արմատավորմամբ կբարձրանա արտադրության կուլտուրան. կկիրառվեն նաև գարեջրի խաղմուղը անընդհատ մեթոդը և մի շարք այլ միջոցառումներ։

Մտնելով Վ. Ի. Լենինի ծննդյան հարյուրամյակի առթիվ ծավալված մրցության մեջ, հանրապետության սննդարդյունաբերության ձեռնարկությունների աշխատավորները լի են վճռականությամբ՝ շարունակելու պայքարը հետագա տեխնիկական առաջադիմության, բանվորների աշխատանքը ըստ ամենայնի հեշտացման, արտադրական բոլոր պրոցեսների առավելագույն մեքենայացման և ավտոմատացման համար։

Աշխատանքի գիտական կազմակերպման և արդի բարդ տեխնիկայի սերտ միասնության մեջ են ամբարված արտադրության տնտեսական արդյունավետության աճի գլխավոր ռեզերվները՝ հնգամյա պլանի հաջող կատարման գրավականը։

Ա. Ի. ՁԵԼՅԲՈՒՐԳ

ՀՍՍՀ սննդարդյունաբերության մինիստրության
տեխնիկական բաժնի պետ, ճանրապետության
վաստակավոր ինժեներ

## ԵՐԻՏԱՍԱՐԴ ԳԻՏԱԿԱՆ ԱՇԽԱՏՈՂԻ *ամբիոն*

# ԱՇԽԱՏԱՆՔԻ ԲՆՈՒՅԹԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻՆ ԱՆՑՆԵԼՈՒ ԺԱՄԱՆԱԿԱՇՐՋԱՆՈՒՄ

Կոմունիզմի կառուցման ընդհանուր պրոցեսում հիմնական խնդիրը նրա նյութատեխնիկական բազայի ստեղծումն է, որն էական փոփոխություններ է հարուցում ինչպես սոցիալիստական հասարակության արտադրահարաբերություններում, այնպես և հասարակական կյանքի բոլոր մարզերում: Արտադրահարաբերությունների փոփոխությունն ու զարգացումն իր հերթին խթանելու է սոցիալիստական հասարակության արտադրաուժերի ծաղկման, նյութական ու հոգևոր բարիքների բաշխման ձևերի և դասակարգերի ու սոցիալական խմբերի փոխհարաբերությունների կատարելագործմանը և այլն: Փոխվելու և կատարելագործվելու են ոչ միայն կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության, այլև պետական սեփականության ձևերը, մի հանգամանք, որը վճռական դեր է խաղալու սոցիալիստական հասարակությունը կոմունիստականի վերաճելու ողջ պրոցեսում: Սոցիալիստական սեփականությունը կոմունիստականի վերաճելու գլխավոր ուղին աշխատանքի հասարակական բնույթի հետագա զարգացումն է և դրա սոցիալ-տնտեսական միատարրության ապահովումը:

Վ. Ի. Լենինն անցումը սոցիալիզմից կոմունիզմին կապում էր աշխատանքի բնույթի ու էության փոփոխման, դրա հասարակական բնույթի զարգացման և սոցիալ-տնտեսական տարատեսակության հաղթահարման հետ:

Սոցիալիզմն աստիճանաբար վերացնում է մասնավոր սեփականությունը և դրա հետ մեկտեղ անհատական ու հասարակական աշխատանքների միջև եղած հակամարտությունը: Ծագելով արտադրամիջոցների հանրային սեփականության բազայի վրա, համամասնական զարգացման տնտեսական օրենքը հնարավորություն է ընձեռում ըստ արտադրաճյուղերի նախապես պլանավորել արտադրամիջոցների և աշխատուժի բաշխումը, հաշվի առնել տարբեր արդյունքների հասարակական պահանջարկը, այսինքն՝ արժեքների գործադրումն աշխատանքի տարբեր ձևերի ծախսումներին համեմատ:

Սոցիալիզմի ժամանակ ծախսված անհատական աշխատանքը միշտ ճանաչում է գտնում հասարակության կողմից, որովհետև այն նախապես պլանավորված է և ունի անմիջական հասարակական բնույթ: Սոցիալիզմի օրոք անհատական և հասարակական աշխատանքի միջև հակամարտություններ չկան, քանի որ այն վերացնում է արտադրության հանրային բնույթի և յուրացման անհատական ձևի բախումը:

Սովետական տնտեսագետներից ոմանք գտնում են, որ սոցիալիզմի պայմաններում աշխատանքն ունի ավարտուն հասարակական բնույթ: Նրանք կարծում են, թե սոցիալիզմի օրոք աշխատանքը, լինելով անմիջականորեն հասարակական, նախապես պլանավորված է պետության կողմից, որ անհատական և հասարակական աշխատանքների միջև հակասություն չկա: Ուրիշները նշում են, որ ավարտված չէ աշխատանքի հանրային դառնալու պրոցեսը և այն ամբողջական ու անմիջական հասարակական բնույթ չունի:

Մեր կարծիքով, չպետք է կատեգորիկ պնդել կամ բացառել սոցիալիզմի պայմաններում աշխատանքի անմիջական հասարակական բնույթը: Հանրահայտ է, որ պլանային-համամասնական զարգացման տնտեսական օրենքի ներգործությունը հնարավորություն է ընձեռում սոցիալիզմի պայմաններում նախօրոք հաշվի առնել



աշխատանքի ծախսումները և անհատական աշխատանքին նախապես հասարակական բնույթ հաղորդել: Բայց հայտնի է, որ սոցիալիզմի պայմաններում աշխատանքի սոցիալ-տնտեսական անմիատարրության բացակայության շնորհիվ աշխատանքի ծախսումները պլանավորվում են ոչ անմիջական աշխատաժամանակով, այլ միջնորդված աշխատանքի արդյունքի, այսինքն՝ ապրանքի միջոցով: Այստեղ կարող է երկընտրանք առաջանալ. կամ սոցիալիզմի օրոք աշխատանքն ամբողջովին և անմիջականորեն հասարակական է, չկա աշխատանքի սոցիալ-տնտեսական միատարրություն և դրա արդյունքների արժեքային ձևերի անուղղակի առնդրման անհրաժեշտություն, հետևաբար և սոցիալիզմի պայմաններում չկա ապրանքային արտադրություն: Կամ, եթե սոցիալիստական արտադրությունն ապրանքային է, իրեն հատուկ օրենքներով ու կատեգորիաներով, ապա կոմունիստական հասարակության զարգացման սոցիալիստական փուլում խոսք չի կարող լինել աշխատանքի անմիջական ու լիովին հասարակական բնույթի մասին:

Այստեղ, մենք համոզվում ենք, որ սոցիալիզմի էությանը ևս խորթ չէ ներքին հակասականությունը: Սոցիալիզմը՝ որպես կոմունիզմի ցածր փուլ, ծնվել է կապիտալիզմի հեղափոխական ճանապարհով ոչնչացումից, տակավին չի մաքրվել կապիտալիզմի «երկունքի բծերից» և միաժամանակ դեռևս հասուն կոմունիզմ չէ: Սոցիալիզմը-զարգացող հասարակարգ է և ներքին այդ հակասությունները, նրա ինքնաբերական զարգացման աղբյուրն ու ձևն են: Թե՛ սոցիալիստական արտադրության ապրանքային բնույթը և թե՛ պլանայնությունը, ըստ էության, սոցիալիստականից կոմունիստական հասարակության զարգացման երկու կողմերն են, այնպես, ինչպես հասարակական սեփականության պետական ձևն ու դրա կոմունիստական սեփականության վերաճման հեռանկարը՝ զարգացման միասնական պրոցես է:

Սոցիալիզմի պայմաններում աշխատանքի հանրայնացման պրոցեսն ավարտված չէ: Այն դեռևս երևան չի գալիս որպես անմիջական և լրիվ հանրային աշխատանք: Այդ անավարտությունը պայմանավորված է, մի կողմից աշխատանքի սոցիալ-տնտեսական անմիատարրությամբ, մյուս կողմից՝ սեփականության տարբեր ձևերի առկայությամբ:

Աշխատանքի սոցիալ-տնտեսական անմիատարրությունը հնարավորություն չի ընձեռում արտահայտելու կոնկրետ աշխատանքի բազմազանությունը բուն աշխատաժամանակում: Արդյունքների արտադրումը կատարվում է կոնկրետ աշխատանքի տարբեր ձևերը վերացական աշխատանքի վերածումով և ապրանքի արժեքների միջոցով այդ վերացական աշխատանքի արտահայտությամբ: Համադրվում են ոչ թե ծախսված աշխատանքի քանակները, այլ ապրանքի, արդյունքի մեջ մարմնացած արժեքները:

Արդյունքները, որ հավասար են իրենց վրա ծախսված աշխատանքի քանակին, միատեսակ հասարակական ճանաչում են ստանում: Ուրեմն, արդյունքները, իրենց աշխատանքի տարբեր ձևերի հասարակական անհրաժեշտ չափանիշ են մնում: Դրա համար պլանայնությունն անմիջականորեն կապված է ոչ այնքան կոնկրետ աշխատաժամանակի հաշվարկից, որքան դրա իրային, այսինքն՝ անուղղակի չափից: Սոցիալիզմի պայմաններում ապրանքը երևան է գալիս որպես վերացական աշխատանքի մարմնավորում և միաժամանակ որոշակի կոնկրետ աշխատանքի արդյունք: Սոցիալիստական եղանակով հանրայնացված աշխատանքի այդ երկակի բնույթն ապրանքի երկկողմանի հակադրության՝ արժեքի և սպառարժեքի, արտահայտությունն է: Սոցիալիզմի պայմաններում այդ հակադրությունը պայմանավորված է ոչ թե արտադրության հասարակական բնույթի և յուրացման անհատական ձևի հակամարտությամբ, այլ միայն աշխատանքի դեռևս պահպանվող սոցիալ-տնտեսական անհավասարության մնացուկներով:

Սոցիալիզմի պայմաններում ապրանքի արժեքն արտահայտում է ո՛չ միայն այն, ինչ ապրանքարտադրողների համար ընդհանուր է արտադրահարաբերություններում, այլև, ամենից առաջ դրսևորվում է որպես պլանային արտադրության կատեգորիա: Օբյեկտիվորեն ստեղծվելու արտադրության մեջ, արժեքը միաժամանակ ձևավորվում է պլանայնության և արտադրության պայմաններում հասարակական ուղղակի կարգավորման օրենքի վճռական ներգործությամբ: Այդ հնարավորություն է ընձեռում վճռականորեն հաղթահարելու արժեքի տարերային ձևավորումը և պլանաչափորեն օգտագործելու սրա ձևերը՝ փողը, գինը և այլն:

Սոցիալիստական հասարակությունը հնարավորություն ունի հիմնական համամասնություններով ստեղծելու հասարակական արտադրության կառուցվածքը՝ ռեալ պահանջարկի պլանային հաշվարկին համապատասխան, քանի որ սոցիալիստական եղանակով արտադրվող ապրանքի արժեքն արտադրության համար արդեն ինքնանպատակ չէ, այլ պլանային հաշվարկի և ժողովրդական տնտեսության հիմնական խնդիրների առավել տնտեսական լուծումների միջոց:

Այստեղից երևում է, որ երբ արդյունքը դադարում է ապրանք լինելուց, սոցիալիստական եղանակով արտադրվող ապրանքի էության մեջ և դրա հատկություններում բովանդակում են կոմունիստական հարաբերությունների ծիլեր: Հետևաբար, աշխատանքի հանրայնացման պրո-

ցեսի ավարտումն ու դրա ամբողջական և անմիջական հասարակական բնույթ ձեռք բերելը կապված է, մի կողմից աշխատանքի սոցիալիստական բաժանման զարգացման և դրա սոցիալ-տնտեսական տարատեսակության վերացման, մյուս կողմից՝ բուն պլանավորման զարգացմամբ ու կատարելագործմամբ: Պլանայնությունը՝ որպես արտադրության օբյեկտիվ օրինաչափություն, հիմնված արտադրամիջոցների հանրային սեփականության վրա, ենթարկվում է որակական էական փոփոխությունների:

Եթե սոցիալիզմի՝ կոմունիզմի առաջին փուլում, այն կախված է աշխատանքի իրային, ապրանքային ձևերի հաշվարկից ու շարժումից, ապա կոմունիզմի զարգացած փուլում այն կարտացոլի անմիջական աշխատանքի հաշվարքն ու շարժումը՝ դրա բնական չափով-աշխատաժամանակով: Նկատի ունենալով պլանայնությունը կոմունիզմի բարձրագույն փուլում, Մարքսն ու Էնգելսը գրել են. «Մասնավոր սեփականության բազիսի ոչնչացմամբ, արտադրության կոմունիստական կարգավորմամբ, որը վերացնում է այն օտարումը, որպեսզի ձևով մարդիկ վերաբերում են իրենց սեփական արտադրանքին, անհետանում է նաև պահանջարկի և առաջարկի տիրապետությունը և մարդիկ նորից արտադրությունը ենթարկում են իրենց փոխհարաբերության եղանակներին» (տե՛ս Маркс и Энгельс, соч. т. III, стр. 34):

Այսպիսով, պետական սեփականության վերաճումը լիակատար կոմունիստական համաժողովրդական սեփականության տեղի կունենա ոչ թե արտադրամիջոցների սեփականության ձևերի փոփոխմամբ, այլ աշխատանքի բնույթի, դրա մեջ սոցիալ-տնտեսական տարբերությունների վերացմամբ, հանրայնացման պրոցեսի ավարտմամբ և պլանայնության զարգացմամբ: Աշխատանքի բնույթի փոփոխությունը գլխավոր, վճռական պայմանն է պետական սեփականությունը լիակատար կոմունիստական սեփականության վերաճելու գործում: Աշխատանքի բնույթի հիմնական առանձնահատկությունները միշտ անմիջական կախման մեջ են տեխնիկայի և արտադրաուժերի զարգացումից: Այդ պատճառով արտադրաուժերի զարգացման աստիճանը և կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը փոփոխում են աշխատանքի բնույթն ու էությունը, որը և պետական սեփականության՝ կոմունիստական սեփականության վերաճման արտահայտությունն է:

Աշխատանքի հասարակական բնույթի զարգացումն արտահայտվում է նաև նրա սոցիալ-տնտեսական տարատեսակության հաղթահարմամբ: Կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում տեղի է ունենում աստիճանական հաղթահարման, ապա նաև աշխատանքի սոցիալ-տնտեսական տարատեսակության վերացման պրոցես: Սոցիալիզմի փուլում աշխատանքն իր սոցիալական և տնտեսական էությամբ միատարր չէ: Այստեղ պահպանվում են սոցիալ-տնտեսական տարբերությունները մտավոր և ֆիզիկական, որակավորված և անորակ, գյուղատնտեսական, պարզ և բարդ, ծանր ու թեթև, բարձր ու ցածր արտադրողական աշխատանքի միջև: Դա նշանակում է, որ աշխատանքի որոշակի կոնկրետ ձևերը, փաստորեն, տակավին միակցված են հասարակական արտադրության առանձին մասնակիցների աշխատակցողներին: Կոնկրետ աշխատանքի տարբեր ձևերն անհավասարաչափ են հագեցված ժամանակակից տեխնիկայով, բացի այդ, արտադրամիջոցների տեխնիկական օգտագործման ասպարեզում էական տարբերություններ կան աշխատողների միջև: Արտադրամիջոցների՝ որպես տեխնիկայի կիրառման օբյեկտի հանդեպ աշխատողների միջև դեռևս լիովին հավասարություն չկա: Այդ անհավասարության տնտեսական արտահայտությունը հենց աշխատանքի մեջ նկատվող անհավասարության տարրն է, աշխատողների կոնկրետ աշխատանքի որոշակի ձևին գամված մնալը:

Յուրաքանչյուր աշխատողի տնտեսական որոշակի մեկուսացումն աշխատանքից, սրա տնտեսական անհավասարությունը հնարավորություն չեն ընձեռում կոնկրետ աշխատանքի տարբեր ձևերի ուղղակի և պլանաչափ վերածումը մեկ միասնական և միասեռ աշխատանքի: Յուրաքանչյուր աշխատողի ավանդը չի կարող չափվել աշխատանքի բնական չափանիշով՝ աշխատաժամանակով, չի կարելի հավասարեցնել աշխատանքի բնական չափանիշի օգնությամբ, այսինքն՝ աշխատաժամանակով, մտավոր և ֆիզիկական, բարդ և պարզ, որակավորված և անորակ աշխատանքով: Ահա աշխատանքի սոցիալ-տնտեսական այս տարատեսակությունը, դրա որակական և քանակական ոչ միատեսակությունը հնարավորություն չեն ընձեռում աշխատանքն արտահայտել իր բնական չափանիշով՝ աշխատաժամանակով: Այն անհնարինությունը չի կարելի հաղթահարել տեխնիկական որևէ եղանակով:

Տարբեր բնույթի աշխատանքները կարելի է հավասարեցնել միայն աշխատանքի արդյունքի և արտադրանքի համադրմամբ: Ուրեմն, իրը, արտադրանքը տարբեր աշխատանքներում մնում են որպես հանրային անհրաժեշտ չափանիշ: Սոցիալիզմի պայմաններում աշխատանքի սոցիալ-տնտեսական տարատեսակությունը պայմանավորված է աշխատանքի հասարակական բաժանմամբ, տեխնիկական հագեցվածության անբավարարությամբ, սոցիալիստական հասարակության հանրայնացման անավարտությամբ,



սոցիալիստական հասարակության գործող ուժերի կողմից արտադրամիջոցների պրակտիկ օգտագործման տարբեր կարողություններով: Նշված պատճառները պահպանվում և գործում են սոցիալիզմի ժամանակ: Բայց արտադրաուժերի զարգացման և արտադրահարաբերությունների կարգավորման հետ մեկտեղ, դրանք հետզհետև անհետանում են և պայմաններ ստեղծում աշխատանքի սոցիալ-տնտեսական տարատեսակության հաղթահարման, ապա նաև վերացման համար: Սեփականության հարաբերությունների զարգացումը, պետական սեփականությունը կոմունիստականի վերաճելը արտահայտվում են աշխատանքի բնույթի փոփոխմամբ ու զարգացմամբ, սոցիալիստական աշխատանքը կոմունիստականի վերաճելով:

Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ըստեղծման ընթացքում, կոմպլեքս մեքենայացման և ավտոմատացման, համատարած էլեկտրիֆիկացման և հաշվողական տեխնիկայի լայն արմատավորման շնորհիվ, զգալի չափով բարձրանում է աշխատանքի տեխնիկական հագեցվածությունը: Դրա և արտադրապրոցեսներից ձեռքի աշխատանքի աստիճանաբար դուրս մղելը կատարելագործում են աշխատանքի բաժանման բնույթը, վերացնում պարզ և բարդ աշխատանքի միջև եղած տարբերությունները: Դա հանգեցնում է կոնկրետ աշխատանքի որոշակի ձևերի արտադրողականության հավասարեցման:

Կոնկրետ աշխատանքի տարբեր ձևերի արտադրողականության հավասարեցումը, դրա բարձր տեխնիկական հագեցվածության բազայի հիման վրա, տեղի է ունենում նախ առանձին ձեռնարկությունների ներսում՝ համանման աշխատանքային գործողություններում, ապա արտադրաճյուղերում, այնուհետև ողջ հասարակական արտադրության մեջ: Աշխատանքի տեխնիկական առավել հագեցվածության հետ մեկտեղ, ավելանում են նաև արտադրողների տեխնիկական գիտելիքները:

Կոլտնտեսային-կոոպերատիվ սեփականության ձևերը կոմունիստականին մոտեցնելու և գյուղատնտեսությունն էլեկտրաէներգիայով ու ժամանակակից տեխնիկայով առավել հագեցնելու պրոցեսում գյուղատնտեսական աշխատանքն աստիճանաբար կդառնա ինդուստրիալ աշխատանքի տարատեսակը:

ՍՄԿԿ և սովետական կառավարության տընտեսական քաղաքականության բնորոշ առանձնահատկությունն այն է, որ վերջինս արդյունաբերության նոր, առաջատար ճյուղերի զարգացման առավել արագ տեմպեր է նախատեսում այն բնագավառներում, որոնք կապված են աշխատանքի էլեկտրազինվածության և տեխնիկական հագեցվածության, մեքենաների և սարքերի ըստեղծման ու արտադրապրոցեսների ավտոմատացման հետ:

Ընթացիկ հնգամյակի սկզբին, ՍՍՀՄ ողջ արդյունաբերության մեջ, բանվորների մոտ 50 տոկոսը զբաղված էր ձեռքի, 35—40-ը՝ մեքենայացված աշխատանքներում, 10—15-ը՝ ավտոմատացված պրոցեսներում: Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծմամբ այդ համամասնությունները էապես փոփոխվում են: Նոր հնգամյա պլանի դիրեկտիվներում նախատեսվում է այնպիսի ճյուղերի առավել արագ զարգացում, ինչպիսիք են՝ էլեկտրաէներգիայի, մեքենաշինության ու մետաղամշակության, ավտոմատացման սարքերի ու միջոցների արտադրությունը: Այսպես, մինչև 1970 թ. արդյունաբերական արտադրանքի 50 տոկոս ընդհանուր աճի դեպքում, էլեկտրաէներգիայի արտադրությունը կավելանա 66—68 տոկոսով, մեքենաշինության ու մետաղամշակման արտադրանքը՝ 1,6—1,7 անգամ, ավտոմատացման միջոցներինն ու սարքերինը՝ 72—77 տոկոսով, քիմիական սարքավորումներինը՝ 2—2,1, պլաստմասսայի և սինթետիկ խեժերինը՝ 2,5—2,8 անգամ:

Արտադրության կոմպլեքս մեքենայացումն ու ավտոմատացումը, աշխատանքի տեխնիկական առավել հագեցումը, բոլոր աշխատողների կրթական և տեխնիկական մակարդակի բարձրացումը հնարավորություն են ընձեռում կոնկրետ աշխատանքի տարբեր ձևերի արտադրողականության համեմատական հավասարեցման և աշխատանքում տնտեսական ու սոցիալական տարբերությունների վերացման:

Աշխատանքի սոցիալ-տնտեսական տարատեսակության դրսևորման առանձնահատուկ ձևն է մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած հակասությունը: Սոցիալիզմի պայմաններում, արտադրամիջոցների հանրայնացման հետ մեկտեղ, անհետանում է մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած հակամարտությունների տնտեսական հիմքը: Սակայն սոցիալիզմը վերացնում է ֆիզիկական և մտավոր աշխատանքի հակամարտությունը, բայց ոչ հակասությունը, մանավանդ՝ էական տարբերությունները: Մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած սոցիալ-տնտեսական տարբերությունները միայն արտադրամիջոցների հանրայնացմամբ չեն վերացվում: Դրա համար անհրաժեշտ է երկարատև պրոցես, որը կապված է արտադրաուժերի զարգացման, աշխատավորների կուլտուրական մակարդակի բարձրացման և արտադրահարաբերությունների կատարելագործման հետ:

Սոցիալիզմի ժամանակ մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած տնտեսական ու սոցիալական տարբերություններն արտահայտվում են՝ հասարակական արտադրության և պետական ու հասարակական գործերի կառավարման մեջ մտա-

վոր և ֆիզիկական աշխատանք կատարողների դերի ու տեղի տարբերությամբ. հանրակրթական ու կուլտուր-տեխնիկական պատրաստականության տարբեր չափերում. մտավոր և ֆիզիկական աշխատանք կատարողների վարձատրությամբ. աշխատանքի պայմաններով: Այստեղից պարզ երևում է, թե ինչ ճանապարհով են վերանում մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած սոցիալ-տնտեսական տարբերությունները:

Մտավոր և ֆիզիկական աշխատանքի միավորումը կատարվում է հասարակական արտադրության մեջ սոցիալիստական հասարակության անդամների դերի ու տեղի տարբերության հաղթահարման, բնակչության ընդհանուր կրթական ու կուլտուր-տեխնիկական պատրաստականության բարձրացման, աշխատանքի գործադրման պայմանների հարաբերական հավասարեցման, աշխատանքի վարձատրման չափերի մոտեցման և ապա ուղղակի բաշխման անցնելու միջոցով: Դա օբյեկտիվ անհրաժեշտություն է և պայմանավորված է գիտատեխնիկական առաջադիմությամբ ու արտադրության ավտոմատացմամբ:

Այժմ արդեն մետաղամշակության, մեքենաշինության, արդյունահանող արդյունաբերության ոլորտում ֆիզիկական աշխատանքով զբաղվածների աշխատաժամանակի կեսից ավելին ծախսվում է մտավոր աշխատանքի ֆունկցիաների կատարման վրա: Գործողությունների 60—70 տոկոսը մտավոր աշխատանքի բնույթ ունի: Արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, ինչպես և գյուղատնտեսության բնագավառում տեղի է ունենում անորակ բանվորների կրճատման և որակավորվածների ավելացման պրոցես. դա սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման օրինաչափությունն է: Այսպես. 1925—1960 թթ. ՍՍՀՄ արդյունաբերության ոլորտում բարձրորակավորված և որակավորված բանվորների բաժինը 18,5 տոկոսից հասավ 52 տոկոսի:

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման հիմնական ուղղությունը տնտեսական արդյունավետության գիտատեխնիկական մակարդակի բարձրացումն է, աշխատանքն էլեկտրաֆոնդազինվածությամբ սիստեմատիկորեն հագեցնելը:

1969 թ. հունիսին կայացած կոմունիստական և բանվորական կուսակցությունների մոսկովյան միջազգային խորհրդակցությունում Լ. Ի. Բրեժնևն ասաց. տեխնիկական առաջադիմությունը որոշող՝ քիմիայի, ռադիոէլեկտրոնիկայի և սարքաշինության, ճշգրիտ ու ծանր մեքենաշինության և այլ ճյուղերի զարգացման հաշվին, լրջորեն փոխվում է արդյունաբերության կառուցվածքը:

ՍՍՀՄ-ում լայն գործունեություն է ծավալվել ֆիզիկական աշխատանքով զբաղվողների ընդհանուր կրթական և կուլտուր-տեխնիկական մակարդակի բարձրացման համար: Մեր երկրում ավելի քան 60 մլն մարդ սովորում են զանազան ուսումնական հաստատություններում: Ուսուցման պլանային և մասսայական ընդգրկումը կրճատում է ֆիզիկական և մտավոր աշխատանքով զբաղվողների կուլտուր-տեխնիկական մակարդակի ճեղքվածքը: Հիշյալ տարբերությունների հաղթահարմամբ կվերանա մտավոր աշխատանքով զբաղվողների մենաշնորհը, որն իր հերթին կընհանգեցնի վարձատրման չափերի տարբերությունների վերացման:

Ֆիզիկական և մտավոր աշխատանքի միաձուլումը վերացնում է հասարակության անհավասարության կարևորագույն աղբյուրներից մեկը՝ ոչնչացնում է աշխատանքի սոցիալ-տնտեսական տարատեսակությունը, սոցիալիստական աշխատանքը ներաճում է կոմունիստականի: Մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև եղած սոցիալ-տնտեսական տարբերությունների հաղթահարումն անհրաժեշտ պայման է հասարակական աշխատանքի կազմակերպման իսկապես կոմունիստական ձևի ստեղծման համար, որի ժամանակ, ինչպես գրել են Մարքսն ու Էնգելսը, հասարակության ոչ մի անդամ սահմանափակված չէ գործունեության բացառիկ շրջանակներով, նրանք կարող են արտադրության մի ճյուղից հաջորդաբար անցնելու մյուսին՝ ելնելով հասարակության պահանջներից կամ իրենց իսկ հակումներից: Սա է կատարյալ կոմունիստական աշխատանքի հաստատման իրական ընթացքը:


**Վ. Հ. ԱԴԱՄՅԱՆ**

*Դիսերտանտ*




ՔՆՆԱՐԿՈՒՄ ԵՆՔ ԿՈԼՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՆՈՐ ԿԱՆՈՆԱԴՐՈՒԹՅԱՆ ՆԱԽԱԳԻԾԸ

# ՀԱՆՐԱՅԻՆ ԵՎ ԱՆՁՆԱԿԱՆ ՇԱՀԵՐԻ ՃԻՇՏ ԶՈՒԳՈՐԴՄԱՆ ՀԱՄԱՐ

Աշխուժորեն շարունակվում է կոլտնտեսության (գյուղատնտեսական արտելի) օրինակելի կանոնադրության նախագծի քննարկումը: Քննարկմանը մասնակցող բոլոր ընկերները միահամուռորեն ընդգծում են, որ կանոնադրության նախագիծը համապատասխանում է սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման արդի էտապի պահանջներին: Նրանում տրված են կոլտնտեսային արտադրության կազմակերպման, կառավարման, եկամուտների բաշխման և հանրային տնտեսության վերելքի ապահովման հիմնական սկզբունքները, որոնք բխում են կուսակցության XXIII համագումարի և ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի վերջին պլենումների որոշումներից:

Համաժողովրդական քննարկման ներկայացվող նախագծի հիման վրա ընդունված կոլտնտեսության նոր կանոնադրությունը լուրջ ազդակ կհանդիսանա գյուղատնտեսական արտադրության ինտենսիվ զարգացման, նրա արդյունավետության բարձրացման, հանրային տնտեսության համախառն արտադրանքի ու համախառն եկամտի ավելացման, ընդլայնված վերարտադրության, կոլտնտեսականների բարեկեցիկ կյանքի ապահովման և գյուղում կոմունիստական հասարակական հարաբերությունների արմատավորման գործում:

Կանոնադրությունը կոլտնտեսության յուրահատուկ օրենսգիրքն է, նրա տընտեսական, արտադրական գործունեության և կոլտնտեսականների արտադրակայքերի հիմնական ուղեցույցը: Սակայն դրանով ամեն ինչ չի վերջանում: Կարևորը, գլխավորն այն է, որ կանոնադրության սկզբունքների կիրառման համար անցած ժամանակաշրջանում կոլտնտեսությունները կուտակել են նյութական համապատասխան միջոցներ, զինվել են տեխնիկապես: Մի քանի թվերով այդ ցույց տանք Սովետական Հայաստանի կոլտնտեսությունների օրինակով: Այսպես. հանրապետության կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը 1940 թվականի 33,2 միլիոն ռուբլու դիմաց, 1967 թվականին կազմում էին 287,3 միլիոն ռուբլի, հիմնական ֆոնդերը՝ համապատասխանաբար 23,9 և 217,7 միլիոն ռուբլի: Այդ նույն ժամանակաշրջանում կոլտնտեսությունների ունեցած տրակտորների թիվն աճել ու հասել է 7669-ի (15 ուժանոցի վերածած), կոմբայններինը՝ 1027-ի, բեռնատար ավտոմեքենաներինը (հաշված նաև ավտոցիստեռնները)՝ 4051-ի և այլն:

Այս և մյուս միջոցների առկայությունը հիմք է տալիս ասելու, որ նոր կանոնադրության պահանջների և գյուղատնտեսության զարգացման վերաբերյալ կոմունիստական կուսակցության ու սովետական կառավարության որոշումների կենսագործման համար կոլտնտեսություններն ունեն նյութատեխնիկական որոշակի բազա: Այդ բա-

զան առաջիկայում ավելի կամրապնդվի ու մեծ չափերով կզարգանա, որն անպայմանորեն պետք է հաշվի առնել:

Այս առումով բավական է նկատի ունենալ այն, որ միայն ընթացիկ տարվա առաջին կիսամյակում ՍՍՀՄ «գյուղատնտեսությունն ստացել է 145 հազար տրակտոր ֆիզիկական միավորներով, այդ թվում 53 հազար հերկի տրակտոր, 71 հազար բեռնատար/և մասնագիտացված ավտոմեքենա, 43 հազար հացահատիկի կոմբայն, 3,3 հազար կարտոֆիլահավաք, 5,6 հազար ճակնդեղահավաք, 3 հազար շանաֆի մեքենա, 17 հազար միջշարային հնձիչ, 91 հազար տրակտորի գութան, 24 հազար փխրեցնող մեքենա, 95 հազար կուլտիվատոր, 102 հազար ցանիչ, 67 հազար հնձիչ, 32 հազար հանքային պարարտանյութեր շաղ տվող հարմարանքներ, 7,7 հազար հերբիցիդա-ամոնիակային մեքենաներ, 37 հազար ունիվերսալ բեռնիչ և շատ այլ մեքենաներ ու մեխանիզմներ» (ՍՍՀՄ Մինիստրների սովետին առընթեր կենտրոնական վիճակագրական վարչության հաղորդագրությունից, «Սովետական Հայաստան», № 173, 1969 թ.):

Ամբողջությամբ վերցրած հավանություն տալով կոլտնտեսության նոր կանոնադրության նախագծին, առանձին հարցերի վերաբերյալ ցանկանում ենք հայտնել մեր նկատառումները և միաժամանակ անդրադառնալ մի քանի ընկերների այն առաջարկություններին, որոնք, մեր կարծիքով, հիմնավորված չեն և ոչ մի անհրաժեշտություն չկա այդպիսիք կանոնադրության մեջ մըտցնելու:

Կոլտնտեսության նոր կանոնադրության նախագծի քննարկման ընթացքում առանձնապես շատ է արծարծվում հանրային ու անձնական շահերի ճիշտ զուգորդման հարցը: Այդ բնական է, որովհետև դրանում անմիջականորեն արտահայտվում է կոլտնտեսականների, հանրային տնտեսության ու ողջ հասարակության փոխհարաբերությունը: Լինելով ժողովրդական տնտեսության մի մասնիկը, բջիջը, կոլտնտեսությունը արտադրության, կուտակման ու բաշխման հարցերը լուծելիս, անպայմանորեն պետք է հաշվի առնի ոչ միայն անհատ կոլտնտեսականների, այլև հանրային տնտեսության ու հասարակության շահերը, որոնք մեզ մոտ հանդես են գալիս միասնաբար, պայմանավորված են միմյանցով ու փոխադարձաբար նպաստում են միասնական նպատակի իրագործմանը՝ կոմունիստական հասարակության կառուցմանը:

Որպեսզի շահերի այս եռակողմ միասնությունը պահպանվի, կոլտնտեսությունների համախառն արտադրանքի, համախառն եկամտի, ինչպես և զուտ եկամտի բաշխման գործում պետք է որոշակի պարզություն ու կոնկրետություն մտցնել:

Կոլտնտեսության նոր կանոնադրության VII բաժնի 36-րդ կետում ասված է, որ «Եկամուտները բաշխելիս պետք է ապահովվի կուտակման ու սպառման ճիշտ զուգորդումը, արտադրական, ապահովագրական և կուլտուր-կենցաղային հանրային ֆոնդերի մշտական աճը, կոլտնտեսականների կենսամակարդակի բարձրացումը»: Նույն կետում այնուհետև նշվում է, թե կոլտնտեսության արտադրած համախառն արտադրանքից ու եկամուտներից որ նպատակներին պետք է հատկացումներ կատարել: Բայց թե այդ հատկացումները ի՞նչ չափի պետք է լինեն և, մասնավորապես, կուտակման ու սպառման ֆոնդերի միջև ինչպիսի՞ օպտիմալ հարաբերակցություն պահպանել. կանոնադրության նախագիծը պատասխան չի տալիս:

Իրենց ձեռքի տակ ունենալով կանոնադրության ընդհանուր դրույթը, առանձին կոլտնտեսություններ այն կիրառում են յուրովի, հաճախ հանդես են բերում սպառողական մոտեցում, ինչպես հարկն է հաշվի չեն առնում արտադրության շահը և չափազանց քիչ հատկացումներ են կատարում անբաժանելի ֆոնդին: Անգամ կոլտնտեսությունների համախառն եկամտի ավելացման դեպքում, որը հատկապես տեղի ունեցավ վերջին տարիներում, պակասել են անբաժանելի ֆոնդի համար կատարվող մասհանումները: Բավական է ասել, որ մեր հանրապետության կոլտնտեսությունները, ընդհանուր առմամբ, 1967 թվականին անբաժանելի ֆոնդին մասհանումներ են կատարել համախառն եկամուտների միայն 4,9 տոկոսի չափով:

Դրությունն ավելի վատ է առանձին շրջանների (Գուգարք, Սևան, Կրասնոսելսկ, Թալին) կոլտնտեսություններում, ուր համարյա անտեսել են կուտակման, այդ թվում և անբաժանելի ֆոնդերին, հատկացումների կատարումը: Դրա հետևանքով նրանք չեն կարողացել անհրաժեշտ չափով համալրել իրենց հիմնական արտադրաֆոնդերը և ապահովել գյուղատնտեսական աշխատանքների ագրոտեխնիկական լավագույն ժամկետներում կատարումը: Դա, ինչ խոսք, իր բացասական ազդեցությունն է թողել համախառն արտադրանքի ավելացման վրա.

Համախառն արտադրանքի ավելացումը, իհարկե, միայն կուտակմամբ չի պայմանավորված: Այստեղ որոշակի դեր են խաղում նաև բնական պայմանները, հիմնական արտադրաֆոնդերի ու ցանքատարածությունների կառուցվածքը, տնտեսության մասնագիտացումը և այլն: Բայց, որպես կանոն, համախառն արտադրանքի ավելացման գործում կուտակումները և դրանց միջոցով արտադրաֆոնդերի նորացումն ու զարգացումը վճռական դեր են խաղում: Դա կարող ենք ցույց տալ այնպիսի առաջավոր կոլտնտեսությունների օրինակով, ինչպիսիք են Ավշարի (Արարատի շրջան), Տանձուտի, Ջանֆիդայի (Հոկտեմբերյանի շրջան), Ազատանի (Ախուրյանի շրջան), ՍՄԿԿ XVIII համագումարի անվան (Շահումյանի շրջան), Աղավնատան (Էջմիածնի շրջան), Վարդենիկի (Մարտունու շրջան), Մեծ Մազրայի (Վարդենիսի շրջան) և ուրիշ կոլտնտեսությունների օրինակով, որոնք կուտակման միջոցով ունենալով անհրաժեշտ հիմնական ու շրջանառու ֆոնդեր, լուրջ հաջողությունների են հասել արտադրության զարգացման, համախառն եկամտի ավելացման ու կոլտնտեսականների բարեկեցության բարձրացման գործում:

Դրանցից Ավշարի կոլտնտեսությունն ունի 1018697 ռուբլու հիմնական միջոցներ (1966 թ. տվյալներով), որոնց ռացիոնալ գործադրման շնորհիվ ստացել է 1227998 ռուբլու համախառն արտադրանք (2 անգամ ավելի, քան 1964 թ.): Վերջինից 151418 ռուբլի կոլտնտեսությունը հատկացրել է անբաժանելի ֆոնդին ու, բացի դրանից, 105698 ռուբլի էլ հատկացրել է կապիտալ այլ ներդրումներին:

Կուտակման համար այդպիսի մեծ միջոցների ներդնումը և անհրաժեշտ արտադրամիջոցներ ունենալը, արտադրության հաջող կազմակերպման հետ միասին, կոլտնտեսությանը հնարավորություն տվին յուրաքանչյուր հեկտարից ստանալու 20,7 ցենտներ ցորեն, 516 ցենտներ բոստանային կուլտուրաներ, 294 ցենտներ բանջարեղեն, 450 ցենտներ ճակնդեղ:

Կուտակման համեմատ ավելացնելով իր համախառն եկամուտը, կոլտնտեսությունը 1964 թ. 2 ռ. 75 կոպեկի դիմաց 1966 թ. յուրաքանչյուր աշխօրին տվել է 4 ռ. 75 կոպեկ:

Կուսակցության Կենտկոմի հոկտեմբերյան (1968 թ.) պլենումին տված իր զեկուցման մեջ անդրադառնալով կոլտնտեսություններում եկամուտների բաշխմանը, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար ընկ. Լ. Ի. Բրեժնևն ասաց.

«Մենք գոհունակությամբ նշում ենք, որ վերջին տարիներս կոլտնտեսությունների եկամուտները զգալիորեն ավելացել են: Սակայն հարկավոր է ուշադրություն դարձնել այդ եկամուտների ճիշտ բաշխմանը. առանձին կոլտնտեսություններում բավականաչափ հոգատարություն չեն ցուցաբերում հանրային արտադրության աճի նկատմամբ, պակասեցնում են մասհանումներն անբաժանելի ֆոնդերի համար: Մեծ միջոցներ են ծախսվում վարչա-կառավարչական ապարատի պահպանման վրա, որոշ աշխատողների վարձատրման գործում թույլ են տրվում ավելորդություններ: Այդօրինակ երևույթների հետ հազիվ թե կարելի է հաշտվել, անտարբերությամբ նայել, թե ստացված եկամուտները ծախսվում են արտադրությունն ընդլայնելո՞ւ նպատակով, թե՞ միայն սպառողական նպատակներով» («Սովետական Հայաստան», № 256, 1968 թ.):

Նկատի ունենալով այդ ամենը, մենք գտնում ենք, որ կոլտնտեսության նոր կանոնադրությամբ պետք է սահմանել համախառն եկամտի բաշխման այնպիսի չափեր, որոնցով հնարավոր լինի օպտիմալ հարաբերակցություն պահպանել կուտակման ու սպառման ֆոնդերի միջև: Այդ նպատակով անհրաժեշտ ենք համարում կանոնադրության նախագծի 36-րդ կետի երրորդ պարբերությունը ձևակերպել հետևյալ կերպ.

«Կոլտնտեսության համախառն եկամուտը բաշխելիս, *սպառման ֆոնդին*

պետք է հատկացնել այդ եկամտի 70 տոկոսը (որից կոլտնտեսականների աշխատանքի հիմնական վարձատրությունը՝ 58, սոցիալական ապահովության կենտրոնացված միութենական ֆոնդին՝ 4, կուլտուր-կենցաղային կարիքների բավարարման համար՝ 6, պարգևատրմանը՝ 1,5, կոլտնտեսականներին օգնություն ցույց տալուն և թոշակավորման ֆոնդի լրացմանը՝ 0,5 տոկոս), *կուտակման ֆոնդին*՝ 20 տոկոսը, (որից անբաժանելի ֆոնդին՝ 14, իսկ անբաժանելի ֆոնդի լրացմանը շրջանառու միջոցների մասով— սերմերի, կերի գնման, անասունների անեցման և այլնի համար՝ 6 տոկոսը), *եկամտահարկի, պահեստային ֆոնդի և այլնի* համար՝ 10 տոկոսը»:

Եկամուտների բաշխման վերը նըշված չափերը բոլոր կոլտնտեսությունների համար չեն կարող պարտադիր լինել: Կանոնադրությունը քննարկելիս ու ընդունելիս, յուրաքանչյուր կոլտնտեսություն, առանձին դեպքերում, դրանք կարող է փոփոխել: Դա վերաբերում է առանձնապես տնտեսապես ետ մնացող կոլտնտեսություններին, ուր պետական վարկի օգնությամբ լըրացվում են կոլտնտեսականների աշխատանքի երաշխավորված վարձատրության և արտադրական ֆոնդերը: Այդպիսի կոլտնտեսություններում, ինչպես մեր մեկ այլ հոդվածում արդեն ասել ենք, կարելի է որոշ չափով բարձրացնել աշխատանքի հիմնական վարձաչափը: Այդ բարձրացումը 5—10 տոկոսից չպետք է անցնի, հակառակ դեպքում կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության, նրանց կուլտուր-կենցաղային կարիքների բավարարման, սոցիալական ապահովության, հիմնական ֆոնդերի լրացման ու զարգացման համար կատարվող հատկացումները տնտեսապես հիմնավորված չեն լինի և համաչափորեն չեն ազդի հանրային տնտեսության զարգացման և կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման վրա: Բայց ինչպիսի փոփոխություններ էլ կատարվեն, երկու ֆոնդերի (կուտակման և սպառման) միջև օպտիմալ հարաբերակցությունը, թեկուզ պետական վարկի և խնայողության ռեժիմի կենսագործմամբ, պետք է պահպանվի և օրենքի ուժ ստանա կանոնադրությամբ: Սպառման ֆոնդի նկատմամբ կուտակման ֆոնդը պետք է ունենա այնպիսի հարաբերակցություն, որն ապահովի հիմնական արտադրաֆոնդերի առավել աճը, ֆոնդեր, որոնք ընդլայնված վերարտադրության պրոցեսում առաջատար ու վճռական դեր են խաղում:

Կոլտնտեսություններում դա առավել առաջնակարգ նշանակություն ունի, որովհետև կոլտնտեսականի տեխնիկական զինվածությունը դեռևս երկու անգամ ետ է մնում բանվորի տեխնիկական զինվածությունից: Այդ տարբերությունը վերացնելու, կոլտնտեսականների աշխատանքի պայմանները ինդուստրիալ բանվորների աշխատանքի մակարդակին մոտեցնելու, իսկ հետագայում հավասարեցնելու նպատակով է, որ մենք առաջարկում ենք կոլտնտեսությունների համախառն եկամտի 20 տոկոսը հատկացնել կուտակման ֆոնդին:

Հանդես գալով նման առաջարկությամբ, մենք, իհարկե, բնավ չենք անտեսել այն իրողությունը, որ դեռևս կան տնտեսապես ետ մնացող առանձին կոլտնտեսություններ, որոնք սեփական եկամտից առաջին հերթին կոլտնտեսականների աշխատանքի վարձատրության ֆոնդն առանձնացնելուց հետո, մյուս ֆոնդերի համար շատ քիչ միջոցներ են ունենում կամ չեն ունենում: Արդյո՞ք այս հանգամանքը չի խոսում ընդդեմ մեր առաջարկության: Ո՛չ, չի խոսում: Նախ պետք է նկատի ունենալ, որ գնալով տնտեսապես ետ մնացող կոլտնտեսությունների թիվը կրճատվում է. կուսակցության մշակած միջոցառումների իրագործման և կառավարության ցույց տված հարուստ օգնության շնորհիվ, առաջիկայում այդպիսի տնտեսությունները կհաղթահարեն ետ մնալը և հնարավորություն կունենան սեփական միջոցներից համապատասխան հատկացումներ կատարելու կուտակման ու սպառման ֆոնդերին: Մյուս կողմից, օրինակելի կանոնադրության մասին խոսելիս մենք կողմնորոշվում ենք ոչ թե դեռևս տնտեսապես ետ մնացող առանձին կոլտնտեսությունները, այլև կոլտնտեսություններն ընդհանուր առմամբ վերցրած, որոնք սեփական համախառն եկամտի հաշվին անհրաժեշտ միջոցներ պետք է հատկացնեն ինչպես կուտակման, այնպես էլ սպառման



ֆոնդերին: Այդպես է ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերում, այդպես պետք է լինի նաև բոլոր կոլտնտեսություններում, որոնք տնտհաշվարկի հիման վրա գործող գյուղատնտեսական ձեռնարկություններ են:

Խոսելով կոլտնտեսականների անձնական նյութական շահագրգռվածության բարձրացման մասին, գյուղատնտեսության էկոնոմիկայի և կազմակերպական հայկական գիտահետազոտական ինստիտուտի ավագ գիտաշխատող Ա. Ղարիբյանը այն սերտորեն կապում է աշխատանքի երաշխավորված վարձատրության հետ: Դա միանգամայն ճիշտ մոտեցում է: Վերլուծելով հանրապետության առանձին շրջանների մի շարք կոլտնտեսություններում աշխատանքի երաշխավորված վարձատրության ասպարեզում գոյություն ունեցող թերություններն ու սըխալները, նա առաջարկում է կոլտնտեսության նոր կանոնադրությամբ նախատեսել աշխատանքի դիֆերենցված երաշխավորված վարձատրություն՝ կապված համախառն արտադրանքի կամ համախառն եկամտի ավելացման հետ: Այն կոլտնտեսություններում, ուր չի ապահովվի սահմանված համախառն արտադրանքի կամ եկամտի աճը, կոլտնտեսականները չպետք է երաշխավորված վարձատրություն ստանան կամ պետք է համապատասխան չափով պակաս ստանան: Մի խոսքով, ասում է նա, երաշխավորված վարձատրությունը պետք է երաշխավորվի համախառն արտադրանքով:

Մենք ևս համաձայն ենք այդ առաջարկությանը: Կոլտնտեսության կանոնադրությամբ պետք է ապահովվի հավասար աշխատանքի ու հավասար արտադրանքի դիմաց հավասար վարձատրության՝ սոցիալիզմի սկզբունքի անշեղ կենսագործումը: Դա կոլտնտեսականներին կշահագրգռի ավելի շատ արտադրանք տալու և դրա դիմաց ավելի շատ երաշխավորված վարձատրություն ստանալու, որը սահմանվում է արտադրական նորմաներով: Տվյալ պարագայում շահում են և՛ կոլտնտեսականները, և՛ հանրային տնտեսությունը, և՛ հասարակությունը: Ի վերջո, տված արտադրանքի համաձայն երաշխավորված վարձատրության կիրառումը վերջ կտա այն պրակտիկային, երբ համանման հողակլիմայական պայմաններում գտնվող կոլտնտեսություններից մեկը տարիներ շարունակ թերակատարում է համախառն արտադրանքի պլանը, բայց մյուս կոլտնտեսությանը (որը ապահովել է այդ պլանի կատարումը) հավասար վարձատրություն է տալիս՝ պետական վարկի օգնությամբ:

Որոշ ընկերներ կոլտնտեսականների նյութական շահագրգռվածության բարձրացման գործում անհարկի մեծացնում են լրացուցիչ վարձատրության դերը և առաջարկում են կոլտնտեսության կանոնադրությամբ վերջինիս նույնպես «հաշվել որպես հիմնական վարձատրություն»: Հարցին հատկապես այդպես է մոտենում ընկ. Ս. Ղարիբյանը, որը պնդում է, թե արտադրության վերելքի գործում լրացուցիչ վարձատրությունը հաճախ ավելի ակտիվ դեր է խաղում, քան հիմնականը:

Պատասխանելով այդ ընկերներին, ստիպված ենք ասելու այն հանրահայտ ճշմարտությունը, որ լրացուցիչ վարձատրությունը օժանդակ միջոցառում է և երբեք չի կարող փոխարինել հիմնական վարձատրությանը: Կոլտնտեսականի եկամտի գլխավոր աղբյուրը, նրա կենսամինիմումը հաշվելու որոշիչ ցուցանիշը աշխատանքի հիմնական վարձատրությունն է: Ուստի, հարցը գլխավորապես պետք է դրվի ոչ թե լրացուցիչ, այլ հիմնական վարձատրության բարձրացման ուղղությամբ: Այդ գործում ճիշտ են վարվում առաջավոր կոլտնտեսությունները, որոնք սահմանում են արտադրական ռեալ, բարձր պլաններ, որոնց կատարումով ստանում են շատ համախառն արտադրանք և որանով իսկ յուրաքանչյուր աշխօրի դիմաց 2—3 անգամ ավելի դրամ են տալիս, քան մյուս կոլտնտեսությունները:

Երբեք չժխտելով լրացուցիչ վարձատրության դերը, մենք գտնում ենք, որ կոլտնտեսության կանոնադրության մեջ գլխավոր շեշտը պետք է դնել աշխատանքի հիմնական վարձատրության բարձրացման վրա, որը պետք է պայմանավորված լինի տրված արտադրանքով:

Կոլտնտեսության նոր կանոնադրության նախագծի X բաժնում տրված են կոլտնտեսականի ընտանիքի (կոլտնտեսական ծխի) օժանդակ տնտեսու-

վոր դեր են խաղում արտադրական նորմաներն ու գնահատումները: Ունենալով ռեալ, ագրոտեխնիկական ու զոոտեխնիկական կանոններով հիմնավորված պրոգրեսիվ արտադրական նորմաներ, անպայմանորեն պետք է հասնել դրանց կատարմանը՝ յուրաքանչյուր կոլտնտեսականի վարձատրելով հանրային տնտեսության մեջ ներդրած նրա աշխատանքի քանակին ու որակին համապատասխան:

Կոլտնտեսային նոր կանոնադրության նախագծի 27-րդ կետում ասված է՝ «Գյուղատնտեսական և մյուս աշխատանքների արտադրական նորմաներն ու գնահատումները մշակվում և անհրաժեշտության դեպքում վերանայվում են կոլտնտեսականների և մասնագետների լայն մասնակցությամբ՝ ելնելով տնտեսության կոնկրետ պայմաններից, և հաստատվում են կոլտնտեսության վարչության կողմից»: Այնքանով, որքանով արտադրական նորմաներն ու գնահատումներն արտահայտում են բոլորի շահերը, դրանք, մեր կարծիքով, անպայմանորեն պետք է հաստատվեն ոչ թե կոլտնտեսության վարչության, այլ կոլտնտեսականների ընդհանուր ժողովի կողմից, որպեսզի օրենքի ուժ ունենան բոլորի համար և բացառեն դրանց այն քմահաճ ու անհիմն փոփոխությունները, որոնք երբեմն տեղի են ունենում առանձին կոլտնտեսություններում:

Մենք համաձայն չենք ընկ. Վ. Բաղդագյուլյանի այն առաջարկությանը, որ «...արտադրական նորմաների մշակումը... դրվի գյուղատնտեսության շրջանային արտադրական վարչությունների վրա» (նույն տեղը, էջ 85): Նա իր առաջարկությունը հիմնավորում է նրանով, որ այժմ կոլտնտեսություններում արտադրական նորմաների մշակումը «կապված է մեծ դժվարությունների հետ». դրա միակ փաստարկը համարում է Գորիսի շրջանի Խնձորեսկ գյուղի ոչ ճիշտ արտադրական նորմաները և դրա հետևանքով մեկ մարդօրվա դիմաց մեխանիզատորներին, հովիվներին, կթվոր-անասնապահներին և բուսաբուծության բնագավառի աշխատողներին տրված վարձատրության խիստ տարբերությունը:

Կարծում ենք, որ ընկ. Բաղդագյուլյանը կհամաձայնի մեզ հետ, որ մեկ կոլտնտեսության, թեկուզ և մեկ շրջանի առանձին տնտեսությունների պրակտիկայում եղած սխալը հիմք չի տալիս նման ընդհանրացումներ կատարելու և նույնիսկ կանոնադրությամբ տնտեսության տերերին զրկելու արտադրական պլանների մշակմանը մասնակցելու օրինական իրավունքից:

Այժմ կոլտնտեսային դեմոկրատիայի մասին:

Կանոնադրության նախագծի XI բաժնի 45-րդ կետում ասված է. «Կոլտնտեսության գործերի կառավարումն իրականացվում է լայն դեմոկրատիայի. կոլտնտեսային կյանքի բոլոր հարցերի լուծումը կոլտնտեսականների ակտիվ մասնակցության հիման վրա»: Այս դրույթը բխում է ՍՄԿԿ ծրագրի պահանջից, որով կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում ավելի է զարգանում դեմոկրատիան և պայմաններ է ստեղծում կոմունիստական ինքնավարության անցնելու: Շրջանցելով այս կարևոր հանգամանքը, ընկ. Վ. Բաղդագյուլյանը խոսում է կոլտնտեսային դեմոկրատիայի ինչ-որ որոշ «ստվերոտ կողմերի» մասին, որոնք, նրա կարծիքով, «ոչնչով չեն նպաստում հանրային արտադրության կազմակերպման կատարելագործմանը, սոցիալիստական սեփականության պաշտպանմանը, աշխատանքի կարգապահության ամրապնդմանը և այլն» (նույն տեղը, էջ 88): Այդ առումով նա մկայակոչում է մի այնպիսի հարց. ինչպիսին կոլտնտեսության նախագահի ընտրովի լինելն է, որը, ըստ ընկ. Բաղդագյուլյանի, «բացասաբար է անդրադառնում հենց իր՝ նախագահի աշխատանքի վրա»: Զգալով, որ իր «նախագահ լինել-չլինելը կախված է կոլեկտիվի անդամների զգալի մեծամասնության ցանկությունից նա, սովորաբար, աշխատում է... հարմարվել կոլտնտեսականների հետ, ընդհանուր լեզու գտնել...»: Իսկ «...այս հանգամանքը շատ հաճախ տնտեսությունների տևական հետամնացության (?) պատճառ է դառնում», ուստի «Գործն ավելի կշահի, եթե վարչության նախագահը նշանակվի վերադաս օրգանների հրամանով, ինչպես նշանակվում են պետական հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարները» (նույն տեղը, էջ 88—89):

Պարզ ասած. ընկ. Բաղդագյուլյանը գտնում է, որ նախագահն իր գործունեության ընթացքում ընդհանուր լեզու չգտնի կոլեկտիվի հետ, աշխատի միայն իր ուզածի պես, կատարի այն, ինչ ինքն է ցանկանում և նման նախագահին աշխատանքից կոլտնտեսականները ազատելու իրավունք չունենան:

Սա, արդեն, կոլտնտեսային դեմոկրատիայի հասկացությունից դուրս է, նրա ուղղակի հակադրությունը, որը կվնասի և՛ նախագահին, և՛ գործին: Գրելով այս տողերը, ես հիշեցի մի կոլտնտեսության նախագահի, որը տնտեսության առաջին տարիների հաջողություններից մեծամտացած, կարծեց, թե միայն ինքն է որ կա, կարող է մտածել բոլորի փոխարեն, որ ձեռք բերած հաջողությունները միայն իր անձնական ղեկավարության արդյունք են, որ առանց վարչության, առանց ողջ կոլեկտիվի իրավունք ունի ամեն տեսակի վճիռներ կայացնելու: Զուր չէ, որ նա համեստությունը արդեն մոռացած, պարծենկոտությամբ հաճախ ասում էր.

— Ես վճռեցի ցանքի պլանը փոխել.

— Ես կառուցեցի երեք նոր գոմ:

— Ես որոշեցի խոզաբուծությամբ չզբաղվել:

— Ես աշխատանքի վարձատրության նոր կարգ սահմանեցի:

Այս չարաբաստիկ եսը, մարգարեի դերում ամենագետ ձևանալը, կոլեգիալ կերպով որոշումներ ընդունելու անտեսումը, հաճախ կոլեկտիվին բանի տեղ չդնելը, իսկ իրեն քծնողների, անձնական ծառայություններ մատուցողների, իր թանկին թթու չասողների պահանջների անվերապահ կատարումը այնքան խորացավ նրա մեջ, որ կոլեկտիվում կորցրեց հարգանքը, չտեսավ նորը, օրվա հրատապ հարցերը, գործեց միայն իր նախասիրած մեթոդներով, երբեմն դիմեց վարչարարության և վերջում կանգնեց տխուր վախճանի առջև... գործը տուժեց և ինքն էլ հեռացվեց աշխատանքից: Դա տարիներ առաջ էր:

Իրավացի չէ ընկ. Բաղդագյուլյանը, երբ ասում է, թե «...երբ տնտեսության ղեկավարն իր գործունեության մեջ ամենից առաջ ելնում է տնտեսության շահերից, իսկ հետո միայն կոլտնտեսականի անհատական շահից, ապա նման ղեկավարին, սովորաբար չեն սիրում և աշխատում են ամեն կերպ ազատվել նրանից» (նույն տեղը, էջ 89): Իրականում դրա հակառակն է. հանրային տնտեսության շահերը հետևողականորեն պաշտպանող, իսկ անձնական շահը միայն առաջ մղող և ուրիշների աշխատանքի հաշվին շատ եկամուտ կորզելու ախորժակ ունեցող մարդկանց համարձակորեն պախարակող նախագահը միշտ էլ կոլեկտիվի կողմից հարգվում է, երբեք չվախենալով, թե ընտրության ժամանակ մի քանի հոգի իրեն դեմ կքվեարկեն:

Իհարկե, երբեմն հատ ու կենտ դեպքեր լինում են, երբ ազնիվ, նվիրված, իր գործը լավ իմացող կոլտնտեսության նախագահը որոշ բանսարկուների կողմից անվանարկվում է, նույնիսկ տուժում: Բայց վաղ թե ուշ հաղթանակում է ճշմարտությունը, ազնիվ նախագահը գտնում է իր արժանի պաշտպանությունը:

Մենք նպատակահարմար ենք գտնում, որ կոլտնտեսության նախագահի ընտրությունը կոլտնտեսականների ընդհանուր ժողովում կատարվի փակ (գաղտնի) քվեարկությամբ և դա կանոնադրական ուժ ստանա: Լավ կլինի, եթե նույն սկզբունքով բրիգադայի անդամների ու անասնապահական ֆերմաներում աշխատողների ընդհանուր ժողովում ընտրվեն նաև բրիգադավարները և ֆերմաների վարիչները: Դա կբարձրացնի վերջիններիս պատասխանատվությունը տնտեսության տերերի՝ կոլտնտեսականների առջև ու կլինի ներկոլտնտեսային դեմոկրատիայի զարգացման միջոցներից մեկը:

Կան առանձին ընկերներ, որոնք առաջարկում են կոլտնտեսության կանոնադրության մեջ մտցնելու այնպիսի պահանջներ (շահադիտական նպատակներով վաճառում, շռայլում, յուրացում թույլ տվողներին քրեական պատժի ենթարկելու, պետբանկի բաժանմունքին իրավունք վերապահելու, առանձին գործարքներ չկատարելու և այլն), որոնց հարկ չկա: Չպետք է մոռանալ, որ կոլտնտեսությունը բացի իր կանոնադրությունից, ղեկավարվելու է նաև գործող օրենսդրությամբ:

Վ. Հ. ԳԵՎՈՐԳՅԱՆ

# ԳՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ ԵՎ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆ



## ՀԱՐՈՒՍՏ ԺԱՌԱՆԳՈՒԹՅԱՆ ԱՐԺԱՆԻ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅՈՒՆ

Մատենագիտությունն ամենից առաջ գրականության ուղեցույցն է, գիտական ամեն մի աշխատանքի սկիզբն ու հիմքը. այն, միաժամանակ, գրքի, մամուլի պատմությունն է, գիտելիքների մի ամբողջ համակարգ։ Մատենագիտությունն ստեղծում են գիր ու գրականություն ունեցող ժողովուրդները, այդ է պատճառը, որ դարերի պատմություն ունի հայ մատենագիտությունը։ Դեռևս V դարում են ստեղծվել հայ մատենագիտության առաջին նմուշները. XI—XII դդ. դրանով զբաղվել է Հովհաննես Սարկավագը, XIII դարում՝ Գրիգոր Աբասի որդին և Մխիթար Այրիվանեցին, ավելի ուշ՝ Վարդան Բաղիշեցին (XVII դ.), այնուհետև Մ. Միանսարյանցը, Գ. Զարբհանալյանը, Ա. Ղազիկյանը, Հ. Տաշյանը, Լեոն, Գ. Հովսեփյանը և հայ մշակույթի շատ ականավոր այլ ներկայացուցիչներ։ Դժվարին, աշխատատար գործ է մատենագիտություն ստեղծելը և հայ մատենագիրներն իրենց «տարաժամնելի վաստակոց հատուցումը» համարել են հարազատ ժողովրդի հոգում հարգանք և հետաքրքրասիրություն հարուցելը հայրենի գրի, գրականության հանդեպ։

Նրանք հասել են իրենց նպատակին։ Սովետական Հայաստանում զարգացել, գիտական խոշոր առաջընթաց է ապրել հայ մատենագիտությունը. դրա լավագույն վկայություններից մեկն է բանասիրական գիտությունների թեկնածու Ռ. Ա. Իշխանյանի երկար տարիների բարեխիղճ, տքնաջան աշխատանքի արգասիքը՝ Հայ մատենագիտության պատմությունը մեծարժեք աշխատությունը, որի վերջին՝ Բ պրակը լույս է տեսել 1968 թ. (Ա պրակը լույս է տեսել 1964, Գ-ն՝ 1966 թ.)*։ Այն ընդհանրացրեց հայ մատենագիտության վերաբերյալ հեղինակի երկարամյա ուսումնասիրությունը։

Իրավամբ նշելով, որ հայ իրականության մեջ մասնագետ մատենագետներ շատ քիչ են եղել, հեղինակը երախտագիտության իր խոսքն է ուղղում մեր այն նշանավոր բանասերներին, որոնք մեծ ջանքեր են թափել մատենագիտության ասպարեզում և որոնց մի շարք երկասիրությունները հիացնում են մատենագիտական հարուստ պաշարով. ցույց է տվել նաև հայ մատենագիտության անցյալի մշակների հասարակականմանկավարժական գործունեությունն ու դերը. նրանց առաջադիմական հայացքները ժողովրդին կրթելու, ժամանակակից քաղաքակիրթ ժողովուրդների մակարդակին հասցնելու բուռն ձգտումը։

Ահա թե ինչ է գրել «նոր շրջանի բոլոր մատենագետներից ամենից ավելի մատենագետ» Մ. Միանսարյանցը. «Մեզ սիրել և հարգել տալը, մեր առաջ գնալը, հարստանալը, մեր ամենայն բարոյական և իրական բարյաց հասնելը բուռ մեծի մասին մեզանից է կախված (100)...»։ Հեղինակը ցույց է տալիս, որ Միանսարյանցի համոզումը եղել է հետևյալը. հայ ժողովուրդը այլ ազգերի համակրանքին արժանանալու համար նաև պետք է ինքը կատարելագործվի, առաջադիմի ազգային քաղաքակրթության ուղիով։

Այս նվիրական նպատակին ծառայելն է եղել հեղինակի խնդիրը, երբ ձեռնարկել է հայ մատենագիտության պատմությանը նվիրված սույն աշխատությանը։ Ի մի հավաքելով, արժեքավորելով և ամփոփելով հայ մատենագիտության մասին ասվածը, նա մանրամասն ներկայացրել է հայ մշակույթի զարգացման այդ կարևոր ագդակներից մեկի լինելությունը, նրա ակունքներն ու զարգացման կարևոր շրջանները, ինչպես հարկն է գնահատել այդ բնագավառի երախտավորների աշխատանքը։

Ռ. Իշխանյանի այս եռահատոր ուսումնասիրությունը առաջին ամփոփ ծավալուն աշխատությունն է, որն ընդգրկում է մոտ 1500 տարվա ժամանակաշրջան։

Աշխատության Ա պրակը վերաբերում է հայ հին և միջնադարյան մատենագիտության V դարից մինչև 1800 թվականն ընկած ժամանակաշրջանին։

* Իշխանյան Ռ.— Հայ մատենագիտության պատմություն, պրակ Բ, Եր., Ալ. Մյասնիկյանի անվ. հանրապետական գրադարանի հրատ., 1968, 413 էջ։



Հեղինակն այնուհետև փորձել է հավաքել, ամփոփել հայ մատենագիտության մասին անցյալում (հատկապես V դարում) եղած բոլոր նյութերը. վեր հանել այդ բնագավառում եղած ուշագրավ երևույթները, որոնք մինչև այժմ անհրաժեշտ չափով չեն լուսաբանվել և գնահատվել։

Աշխատության Բ պրակն ընդգրկում է հայ մատենագիտության զարգացումը 1800—1920 թթ.։

Մատենագիտությունը Հայաստանում, հայ ժողովրդի պատմական ճակատագրի հետ կապված, ունենում է նաև անկման ժամանակներ (օրինակ XIX դարում, դրա երկրորդ կեսում)։ XIX դարում և XX դարի սկզբում, գրականության ու կուլտուրայի ծաղկման զուգընթաց այն նոր վերելք է ապրում։

Նշելով, թե հայ մատենագիտությունը զարգացել է հայ հին և միջնադարյան կուլտուրայի տրադիցիաներով, հեղինակը ցույց է տվել նաև, որ այն որոշակի ազդեցություն է կրել արևմտաեվրոպական և ռուսական մատենագիտությունից։ XIX դարի սկզբում և մինչև դրա կեսը հայ մատենագիտությունը զարգացել է շատ դանդաղ։ XIX դարի երկրորդ կեսից հայ գրատպագրության, ինչպես նաև պարբերական մամուլի առաջընթացին զուգընթաց ավելի որոշակի ու ակնհերև է դառնում մատենագիտության դերը՝ որպես հայ ժողովրդի հասարակական ու կուլտուրական կյանքի անխզելի մասի։ Լույս են տեսնում հայ գրքի և պարբերական մամուլի պատմության վերաբերյալ աշխատություններ, ստեղծվում է հայ ընթացիկ գրականության հաշվառային մատենագիտություն (Վիեննա)։

Գրքում ընդարձակ տեղ է հատկացված հայ նշանավոր բանասեր-մատենագետներ՝ Մ. Միանսարյանցի, Գ. Զարբհանալյանի, Ա. Ղազիկյանի կյանքին ու գործունեությանը, խոր ուսումնասիրված ու վերլուծված է նրանց գիտական ժառանգությունը։ Արժանիքների հետ հեղինակը միշտ նշում է մատենագիտական երկերում տեղ գտած թերությունները։

Ըստ արժանվույն գնահատելով մատենագիտության բնագավառի այդ անխոնջ մշակների գործունեությունը, հեղինակն առաջարկում է տպագրել նրանց որոշ անտիպ գործեր. «Նման հրատարակություններն այսօր օգտակար կարող են լինել մատենագիտական տեղեկատվության համար, քանի դեռ հրապարակում չկա հայ տպագիր արտադրանքի ընդհանուր մատենագիտությունը»,— գրում է Իշխանյանը։

Հեղինակն օգտագործել է հսկայական փաստական նյութ, անցյալի պարբերական մամուլի էջերից հավաքել և ընթերցողին է ներկայացրել հայ մատենագիտության պատմության ուշագրավ շատ դրվագներ, նոր, գիտական տեսանկյունով գնահատել այդ ամենը։ Արժեքավոր են հեղինակի կատարած մատենագիտական բանասիրական բազմաթիվ ճշտումներ, լրացումներ։

Աշխատության Գ պրակը[1] նվիրված է հայ մատենագիտության պատմության սովետական շրջանին. այն բաղկացած է վեց հիմնական բաժիններից։ Նախ՝ նկարագրված է 1920—1934 թթ. կատարած մատենագիտական աշխատանքը Սովետական Հայաստանում, ապա ներկայացված է Հայկ. ՍՍՀ պետական գրապալատի, Ալ. Մյասնիկյանի անվան հանրապետական գրադարանի, գիտությունների ակադեմիայի ֆունդամենտալ գրադարանի մատենագիտական գործունեությունը, ցույց է տրված նաև մատենագիտական աշխատանքի վիճակը հանրապետության այլ հիմնարկներում։

Սովետական կարգերի հաստատումից հետո մատենագիտությունը դառնում է պետական գործ։ 1920 թ. Վ. Ի. Լենինի ստորագրությամբ հրապարակվում է Ռուսաստանյան ֆեդերացիայի ժողկոմխորհի հայտնի որոշումը՝ մատենագիտական գործը ՌՍՖՍՀ լուսավորության ժողովրդական կոմիսարիատին հանձնելու մասին։ Ստեղծվում են արձանագրական մատենագիտության կենտրոններ՝ գրապալատներ, մատենագիտական ինստիտուտներ և այլ հաստատություններ, առաջ է քաշվում երկրում մատենագիտական աշխատանքով զբաղվող հիմնարկների կոորդինացման հարցը, սահմանվում է հրատարակվող երկերի ձրի պարտադիր օրինակի առաքումը։ Նախկինում իրենց նախաձեռնությամբ մատենագիտական աշխատանքով զբաղվող առանձին պատմաբանների, գրողների, գրականագետների փոխարեն այդ աշխատանքով սկսում են զբաղվել պետական հիմնարկները և հատուկ մասնագետներ։

1921 թ. հիմնվում է Հայաստանի պետական հանրային գրադարանը, իսկ 1922 թ. Հայաստանի պետական գրապալատը, որոնք բազմակողմանիորեն սատարեցին սովետահայ մատենագիտության զարգացմանը։ Այդ շրջանում շատ կարևոր նվաճում էր 1925 թ. Տպագրության տարեգրի լույսընծայումը։ Ուշագրավ էր Գ. Լևոնյանի Հայոց պարբերական մամուլը մատենագիտական աշխատությունը, որը լույս տեսավ 1934 թ. և ընդգրկում էր հայ լրագրությունն սկզբից մինչև 1934 թ.՝ մոտ հարյուրքառասուն տարվա ժամանակաշրջան։ Այն մանրամասն վերլուծված է գրախոսվող աշխատության մեջ, ցույց է տրված, որ սովետահայ մատենագիտության առաջին լուրջ նվաճումն է և մինչև օրս էլ պահպանում է իր արժեքը։

Այդ տարիների մատենագիտական գործերում

1 Իշխանյան Ռ.— Հայ մատենագիտության պատմություն, պրակ Գ, Եր., 1966, 400 էջ։ Հայկ. ՍՍՀ պետական գրապալատ։

գտնում են, օրինակ, որ համաշխարհային օվկիանոսում կա մոտ 30 միլիարդ տոննա կենդանի օրգանիզմ։ Դրա մեկ երրորդը կենդանապլանկտոնի խեցիներ են և միայն երեք տոկոսը, այսպես կոչված՝ նեկտոն, այսինքն՝ արագ լողացող կենդանիներ (ձկներ, կաղամարներ, կետեր)։ Մեկ տարվա ընթացքում համաշխարհային օվկիանոսում ստեղծվում է մոտ 200 միլիոն տոննա նեկտոն, գրեթե այդքան էլ բնական պատճառներով ոչնչանում է։

Համաշխարհային ձկնորսության և ծովապարենի հայթայթման չափերն այժմ հասնում են տարեկան մոտ 50 միլիոն տոննայի։ Այսպիսով, այն արդեն նեկտոնի արտադրանքի զգալի բաժինն է։ Որպեսզի վերականգնվեն այդ պաշարները, ընդհանուր որսը, ըստ երևույթին, կարելի է ավելացնել ևս 1,5—2 անգամ, բայց ո՛չ ավելի։ Սակայն դա պետք է արվի գիտական հիմունքներով. անհրաժեշտ է, գնահատման համապատասխան, օվկիանոսի յուրաքանչյուր շրջանում նորմավորել նեկտոնի զանազան տեսակների որսը։ Հակառակ դեպքում, պաշարները կսպառվեն և երկար ժամանակ, եթե ոչ ընդմիշտ, որսը կպակասի։

Առաջադրված է գիտատեխնիկական լուրջ խնդիր՝ ապահովել ծովային բիոլոգիական ռեսուրսների բնական վերականգնումը, ավելացնել այն, բարելավել որակը։ Այդ նպատակով կիրառվեց օրգանիզմների ջրատարածությունների տեղափոխման եղանակը։ Հաջողությամբ պսակվեց, օրինակ, սևծովյան կեֆալը Կասպից ծով փոխադրելը, ինչպես նաև՝ որդերի և կակղամորթների որոշ տեսակներ, որոնք դարձան թառափազգիների հիմնական կերակուրը։ Նման միջոցառումները անհրաժեշտ է բազմապատկել։ Գիտնականները առաջարկել են հեռավորարևելյան մի շարք ձկներ փոխադրել մեր եվրոպական հյուսիսի ծովերը։ Ցանկալի է արագացնել նման առաջարկությունների իրականացումը։ Այդպիսի լավ փորձերի համար անհրաժեշտ է կազմակերպել ծովային փորձնական տնտեսություն։

Ցանկանում ենք անդրադառնալ նաև գիտական հասարակայնության շրջանում վերջերս քննարկվող հարցին— Սև ծովի օվկիանարիայի բազայի վրա Մոսկվայում ստեղծել ծովային ակվարիում։ Արտասահմանի շատ խոշոր քաղաքներում կան այդպիսի ակվարիումներ և օվկիանարիումներ, ուր ապրում են դելֆիններ և նույնիսկ ոչ-խոշոր կետեր։ Հետաքրքրական շատ ուսումնասիրություններ են կատարվում այս խելացի կենդանիների և մարդու փոխադարձ շփման հնարավորությունների շուրջ, զանազան փորձեր՝ բիոնիկայի ասպարեզում։

Օվկիանագիտական հետազոտությունների նոր մեթոդներից են մարդու թափանցումը ծովային խորքերը։ Հետազոտող ջրասույզ նավերը և բատիսկաֆները այսօր արդեն մարդուն հասցնում են ծովի տարբեր խորությունները, տալիս նրան այնտեղ տեղավորվելու և դիտելու, նմուշներ ժողովելու, որոշ աշխատանքներ կատարելու հնարավորություն։ Խորասույզ նավերը կարելի է նմանեցնել տիեզերագնացով տիեզերանավերին։ Բայց, ինչպես հայտնի է, ո՛չ տիեզերագնացների թռիչքները բազմատեղ նավերում, ո՛չ ավտոմատ միջմոլորակային կայանները չկարողացան փոխարինել Ալեքսեյ Լեոնովի ազատ տիեզերք դուրս գալուն։ Այդպես էլ ծովախորքերում անհրաժեշտ դարձան ստորջրյա լաբորատորիաները և ակվանավտների ջրի մեջ լինելը։

ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի օվկիանագիտության ինստիտուտը ստանձնել է այդ մեթոդի կիրառումը։ Ակվանավտների հինգ խումբ, 4—5 օր ապրում էին ստորջրյա «Черномор» լաբորատորիայում, Գելենջիկի մոտ, ծովի հատակում։ Նրանք չափում էին մերձհատակային հոսանքները, դիտում լույսի թափանցումը ջրի մեջ, կախույթների տեղաշարժերը, ուսումնասիրում «տեղի բնակիչներին»— ձկներին և հատակի կենդանական աշխարհը։ Նրանց ձեռք բերած տվյալները հավաստեցին նման աշխատանքների հետագա զարգացման հեռանկարները։ Այժմ արդեն կասկածից վեր է, որ մարդը կթափանցի օվկիանոսի առավել խոր շրջանները և մոտակա տարիներին ակվանավտների հետազոտական, ապա նաև արտադրական աշխատանքները կծավալվեն ոչ միայն մայրցամաքի առափնյա ծանծաղուտներում, այլև հնարավոր է և 200—500 մետր խորություն ունեցող շրջաններում։

Ստորջրյա հետազոտությունների կարևոր խնդիրը՝ տեխնիկան է։ Հեռացույց սարքեր մասսայական օվկիանաբանական չափումների համար, ինքնավար և բնակելի օվկիանոսային կայաններ, նավային սիստեմների հավաքման ավտոմատացում և ինֆորմացիայի մշակում, նավագնացության սիստեմներ, բնակելի ստորջրյա սարքեր— ահա տեխնիկական նոր միջոցների ոչ լրիվ թվարկումը, որոնք անհրաժեշտ են համաշխարհային օվկիանոսի ռեսուրսների յուրացման համար։ Ուստի, անհրաժեշտ է ստեղծել օվկիանագիտության սարքաշինական կոնստրուկտորական հատուկ բյուրոներ, արտադրական բազա հատկացնել այդպիսի սարքավորումների արտադրության համար։

Ա. ՄՈՆԻՆ
ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի
օվկիանագիտության ինստիտուտի
դիրեկտոր, պրոֆեսոր

# ՊԱՏԱՍԽԱՆ ՀԱՐՑԵՐԻՆ

Տեղերից կոլտնտեսային կազմակերպությունների քարտուղարներից հարցնում են, թե ինչպե՞ս են հաշվարկվում ու գանձվում կուսակցական անդամավճարները կոլտնտեսական կոմունիստներից:

Ստորև տպագրում ենք նրանց հարցի պատասխանը:

Հայտնի է, որ կոլտնտեսություններում աշխատանքի երաշխավորված վարձատրության կարգ սահմանելու կապակցությամբ, ՍՄԿԿ Կենտկոմը 1967 թ. սեպտեմբերի 18-ի որոշմամբ որոշ փոփոխություններ մտցրեց ՍՄԿԿ անդամների և անդամության թեկնածուների անդամավճարների գանձման գործող հրահանգի մեջ:

Աշխատանքի երաշխավորված վարձատրման կարգի սահմանումով կոլտնտեսություններում վերացվեց նաև գյուղատնտեսական արտելների կոմունիստներից գանձվող անդամավճարների գումարի բարդ հաշվարկում կատարելու անհրաժեշտությունը, գյուղատնտեսական տարվա արդյունքների հիման վրա կոլտնտեսականների հետ կոլտնտեսությունների վերջնական հաշվարկի առկայության դեպքում:

Դրա համար էլ ՍՄԿԿ Կենտկոմի հրահանգի 3-րդ պարագրաֆում մտցվեց փոփոխություն, որտեղ ասված է.

«Կոլտնտեսական-կոմունիստները կուսակցական անդամավճարներ են մուծում ընթացիկ ամսում փաստացի ստացած վաստակի գումարից (դրամական և բնամթերային), իսկ ղեկավար աշխատողները, մասնագետները, կոլտնտեսության վարչական և սպասարկող անձնակազմը ելնելով իրենց պաշտոնական դրույքներից...»:

Այսպիսով, համաձայն այս պահանջի, կոլտնտեսական կոմունիստները անդամավճարներ պետք է մուծեն ընթացիկ ամսում ստացած *փաստացի աշխատավարձից*, այսինքն՝ ըստ էության սահմանվում է այն նույն կարգը, որը գոյություն ունի արդյունաբերության մեջ աշխատող կոմունիստների համար, ըստ որում կոլտնտեսական կոմունիստները կուսակցական անդամավճար են մուծում *ընթացիկ ամսում ստացած* ինչպես *դրամական*, այնպես էլ *բնամթերային գումարից*, իսկ ղեկավար աշխատողները, մասնագետները, կոլտնտեսության վարչական և սպասարկող անձնակազմը անդամավճար են մուծում իրենց պաշտոնական դրույքների համաձայն:

Կոլտնտեսություններում աշխատող կոմունիստներից անդամավճար ընդունելիս պետք է միաժամանակ հաշվի առնել ինչպես արտադրական արդյունքների համար *լրացուցիչ վարձատրությունը*, այնպես էլ մյուս *բոլոր դրամային ու բնամթերային վճարումներն* ըստ կոլտնտեսություններում սահմանված աշխատանքի վարձատրման և նյութական խրախուսման (պարգևատրման) սիստեմի:

Լրացուցիչ վարձատրության և պարգևատրության գումարները պետք է գումարել կոլտնտեսական կոմունիստների ամսական վաստակին կամ կոլտնտեսության մյուս աշխատողների պաշտոնական դրույքներին և անդամավճար մուծելիս՝ պետք է հաշվի առնել այն ամսում, երբ նրանք ստացվել են:

Հաշվառման այս կարգը տարածվում է նաև տնտեսական տարին ամփոփելիս: Այսինքն՝ կոլտնտեսական կոմունիստի նույն ամսում ստացած վաստակին պետք է գումարել նաև այն լրացուցիչ վարձատրությունները, որոնք վճարվում են տվյալ ամսում գյուղատնտեսական տարին ամփոփելիս, կոլտնտեսականների հետ դրամային և բնամթերային վերջնական հաշվարկներ կատարելիս, հաշվի առնելով ինչպես երաշխավորված, այնպես էլ լրացուցիչ ու պարգև վարձատրությունները, ըստ որում բոլոր տեսակի բնամթերային վարձատրությունները վերածվում են դրամի, պետական գնման գներով:

Քանի որ հանրապետության բոլոր կոլտնտեսություններում սահմանված է աշխատանքի երաշխավորված վարձատրման՝ մեկ աշխօրի արժեքը, ուստի կարելի է որոշել յուրաքանչյուր կոլտնտեսական կոմունիստի ամսական աշխատավարձի չափը դրամով և այդ գումարից էլ գանձել կուսակցական անդամավճար համաձայն ՍՄԿԿ կանոնադրության:

Այդ բացատրենք կոնկրետ օրինակով: Արարատի շրջանի կոլտնտեսություններում որպես երաշխավորված վարձատրություն, մեկ աշխօրի

դրամական արժեք սահմանվել է 2 ռուբլի: Ընդունենք, որ այդ շրջանի «Ա» կոլտնտեսությունում աշխատող կոլտնտեսական կոմունիստը ապրիլ ամսին վաստակել է 35 աշխօր: 35 աշխօրը պետք է բազմապատկել 2 ռուբլով, կստացվի 70 ռուբլի, որից և ՍՄԿԿ կանոնադրության համաձայն պետք է անդամավճար գանձել 0,5 տոկոսի չափով, այսինքն 35 կոպեկ:

Այս ձևով որոշվում է բոլոր կոլտնտեսական կոմունիստների աշխատավարձի չափը դրամով և յուրաքանչյուր ամիս ստացած գումարի հաշվով գանձվում է անդամավճար:

Իսկ այն դեպքում, երբ կոլտնտեսական կոմունիստը դրամական վարձատրման հետ միասին այս կամ այն ամսում ստանում է նաև բնամթերային վարձատրություն, ասենք, թե հունիս ամսին ստացել է 60 ռուբլի դրամ, 10 կգ պանիր և 100 կգ ցորեն, ապա պետք է *պետական գնման գներով* հաշվարկել 10 կգ պանրի, 100 կգ ցորենի արժեքը և գումարել 60 ռուբլուն: Դիցուք, ընդունենք, որ 1 կգ պանրի արժեքը պետական գնման գներով սահմանված է 1 ռուբլի, իսկ 1 կգ ցորենի արժեքը՝ 9 կոպեկ: Այս դեպքում 10 կգ պանիրը կկազմի 10 ռ., իսկ 100 կգ ցորենը 9 ռուբլի դրամ: Գումարելով ստացած դրամի և բնամթերքների արժեքների գումարները, կստացվի, որ կոմունիստի հունիս ամսվա վարձատրությունը կազմել է 60 ռ.+10 ռ.+9 ռ.=79 ռ., որի համար և համաձայն ՍՄԿԿ կանոնադրության, պետք է կուսակցական անդամավճար գանձել՝ 40 կոպեկ:

Այս նույն կարգի հաշվարկներ պետք է կատարել այն ժամանակ, երբ գյուղատնտեսական տարին ավարտվում և վերջնական հաշվարկումներ են կատարվում: Իսկ վերջնական հաշվարկումներն ընդհանրապես կատարվում են հաջորդ տարվա հունվար կամ փետրվար ամիսներին: Այս դեպքում անհրաժեշտ է այդ բոլոր մթերքները պետական գնման գներով վերածել դրամի ու գումարել այդ նույն ամսում ստացած դրամային վարձատրություններին և ընդհանուր գումարից համաձայն ՍՄԿԿ կանոնադրությամբ սահմանված նորմաների գանձել կուսակցական անդամավճար:

Ա. Գ. ՋԱԼԻՆՅԱՆ

ՀԿԿ Կենտկոմի միասնական կուսակցական տոմսի և վիճակագրական սեկտորի վարիչ






Адрес редакции. — Ереван-33 Барекамутян 59 г.
Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ պատ. քարտուղար՝ 57—37—80, տեսության և էկոնոմիկայի բաժիններ՝ 57—25—29, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 57—19—80, գրական աշխատող՝ 57—60—64:

*ՎՖ 07254 Պատվեր 1183 Թղթի չափսը՝ 70×108 1/16: Տիրաժ 11.000: Գինը՝ 25 կոպ.:*

*Տպ. 7 մամուլ, մամուլում՝ 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 26/VIII 1969 թ.:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Խանջյանի փող. № 28:*

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Նամակ ամերիկյան բանվորներին: *Մ., Քաղհրատ, 1969, 24 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Գերցենի հիշատակին: *Մ., Քաղհրատ, 1969, 15 էջ:*

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Երիտասարդության միությունների խնդիրները: *Ճառ ՌԿԵՄ համառուսական III համագումարում, 1920 թ. հոկտեմբերի 1-ին: Մ., «Мол. гвардия» հրատ., 1969, 32 էջ:*

ԲԱԼՈՒԵՎ Բ. Պ.— Վ. Ի. Լենինի պայքարը ռուսական բուրժուական և օպորտունիստական մամուլի դեմ *(ուսումնական ձեռնարկ): Մոսկվայի համալսարանի հրատ., 1968, 58 էջ:*

ՍԵԿԵՐԻՆ Ա. Ի.— Վ. Ի. Լենինը և կոմունիստական կուսակցության ստրատեգիայի ու տակտիկայի մի քանի հարցեր մեծ Հոկտեմբերի հաղթանակից հետո: *Չելյաբինսկ, 1968, 276 էջ:*

Համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացման հիմնական փուլերը հոկտեմբերից հետո: *Մ., «Мысль» հրատ., 1968, 615 էջ:*

*Հեղինակային կոլեկտիվը ներկա գրքում ցույց է տվել համաշխարհային հեղափոխության ընթացքը և զարգացումը Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո:*

Դասախոսություններ ՍՄԿԿ պատմության մասին: *Երեք պրակով: Պրակ I, 1883—1917: Մ., «Мысль» հրատ., 1968, 670 էջ:*

*Երեք պրակով հրատարակվող այս աշխատությունը ՍՄԿԿ ԿԿ-ին կից կուսակցական բարձրագույն դպրոցում կարդացված դասախոսությունների աղագրությունն է, որը ծառայում է որպես դասագիրք կուսակցական ցանցի դպրոցների ունկնդիրների համար:*

Քաղաքատնտեսության մեթոդական ձեռնարկ *կուսակցական ուսուցման սիստեմի համար: Մ., Քաղհրատ, 1969, 304 էջ:*

*Պրոպագանդիստական աշխատանքի մեծ փորձ ունեցող հեղինակային կոլեկտիվը ձգտել է այս գրքով մեթոդական օգնություն ցույց տալ անփորձ պրոպագանդիստներին՝ քաղաքատնտեսության թեմաները մշակելու և դասախոսությունների կոնսպեկտ-պլանները կազմելու գործում:*

Աշխարհը հրապարակախոսի աչքերով *(1918—1967 թթ. «Известия» թերթում տպագրված հետաքրքրական հոդվածների ժողովածու): Մ., «Известия» հրատ., 1968, 655 էջ:*

ԳՈՒՍԵՎ Կ. Վ., ԵՐԻՑՅԱՆ Խ. Ա.— Համաձայնողականությունից դեպի հակահեղափոխություն *(Ուրվագծեր սոցիալիստ-հեղափոխական կուսակցության սնանկացման և կործանման քաղաքական պատմության): Մ., «Мысль» հրատ., 1968, 497 էջ:*

ՄԱՄԻԿՈՆՅԱՆ Կ. Ա.— Հայ սոցիալ-դեմոկրատների միությունը *(1902—1903 թթ.): «Հայաստան» հրատ., 1969, 127 էջ:*

*Ներկա մենագրության մեջ ուսումնասիրված է հայ Ս.-Դ. միության 1902—1903 թթ. պատմությունը, արտացոլված են նրա ստեղծմանը մասնակցած ականավոր հեղափոխական գործիչների կյանքը, այդ տարիների հեղափոխական իրադարձությունները:*

ԷՅԴՈՒՍ Խ. Տ.— Ճապոնիայի պատմությունը հնագույն ժամանակներից մինչև մեր օրերը: *Համառոտ ակնարկ: Մ., «Наука» հրատ., 1968, 223 էջ:*

ԿՈԼՈՍՈՎ Լ. Ս.— Իտալիան հեռվից և մոտիկից: *Մ., «Известия» հրատ., 1969, 351 էջ:*

*Հեղինակը նկարագրել է Իտալիայի աշխատավորության կյանքը, երկրի հասարակական-քաղաքական վիճակը:*

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՀԱՋՈՂ ՎԻՐԱՀԱՏՈՒԹՅՈՒՆ

*Լենհաստանի գիտությունների ակադեմիայի էքսպերիմենտալ բժշկության կենտրոնում կատարվել է հաջող վիրահատություն։ Կենդանու առողջ երիկամը պատվաստվել է 40-ամյա մի հիվանդի, որը տառապում էր երիկամի սուր անբավարարությամբ։ Դրանով զգալիորեն բարելավվել է հիվանդի վիճակը։*

## ԱՎՏՈՄԵՔԵՆԱ՝ ՃԱՄՊՐՈՒԿՈՒՄ

*Իտալական «Դի Բյազի» ֆիրման թողարկել է «Դիաբլա—7» մակնիշի ինքնատիպ ավտոմեքենա. դրա հեղինակները գտնում են, որ այն ծառայում է մարդուն վթարի ժամանակ։ Ավտոմեքենան մեկ ժամում զարգացնում է 40 կմ արագություն, կարող է փոխադրել երկու հոգու, քաշը՝ 29 կգ է։ Այն կարելի է ճամպրուկով տեղափոխել։*

## ԹԵԵՎ ՓՈՔՐ Է

*Այն դրվում է գրասեղանին, փաթեթավորում մարդու մազից տասն անգամ բարակ լարեր և թողարկում հիսուն անգամ դրանից ավելի նուրբ ու բարակ մետաղյա ժապավեն։ Այն կառուցվել է Բելոռուսական ՍՍՀ գիտությունների ակադեմիայի էլեկտրոնիկայի լաբորատորիայում։ Այդ միկրոդազգահը նախատեսված է դժվարահալ մետաղներից ամենանուրբ ժապավենների արտադրության համար։ Սովորական հարդուկի մեծությամբ, մոտ հինգ կիլոգրամանոց այդ միկրոդազգահը կիրառվում է ճշգրիտ սարքաշինության մեջ։*

## ՍՏՈՐԵՐԿՐՅԱ ՋՐԵՐԻ ԱՌԱՎԵԼՈՒԹՅՈՒՆԸ

*Ստորերկրյա ջրերը կարող են ո՛չ միայն ոռոգել, այլև պարարտացնել։ Դրանցով ոռոգվող հողերում բույսերն աճում ու հասունանում են ժամկետից մի շաբաթ շուտ. գյուղատնտեսական կուլտուրաների բերքը կրկնապատկվում է։ Պարարտանում է նաև հողը, այն ստանում է լրացուցիչ ազոտ և արագ բազմանում են միկրոօրգանիզմները։*

## ԸՆԴԴԵՄ ԺԱՆԳԻ

*Հայտնի է, որ ժանգը մետաղների թշնամին է։*

*Վերջերս սովետական գիտնականները առաջարկել են դրա դեմ պայքարելու առավել հմուտ եղանակ։ Մետաղների ժանգակալած մակերևույթը մշակվում է հատուկ, մասամբ երկաթի օքսիդացումը լուծող պրեպարատներով։ Այնուհետև այն փաթաթվում է ամուր ժապավենով։ Վերջինիս վրա չի ազդում ոչ միայն թթվածինը, այլև խոնավությունը։ Այսպիսով, այդ պրեպարատները ժանգակալումը վերացնում են հենց իր միջոցով, հարկ չի լինում կոնստրուկցիաների ու դետալների մեխանիկական մաքրման։ Նոր պրեպարատի ներդրմամբ 2—2,5 անգամ նվազում են աշխատանքային ծախսումները, չի պահանջվում կապիտալ ներդրումներ։*

*Ժանգի ավելի էֆեկտիվ վերափոխիչներից մեկը ստացվել է Գորկի քաղաքի ինժեներա-շինարարական ինստիտուտում։ Դրա բաղադրության մեջ որպես հիմք մտնում է պոլիվինիլացետատը։ Հեղուկը փաստորեն «վերցնում է» ուզած հաստության ժանգաշերտը։*

## ՊԼԱՏԻՆԻ ՄՐՑԱԿԻՑԸ

*Տիտանը, որն իրավամբ համարվում է ապագայի մետաղ, աչքի է ընկնում ամրությամբ, թեթևությամբ, քիմիական դիմացկունությամբ և այլ հատկությունների հիանալի համադրմամբ։ Թեթև համաձուլվածքների համամիութենական ինստիտուտի գիտնականները գտնում են, որ տիտանի օգտակար հատկությունները կարելի է բազմապատկել։ Վերջերս այնտեղ ստացվել է նոր տիտան-մոլիբդենային համաձուլվածք, որը կիրառվում է վտանգավոր միջավայրում գործող դետալներ պատրաստելու համար։*

*Այն իներտ է այնպիսի քայքայիչ նյութերի նկատմամբ, ինչպիսիք են՝ աղային, մրջնային, ծծմբային և ֆոսֆորային թթուները։ Դրանով իսկ նոր համաձուլվածքը դիմացկունությամբ մրցում է տանտալի, ոսկու և պլատինի հետ։ Օրինակ, տեխնիկական տիտանը խտացված, եռացող աղաթթվի մեջ ամբողջովին հալվում է, իսկ նոր համաձուլվածքը կարող է դիմանալ մեկ տարի և «նիհարել» ընդամենը 0,4 միլիմետր։*